2-И ЭКЗ

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

19 SEP 2009





# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922Թ.

6

ՀՈՒՆԻՍ • 1989

d by A.R.A.R.@

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



ՀՈՒՆԻՍ
6
1989

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն

Գ. ՇԱՀՆԱԶԱՐՈՎ— Արևելք-Արևմուտք։ Միջպետական հարաբերությունների ապագաղափարայնացման հարցի շուրջը . . . . . . . . . . 3

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ. ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

Վ. ՄՈՒՐԱԴՅԱՆ— Ճշմարտացիորեն լուսաբանել ԽՄԿԿ ազգային քաղաքականությունը . . . . . . . 17

Մ. ՎԱՐԴԵՐԵՍՅԱՆ— Կուսպատմության պարբերացման մի քանի հարցեր . . . . . . . . . 25

Հաշվողական տեխնիկան ժամանակի ծնունդ է . . . 31

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ

Կ. ՄԿՐՏՉՅԱՆ— Նոր պայմաններ, նոր գործելակերպ . . 38

Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Պահպանել մարդու հավատը . . 45

Ա. ՍԱՔԱՆՅԱՆ— Նորացման ուղիով . . . . 52

ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ

Ռ. ՍԱՖԱՐՅԱՆ— Տնտեսական ռեֆորմը և արգելակման ուժերը . . . . . . . . . 60

Ա. ՎԱԼԵՍՅԱՆ— Մայրաքաղաք. զարգացման տնտեսաաշխարհագրական ասպեկտներ . . . . . 67

ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

A.R.A.R.@

ԵՐԿՐՈՐԴ ՓՈՒԼԸ՝ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄ

*Հ. ՄԱՅԻԼՅԱՆ— Որպեսզի մեղմանա հոգու ցավը* . . 73

ՀԻՇԱՐԺԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ

*Գ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ— «Ինչ տվել ես՝ քոնն է»—* . . . 79

ՄՇԱԿՈՒՅԹ ԵՎ ԿՅԱՆՔ

*Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Արդի գրական հայերենը* . . 88

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

*Թ. ՋԱԼՅԱՆ— Խնայողությունը և էկոնոմիկան* . . . 94

*Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ—* В. ТУРЬЯН— Семья и воспитание. Ереван, «Айастан», 1988, 187 стр. . 96

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակիցներ, սրբագրիչ՝ 53—86—11

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.
(գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ.
(գլխավոր խմբագրի տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ՀԱԿՈԲՅԱՆ Ռ. Յա.
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա.
(պատասխանատու քարտուղար)
ՓԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

© ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1989

# ԱՐԵՎԵԼՔ — ԱՐԵՎՄՈՒՏՔ

## ՄԻՋՊԵՏԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՊԱԳԱՂԱՓԱՐԱՅՆԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ

Գ. ՇԱՀՆԱԶԱՐՈՎ

ՆՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄՏԱԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ, որի միջուկն է հակասական, բայց փոխկապակցված աշխարհի ամբողջականության ընդունումը, պարտավորեցնում է վերստին քննության առնել մի ամբողջ շարք հասկացություններ՝ կապված միջազգային ոլորտում իրականացվող տեսական ու պրակտիկ գործունեության հետ: Հատկապես կարևոր է արդիականության երկու հիմնական հասարակական սիստեմների՝ սոցիալիստական և կապիտալիստական պետությունների փոխհարաբերությունների վերաբերյալ մեր հայացքների համաձայնեցումը ներկա ժամանակի օբյեկտիվ իրողությունների, աշխարհի՝ որպես մի ամբողջականության, մասին գաղափարի հետ: Այն բանից, թե ինչպես կլուծվի Արևելք-Արևմուտք պրոբլեմը, մեծապես կախված է ոչ միայն երկու կողմերի ճակատագիրը, այլև բուն իսկ մարդկության գոյատևումը: Իսկ այդ պրոբլեմի լուծումը վերջին հաշվով հնարավոր չէ առանց այն խոր գաղափարախոսական առճակատման հաղթահարման, որն ընկած է աշխարհի ներկայիս պառակտման հիմքում: Ոչ թե տնտեսական, ոչ թե հենց և անգամ ոչ թե քաղաքական, այլ հենց գաղափարախոսական առճակատման: Ընդ որում խոսքը բնավ գաղափարախոսական այն տարբերությունների վերացման մասին չէ, որոնք կապված են արդի հասարակության հիմնական դասակարգերի և սոցիալական խմբերի գոյության պայմանների, շահերի ու դիրքորոշումների հետ: Ոչ ոք զորու չէ վերացնելու այն հավերժական վեճը, որ ընթանում է սոցիալական, ազգային, կրոնական ծագում ունեցող տարբեր գաղափարախոսությունների միջև: Հարցը սոսկ վերաբերում է այն բանին, թե պե՞տք է արդյոք այդ վեճը հասցվի մինչև անհաշտելի առճակատման ու ավարտվի տիեզերական բարդուղիմեոսյան գիշերով:

Կարող են առարկել, թե գաղափարական հակամարտությունը ինքնին չի խոչընդոտում խաղաղ գոյակցությանը և համագործակցությանը, արդիականության գլոբալ պրոբլեմների լուծմանն ու առաջին հերթին միջուկային ջարդի կանխմանն ուղղված ջանքերի կոոպերացմանը: Ի ապացույց այդ բանի վկայակոչում են 70-ական թվականների լիցքաթափման փորձը և հատկապես այն բարենպաստ փոփոխությունները միջազգային մթնոլորտում, որոնք կապված են ԽՄԿԿ XXVII համագումարի, համաշխարհային գործերի նկատմամբ նոր մոտածողության կիրառման հետ:

Փաստարկները ծանրակշիռ են: Բայց հաշվի չեն առնում մի հանգամանք. երկու դեպքում էլ մենք գործ ունենք անավարտ պրոցեսների հետ: Ընդ որում լիցքաթափումն ընդհատվել է հենց այն պատճառով, որ նա ընդգրկում էր «սառցալեռան» սոսկ վերին մասը՝ երկու սիստեմի պետությունների փոխհարաբերությունների միայն արտաքին քաղաքականության ոլորտը: Իսկ ինչ վերաբերում է ներկայիս կտրուկ ջերմացմանը, ապա այն հատկապես հնարավոր է դարձել շնորհիվ մեր վերակառուցման, և այդ ուղիով հետագա առաջխաղացումը դարձյալ կանչվի Արևելքի ու Արևմուտքի սոցիալական պրոցեսների, դրանց գաղափարական արտացոլման ու իմաստավորման հետ:

*ՇԱՀՆԱԶԱՐՈՎ ԳԵՈՐԳԻ ԽՈՍՐՈՎԻ— ԽՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ:*



digitised by A.R.A.R.@

յուն ու հարատև լինել։ Հետևաբար, սոցիալական առաջադիմության և ազգային զարգացման պրոբլեմները կարող են քննարկվել միայն որպես գոյատևման պրոբլեմի օրգանապես բաղկացուցիչ մասեր։ Այդ նպատակների միջև միանգամայն իրական հակասությունը կարող է վերացվել զինված մեթոդները բացառելու ճանապարհով։ Գլոբալ սպառնալիքներին դեմ-դիմաց կանգնած աշխարհի բոլոր արդարացի նպատակները պետք է իրագործվեն քաղաքական միջոցներով։

Բայց բավարարվել այս բանի արձանագրումով, կնշանակեր կանգ առնել կես ճանապարհին, ընդունել, ինչպես արդեն նշվեց, ոչ ավելին, քան իրենց բնույթով միմյանց թշնամի պետությունների գոյակցության հնարավորությունը։ Այդպիսի օբյեկտիվացված հարկադրական ընդդիմակայությունը, եթե անգամ անկարող է լիովին խանգարել գլոբալ պրոբլեմների համատեղ լուծմանը, խիստ բարդացնում ու ձգձգում է այդ պրոցեսը։ Մինչդեռ մարդկությունը շատ երկար ժամանակ չունի։ Եվ նման ձգձգումը կարող է ճակատագրական դեր խաղալ։

Հապա ինչպե՞ս վարվել։ Չէ՞ որ ոչ մի սոցիալական շարժում և քաղաքական հոսանք չի հրաժարվի իր գաղափարախոսությունից, իր հավատից։ Բայց դրա կարիքն էլ չկա։ Երկու հասարակական սիստեմների հակադրության մասին դրույթի անճշտության, պարզունակության մեջ համոզվելու համար բավական է դեն նետել աչքակալը, և իրականությանը նայել պատշաճ ուշադրությամբ։

«Դասակարգեր գոյություն ունեն, այդ թվում՝ հակամարտ, դա իրողություն է,— ընդգծում է Մ. Ս. Գորբաչովը։— Բայց համաշխարհային ընկերակցության միաչափ բաժանումը դասակարգային հակադիր բևեռների, որոնց հակամետ են սոցիալական և ազգային այլ տարբերություններն ու հակադրությունները, այլևս թույլ չի տալիս ճիշտ և լրիվ բացատրելու այն, ինչ կատարվում է ժամանակակից աշխարհում։ Եվ ոչ այն պատճառով, որ այն ու նրա վրա հիմնված քաղաքականությունը ի սկզբանե ճիշտ չեն եղել։ Ընդհակառակը, 1917 թվականից հետո տասնամյակների ընթացքում թե՛ տեսության մեջ, թե՛ պրակտիկայում հենց դասակարգային հակամարտությունն է համաշխարհային մասշտաբով փոխել աշխարհը և արմատապես վերափոխել այն։ Բայց այդ պայքարի սոցիալական հետևանքները մեկը մյուսից հուժկու ալիքներով մարդկությանը վրա տվող գիտատեխնիկական հեղափոխության հետ միասին դարավերջին փոխեցին առաջադիմության թե՛ բնույթը, թե՛ չափանիշները և նրանում գործող անձանց կազմը»։

## II

Ամենից առաջ ինքներս մեզ հարցնենք. օրինաչա՞փ է, արդյոք, խոսել հասարակական սիստեմների հակադրության մասին, որոնցից մեկը ծնունդ է առել մյուսի ընդերքում, նրա զարգացման արդյունքն է։

*Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մեծագույն հայտնագործությունների թվին է պատկանում հենց այն միտքը, որ սոցիալիզմը պատրաստի վիճակով մեզ չի բերվում-հասցվում ինչ-որ ուտոպիական կղզիներից և չի կարող ձևավորվել ինչ-որ հանճարեղ խելքի պայծառ մտահղացմամբ։ Դա մի հասարակություն է, որը հասունանում է արտադրողական ուժերի առաջադիմության շնորհիվ և կապիտալիստական արտադրահարաբերությունների ծերացման հետևանքով։ Պատահական չէ, որ երբ խոսքը սոցիալիզմի առաջացման հեռանկարների մասին էր, Կ. Մարքսի սիրած կերպարը բնական ծննդի պատկերն է եղել։ Ընդ որում հեղափոխությունը դիտվել է ոչ թե որպես ծննդաբերող, այլ հենց իբրև մանկաբարձուհի, որի ֆունկցիան ոչ թե այն բանում է, որպեսզի արհեստականորեն բեղմնավորի ու պտուղ ստեղծի, այլ՝ օգնի նրան աշխարհ գալու։ Այլ կերպ ասած՝ հեղափոխությունը կարող է հեշտացնել նոր հասարակության ծնունդը, այլ ոչ թե հասունացնել նրան, եթե դրա համար չկան նյութական ու հոգևոր նախադրյալներ։ Մյուս կողմից (ոչ պակա՞ս կարևոր հետևություն), եթե այն ինչ-ինչ պատճառներով ուշանում է, իսկ նոր հասարակարգի ժամանակն արդեն եկել է, հղիությունից ազատվելը չի կարող տեղի չունենալ։*

*Ինքնին հասկանալի է, որ խոսքն այնուհանդերձ ոչ թե միաժամանակյա ակտի մասին է, այլ հասարակական հարաբերությունների հասունացման համեմատաբար տևական պատմական պրոցեսի, հասուն վիճակի հասնելու մասին։*

*Եվ հենց այդ նույն հիմնարար մարքսիստական գաղափարը Ստալինը փորձեց տապալել, որովհետև այն ոչ մի կերպ չէր համապատասխանում պատմության նկատմամբ բռնության իր դավանած կամայական, սուբյեկտիվիստական կոնցեպցիային, իր այն համոզվածությանը, որ պատմության հետ կարելի է կատարել ցանկացած ամեն ինչ՝ քշել այն ուզածդ ուղղությամբ, ինչպես սրընթաց վարգաձիուն՝ խթանները նրա փորատակը խրելով և տրորելով ամենքին, ովքեր դժբախտություն են ունեցել հայտնվելու նրա ճանապարհին։ Այսպես, դոգմայացվեց բոլոր նախորդ հեղափոխություններից սոցիալիստական հեղափոխության արմատական տարբերության մասին դրույթը։ Բուրժուական հեղափոխությունը, պնդում էր նա, կապիտալիստական կացույթի ձևերը գտնում է պատրաստի վիճակում, և նրան մնում է սոսկ իշխանությունը համապատասխանեցնել տնտեսական բազիսի հետ։ Ինչ վերաբերում է պրոլետարական հեղափոխությանը, ապա այն պետք է նոր ստեղծի սոցիալիստական էկոնոմիկա (տե՛ս Ի. Ստալին, Երկեր, հ. 8, էջ 21)։*

*Սա ոչ այլ ինչ է, քան զուտ սուբյեկտիվ իդեալիզմ՝ կիրառված հասարակական զարգացման տեսության նկատմամբ։ Ամենից առաջ ճիշտ չէ այն պնդումը, թե իբր բուրժուական հեղափոխությունը կոչված է «գործն ավարտելու» սոսկ քաղաքական հարաբերությունների ոլորտում։ Իրականում նրան հսկայական աշխատանք է վիճակված ֆեոդալիզմը «վերացնելու»՝ նախորդ սոցիալական սիստեմի մնացուկները հեռացնելու համար։ Պատահական չէ, օրինակ, որ Ֆրանսիայում 1789—1794 թվականների հեղափոխությունից հետո հարկ եղան 1830, 1848, 1871 թվականների հեղաշրջումները, որպեսզի բուրժուական կարգերը շատ թե քիչ կոնդիցիայի հասցվեին։ Իհարկե, այդ խնդիրները, որոնք ծառացած են սոցիալիստական հեղափոխության առջև, առավել ծավալուն ու բարդ են, պահանջում են ավելի շատ ժամանակ։ Բայց դա բնավ չի վերացնում սոցիալիստական սկզբունքները ներդնելու համար հասարակության օբյեկտիվորեն պատրաստված լինելու մասին մարքսիստական դրույթը, որը բազմիցս կրկնել է Վ. Ի. Լենինը։*

*Ստացվում է, թե Ստալինը պարզապես աղավաղե՞լ է։ Հարցի ամբողջ դժվարությունն էլ հենց այն է, որ ո՛չ։ Նա առհասարակ հազվադեպ էր համարձակվում ուղղակի հերքել Լենինի միտքը, հաճախ դպրոցականի պես այն կրկնում էր, հասցնելով մինչև անհեթեթության և դրանով իսկ աղավաղում նրա էությունը։*

*Հենց այդպես է եղել այս դեպքում ևս։ «Լենինիզմի հարցերի շուրջը» աշխատության նշված տեղում ընդարձակ մեջբերում է արված ՌԿ(բ)Կ VII համագումարին Վ. Ի. Լենինի գրած քաղաքական հաշվետվությունից։ Ստալինը ձևականորեն հետևում է քաղվածքի հիմքում ընկած մտքին՝ օգտագործելով նույն բառերը։ Ընդ որում, սակայն, դուրս է մնում մի սկզբունքային վերապահում։ Վ. Ի. Լենինը շեշտում է սոցիալիստական հեղափոխության համար վերստին ստեղծելու անհրաժեշտությունը ոչ թե ընդհանրապես, այլ* հետամնաց երկրում։ *Որ խոսքը հենց Ռուսաստանի մասին է, իսկ մյուս երկրներում վիճակն այլ է, հաստատում է հետևյալ դիտողությունը. «...խորհրդային իշխանությունը, պրոլետարականը, այդ պատրաստի հարաբերությունները չի ստանում, եթե նկատի չունենանք կապիտալիզմի ամենազարգացած ձևերը, որոնք ըստ էության ընդգրկել են արդյունաբերության փոքրաթիվ վերնաշերտերը և դեռ շատ քիչ են դիպել հողագործությանը» (ԵԼԺ, հ. 36, էջ 8)։ Պարզ է, որ եթե այն ժամանակ սոցիալիստական հեղափոխություն կատարվեր տնտեսապես ավելի զարգացած եվրոպական երկրներում, ապա այն արտադրության միջոցների հանրայնացման համար կգտներ շատ ավելի բարձր աստիճանի նախապատրաստվածություն։ Եվ նույնքան էլ ակներև է, որ այդ աստիճանը անցած 70 տարիների ընթացքում համենայն դեպս չի նվազել։*

*Արժե այս կապակցությամբ հիշել Ֆ. Էնգելսի դիտողությունը. «Կարելի է պատկերացնել, որ հին հասարակարգը կկարողանա խաղաղ կերպով ներաճել նորի մեջ այնպիսի երկրներում, որտեղ ժողովրդական ներկայացուցչությունն իր ձեռքում է կենտրոնացնում ամբողջ իշխանությունը, որտեղ սահմանադրական ճանապարհով կարելի է կատարել ցանկացած ամեն բան, եթե միայն քեզ հետ է ժողովրդի մեծամասնությունը...»։ Այդ երկրների թվում նա նշել է դեմոկրատական հանրապետությունները (Ֆրանսիան, Ամերիկան) և այնպիսի միապետություններ, ինչպիսին Անգլիան է, միևնույն ժամանակ իրավացիորեն նկատելով, որ նման մի բան հայտարարել այն ժամանակվա Գերմանիայի 1891 թվականի նկատմամբ, «որտեղ կառավարությունը համարյա թե ամենազոր է, իսկ ռայխստագը և մյուս բոլոր ներկայացուցչական հիմնարկները չունեն իսկական իշխանություն... նշանակում է թզենու տերևը վերցնել միապետության վրայից և իրենով ծածկել նրա մերկությունը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր երեք հատորով, *հ. 3, Երևան, 1978, էջ 573—574)։*

*Եվ այսպես, Ստալինն աղավաղում է Լենինի միտքն ըստ էության՝ Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխությանը վերաբերող նրա կոնկրետ եզրակացությունը դարձնելով համընդհանուր օրինաչափություն։ Եվ ընդ որում նա այդ բանն անում է սեփական իրավացիության նկատմամբ վստահությամբ, քանզի բոլորովին այլ կերպ է մեկնաբանում «սոցիալիզմին պատրաստ լինելը», բուն «սոցիալիստական կացույթի կազմավորված ձևերի առկայություն» և այլ հասկացությունները։ Հիրավի, եթե նկատի առնվի ամբողջությամբ նրա ստեղծած «ավտորիտար սոցիալիզմի» մոդելը նրա այնպիսի գծերով, ինչպիսիք են գործնականում հասարակության լիովին կլանումը պետության կողմից, կառավարման հրամայական ճնշիչ համակարգը, աշխատանքի արդյունքների կենտրոնացված, հիմնականում հավասարարական բաշխումը, համընդ-*





digitised by A.R.A.R.@

որոնք ընդունել էր Ֆ. Ռուզվելտը և որոնք այնուհետև ըստ էության տնտեսական գործունեության կանոններ են դարձել այսպես կոչված՝ առատության հասարակության, կամ «համընդհանուր բարօրության պետության» մեջ։

Այլ կերպ ասած, խոսքը սոցիալացման պրոցեսի մասին է։ Եվ այսօր, եթե խոսելու լինենք կապիտալիստական կառուցվածքի մեջ սոցիալիզմի տարրերի կամ սոցիալիստական ֆերմենտի ներարկման և կամ էլ սոցիալիստական մեթոդների օգտագործման մասին, ի վերջո դա սկզբունքային նշանակություն չունի. յուրաքանչյուրը կարող է ընտրել այն ձևակերպումը, որը նրան ճիշտ է թվում իր էությամբ և ընդունելի՝ իր քաղաքական հնչեղությամբ։ Գլխավորը հասկանալն ու ընդունելն է, որ արևմտյան հասարակությունը սոցիալական լուրջ տեղաշարժեր է ապրում, և այդ բանը չեն կարող վերացնել ո՛չ տնտեսության տատանումները առավել մասնավորացման կողմը և ոչ էլ պետական միջամտության թուլացումները (ռեյգանոմիկա)։ Սրանք արդեն ի վիճակի չեն գերակշռություն ստանալ այն բանի նկատմամբ, որ պետությունն իրեն պարտավորված է համարել ոչ միայն պահպանել կարգը տնտեսապես իշխող դասակարգի շահերին ու կամքին համապատասխան, այլև հոգ տանել ամբողջ հասարակության հիմնական պահանջմունքները բավարարելու մասին, և այդ պատճառով պետությունն արդեն «զուտ» բուրժուական չի մնում, ձեռք է բերում նոր սոցիալական գծեր։

Սակայն այդ եզրակացությունը կարելի է ամրապնդել «տեսողական» դիտարկմամբ։ Բավական է նայել Շվեդիային կամ, ասենք, Ավստրիային, սոցիալական մի շարք պրոբլեմների լուծման նրանց փորձին։ Ժամանակն է, վերջապես, սթափ նայել ակնհայտ փաստերին։

Իսկ ի՞նչն է դրան խանգարում։ Առաջին հերթին պատկերացումն այն մասին, որ սոցիալիզմի զարգացումը կարող է լինել միայն բռնի հեղաշրջման արդյունք, նոր հասարակության կազմավորման ամեն տեսակի այլ հնարավորությունների բացասում։ Այստեղից էլ ծայրահեղ դոգմատիկ՝ «տեսնում եմ, բայց չեմ հավատում»-ը։

Եվ մեկ այլ՝ դարձյալ դոգմատիկ մտածողության ստանդարտ, հասարակական օրգանիզմի ընկալումը բացառապես չմասնատված վիճակում։ Դատում ենք մոտավորապես այսպես. սոցիալիզմն ունի որոշակի հատկանիշներ։ Եթե դրանցից մեկն առկա չէ, կնշանակի չկա սոցիալիզմ։ Մինչդեռ կենդանի իրականությունը անհամեմատ հարուստ է ցանկացած սխեմաներից, ինչը բազմիցս մատնանշել է Լենինը։ Եվ արդեն ամենևին էլ ինչ-որ գերարտասովոր երևույթ չէ տարբեր սոցիալական սիստեմներին բնորոշ տարրերի, մասերի, հատկանիշների միախառնումը։ Բնության մեջ էլ քիմիական տարրերը սակավ են հանդիպում «զուտ» վիճակում։ Իսկ ինչու՞ այս կամ այն «համաձուլվածքը» հնարավոր չէ հասարակության կյանքում։

## III

Սոցիալացումն իբրև պրոցես պետք է, իմ կարծիքով, չափվի հետևյալ հիմնական պարամետրերով. սեփականություն և արտադրություն, բաշխում, կառավարում, հասարակական գիտակցություն։ Այս բոլոր ոլորտներում առաջխաղացում տեսնում ենք, թեև ծայրատիճան անհամաչափ, առաջ ու հետ գլորվելով, ոչ միանման ռիթմով պատմական տարբեր ժամանակաշրջաններում։

Սոցիալական էվոլյուցիայի օբյեկտիվ բնույթի դեպքում նրա տեմպերը վիթխարի չափով կախված են հեղափոխությամբ ծնված սոցիալիստական հասարակությունների վիճակից։ Պատահական չէ, որ պահպանողականության ալիքն Արևմուտքում ժամանակի առումով համընկավ մեզ մոտ լճացման հետ։ Վերակառուցումն իր կողմնորոշմամբ դեպի դեմոկրատիան ու ինքնակառավարումը, տնտեսական արդյունավետությունն ու սոցիալական արդարությունը, դեպի նոր մտածողությունը միջազգային գործերում, անտարակույս, ամենուրեք բարձրացնում է այդ արժեքների նշանակությունը։

Տվյալ հոդվածի խնդիրը չէ հեղափոխական և էվոլյուցիոն ուղու ուժեղ և թույլ կողմերի սիստեմատիկ համեմատական վերլուծությունը։ Բայց երկու սիստեմների փոխհարաբերությունների տեսակետից անհրաժեշտ է դիտարկել որոշ կարևոր պրոբլեմներ։

Առաջին հերթին դա վերաբերում է սեփականության ձևին։ Իրոք, եթե վերցնենք արտադրական հարաբերությունների բոլոր մյուս տարրերը, ապա այստեղ չկա այնպիսի մի բան, որը կարողանար սոցիալացման մի տիպը սկզբունքորեն տարբերել մյուսից, գայթակղության քար ծառայել նրանց մեկ միասնական միջազգային տնտեսակարգի վերաճման համար։ Վ. Ի. Լենինն այն կարծիքին էր, որ իմպերիալիզմի օրոք արտադրության հանրայնացման ձեռք բերվող մակարդակը լիովին համապատասխանում է նրա սոցիալիստական կազմակերպման մասին



պատկերացումներին։ Միաժամանակ նա նշում էր խոշոր կապիտալիստական կորպորացիաներում աշխատանքի կազմակերպման փորձը լայնորեն օգտագործելու հնարավորությունն ու անհրաժեշտությունը, ընդսմին բացառելով «քրտնաթոր եղանակները»։

Այն ժամանակից ի վեր Արևմուտքում աշխատանքի կազմակերպման մեջ կատարվել են հսկայական փոփոխություններ։ Մի կողմից, շարունակվել է նրա խոշորացումը մի շարք ճյուղերում, իսկ մյուս կողմից՝ մոնոպոլիաների կամայականությունները իրավական (հակատրեստային օրենսդրություն) և տնտեսական միջոցներով սահմանափակվեցին, որը հետևանք էր միջին ու մանր ձեռնարկությունների պահպանման, խոշոր կորպորացիաների հետ դրանց հաշվեկշռված զուգակցման պահանջմունքի դրսևորման։ Արտադրության համակենտրոնացման, մասնագիտացման և կոոպերացման, արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման, էկոնոմիկայի կառավարման մեթոդների կատարելագործման օպտիմալ ձևերի որոնում կատարվել ու կատարվում է նաև սոցիալիստական երկրներում։ Եվ այժմ շոշափելի տարբերություն չկա այն բանում, թե ինչը պետք է վերագրել արտադրական պրոցեսի «տեխնոլոգիային»։

Այլ բան է նրա սոցիալական բովանդակությունը։ Մարքսից շատ առաջ, դեռևս ուտոպիստական աշխատություններում (և ոչ միայն ուտոպիստական, այլ, օրինակ, Ժան-Ժակ Ռուսոյի երկերում) ձևակերպված է եղել մասնավոր սեփականության ոչնչացման միտքը որպես արդարացի հասարակության ստեղծման պարտադիր պայման։ Այդ պահանջը դարձավ ամբողջ հեղափոխական շարժման «ալֆան և օմեգան» և այն առաջվա պես նշվում է կոմունիստական կուսակցությունների բոլոր փաստաթղթերում։

Բանն այլ կերպ է սոցիալ-դեմոկրատների մոտ։ Քաղաքական մտքի այդ ուղղության տեսական աշխատություններում չի ժխտվում, որ մասնավոր սեփականությունը մարդու կողմից մարդու շահագործման աղբյուր է։ Բայց, բացառությամբ նրա ձախ թևի, սոցիալ-դեմոկրատիան փաստորեն հրաժարվել է մասնավոր սեփականության նկատմամբ ոտնձգությունից այն հիման վրա, որ «իմաստ չունի խեղդել ոսկե ձու ածող հավին»։ Հայտնի չափով այդպիսի եզրակացության հանգեցրեց արդյունաբերության մի շարք ճյուղերի ազգայնացման սակավհաջող փորձը Արևմուտքում, որից հետո դրանց եկամտաբերությունը կտրուկ ընկավ։ Ոչ ոք դեռևս չի ապացուցել, որ դա ինդուստրիայի այս կամ այն ճյուղը պետության տնօրինությանը հանձնելու հետևանքն էր, և ոչ թե այլ՝ պահպանողական կառավարությունների իշխանության հանձնելու, բյուրոկրատական կառավարման, հայրենական կապիտալի սաբոտաժի, համաշխարհային կապիտալի թշնամանքի ու այլ գործոնների ազդեցության։ Բայց փաստը տեղի էր ունեցել և սոցիալ-դեմոկրատիայի գաղափարախոսները, պրագմատիզմի նկատմամբ իրենց ունեցած հայտնի հակումով խելացի համարեցին եթե ոչ ընդմիշտ հրաժարվել մասնավոր սեփականությանը վերջ տալու գաղափարից, ապա առնվազն այն տեղափոխել հեռավոր ապագա։

Հայտնի է, որ դաժան վճիռ կայացնելով մասնավոր կապիտալի նկատմամբ որպես աշխատանքի շահագործման միջոցի, Կ. Մարքսը արժանին է մատուցել նրա ստեղծագործական հնարավորություններին։ Շահույթին հետամտելով և բուռն մրցակցության մեջ կապիտալը բավարարում է որոշակի հասարակական պահանջմունքներ։ Իսկ այն անարխիան, որ նա մտցնում է արտադրության մեջ, հաջողվեց նշանակալից չափով սանձել պետական կարգավորման, իսկ ապա նաև հաշվողական տեխնիկայի օգտագործման շնորհիվ։ Չի կարելի չտեսնել, թե որքան է ընդարձակվել կապիտալի ֆունկցիան ժամանակակից պայմաններում. և՛ շնորհիվ այն բանի, որ նա ստիպված է իր շահույթների մի մասը կիսել հասարակության հետ, և՛ այն պատճառով, որ հարկադրված է համերաշխ լինել քաղաքական կուսակցությունների (այդ թվում ձախ ուղղության), արհմիությունների, հասարակական կարծիքի, մասսայական ինֆորմացիայի միջոցների, վերջապես, կառավարության հետ, որն իր հերթին չի կարող հաշվի չառնել ժողովրդի կամքը։

Կատարվող կերպարանափոխությունների բնույթը թերի կլինի, եթե հաշվի չառնվի միջազգային գործոնը։ Ազգային կապիտալի «ինքնազգացողությունը», նրա գործունեության արդյունքները աճող չափերով պայմանավորված են այնպիսի պատճառներով, ինչպիսիք են՝ վալյուտային համակարգի վիճակը, պարտապան երկրների վարկունակությունը, գիտատեխնիկական հեղափոխության հերթական նվաճումները (ինչպես օրինակ՝ բարձրջերմաստիճան գերհաղորդականությունը), Արևելքի և Արևմուտքի հարաբերությունների միջև լարվածության աստիճանը, սպառազինությունների մրցավազքի հեռանկարները և այլն։ Թերևս ավելի հեշտ կլինի ասել, թե ինչին չի արձագանքում արժեթղթերի կուրսը բորսայում։

Թե որքանով են էական մասնավոր սեփականության հետ կատարված փոփոխությունները, ակնբախորեն վկայում է այն փաստը, որ այժմ հետզհետե ավելի շատ համատեղ ձեռնարկություններ են ստեղծվում սոցիալիստական երկրների և արևմտյան մասնավոր ֆիրմաների ու բանկերի ընդհանուր կապիտալով։



digitised by A.R.A.R.@

Անշուշտ, այդ ամենը չի փոխում մասնավոր սեփականության դասակարգային բնույթը և հիմք չի տալիս նրա հաղթահարման վերաբերյալ սոցիալիստական պահանջը վերացնելու համար: Սակայն հետհոկտեմբերյան շրջանի ամբողջ փորձը, հավասարապես նաև արդիականության բոլոր իրողությունները բերում են այն եզրակացությանը, որ մասնավոր սեփականությունը պետք է վերանա տնտեսապես: Իսկ դա կկատարվի այն ժամանակ, երբ կգտնվի հասարակական սեփականության մի օպտիմալ տարբերակ, որը թույլ կտա ավելի բարձր արդյունքների հասնել թե՛ հասարակության և թե՛ բնության համար նվազ ծախսերով:

Քննարկվող թեմայի համատեքստում ուշադրության արժանի հաջորդ հարցը **երկու սիստեմների կոնվերգենցիայի հնարավորությունն է:** Հելբրայտի երբեմնի հանրահանաչ տեսությունը հետին պլան մղվեց Արևմուտքի և Արևելքի միջև պայքարը սրվելու հետևանքով: Վերջին ժամանակներս կարծես թե այն երկրորդ շնչառություն է ձեռք բերում: Ոչ քիչ թվով տեսաբաններ կան, որոնք այդ բանի նշանները տեսնում են վստահության ամրապնդման, սպառազինությունների մրցավազքի սահմանափակման ասպարեզում համատեղ քայլերի, կոնֆլիկտների կարգավորման, տնտեսական համագործակցության ընդլայնման ներկայումս կատարվող պրոցեսներում:

«Ֆուտուրոլոգիայի ձախողումը» աշխատության մեջ ես արդեն առիթ եմ ունեցել ապացուցելու, թե ինչու սիստեմների կոնվերգենցիան հնարավոր չէ: Կապիտալիզմը և սոցիալիզմը, լինելով տարբեր սոցիալական գոյեր, չեն կարող սկզբունքորեն մերձենալ միմյանց, ինչպես այդ բանը չեն կարող անել աշխարհագրական բևեռները: Դրանք գոյություն ունեն միայն այն որակով, ինչպես որ կան: Դրանք վերացական բնութագրումներ են, որոնք մենք կիրառում ենք որոշ երևույթների նկատմամբ. սկսելով մերձենալ, նրանք կկորցնեին իրենց սկզբնական հատկությունները և, կնշանակի, կդադարեին լինել դրանց կրողները մեր գիտակցության մեջ: Մի խոսքով, ինչպես գրել է Քիպլինգը, Արևմուտքն արևմուտք է, Արևելքն՝ արևելք, և դրանք միմյանց չեն հանդիպի:

Բայց ահա արևմտյան և արևելյան երկրները ոչ միայն կարող են, այլև անպայման կմերձենան՝ փոխ առնելով միմյանցից լավագույնը: Ժամանակակից փոխկապակցված աշխարհում դա լիովին համապատասխանում է մարդկային խառնվածքին և քաղաքականության ողջամտությանը: Հօգուտ բոլոր ժողովուրդների, այդ մերձեցմանն աջակցելու լավագույն եղանակն է կոնկրետ խնդիրների վրա կենտրոնանալը, այն խնդիրների, թե ինչպես երաշխավորել քաղաքակրթության գոյատևումը, ինչպես բարձրացնել մարդկանց կենսամակարդակը, ապահովել մարդու իրավունքները, բարձրացնել սոցիալական արդարության չափանիշը, պահպանել բնությունը, առավել արդյունավետորեն կազմակերպել գիտատեխնիկական առաջընթացի օգտագործումը և այլն:

Այդպիսի մոտեցումը, ինձ թվում է, բացառում է վերացական գաղափարախոսականացումը, որը փաստարկներ է առաջադրում երկու սիստեմները հակադրելու համար: Բացի դրանից, անվերջ գաղափարախոսական վեճերից ակամա մյուս կողմի նկատմամբ հաղթանակ տանելու պահանջմունք է առաջ գալիս: Ուստի մյուս կողմը անխուսափելիորեն թշնամի է դիտվում, և առաջին պլան են մղվում ոչ թե գործի շահերը, այլ մրցակցության պրոբլեմները: Ու քանի որ սիստեմները նույնացվում են պետությունների հետ, կրկին աշխարհը պառակտվում է հակադիր բլոկների, թեկուզև դրանք սովորած լինեն վերահսկել իրենց վարքագիծը միջուկային պատերազմ թույլ չտալու համար:

Մինչդեռ թշնամու հետ վարվելու լավագույն եղանակը նրան իր բարեկամը կամ, ծայրահեղ դեպքում, սովորական հարևան դարձնելն է: Մեր փոխկապակցված աշխարհում, որի վրա կախված են միջուկային, էկոլոգիական և շատ այլ սպառնալիքներ, այդպիսի մոտեցումը դառնում է ոչ միայն ցանկալի, այլև հրամայական պահանջ, գոյատևման ու զարգացման պայման: Կարող են ու պետք է մրցակցեն նկարիչները, վարպետները, սպորտսմենները: Մրցության շարքը կարելի է դասել հասարակական կյանքի և քաղաքական կառուցվածքի կազմակերպման լավագույն ձևերի համադրումն ու ընտրությունը: Բայց, կրկնում եմ, իմ կարծիքով հարկավոր է հաղթահարել սիստեմների պայքարի, որպես հասարակական զարգացման «առանցքային գծի» մասին գոյություն ունեցող սևեռուն գաղափարը:

Բայց, այսուհանդերձ որո՞նք են այս կամ այն սիստեմի հարաբերական առավելությունները: Կարծում եմ, դարձյալ պետք է հրաժարվել «համասիստեմային» մոտեցումից և Արևմուտքի ու Արևելքի տնտեսական ու քաղաքական միությունների մեջ



միավորված երկրների այս կամ այն խմբի նվաճումներում պետք է տեսնել պատմական պայմանների վրա մի շարք գործոնների ազդեցության արդյունքը: Եթե արևմտյան երկրները դեռևս գերազանցում են աշխատանքի արտադրողականությամբ, ապա ամենից առաջ այն պատճառով է, որ նրանք պատկանում են մի շրջանի, որտեղ շատ ավելի վաղ է սկսվել ինդուստրիալ զարգացումը, ստեղծվել գիտատեխնիկական հզոր պոտենցիալ:

Կյանքը բազմիցս ցույց է տվել, թե որքան անարդարացի են ամեն մի նվաճում կամ անհաջողություն միայն հասարակական սիստեմի հետ կապելու փորձերը: Այսպես, երկրի առաջին արհեստական արբանյակը բաց թողնելուց հետո մեզ մոտ գրեցին, թե «սոցիալիզմը տիեզերքը յուրացնելու մեկնարկային հրապարակն է»: Մինչդեռ արդեն այն ժամանակ պարզ էր, որ զարգացած գիտություն և արդյունաբերություն ունեցող ամեն մի պետություն ընդունակ է մասնակցելու «տիեզերական ոդիսականին», եթե գտնի բավականաչափ միջոցներ և դա համարի իր շահերին համապատասխան:

Հասկանալի է, որ սոցիալական կարգերի առանձնահատկությունները այսպես թե այնպես ազդում են հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա, շատ բաներում կանխորոշում նպատակների ընտրությունը, դրանց հասնելու մեթոդները, ռեսուրսների մոբիլիզացման եղանակները և այլն: Մենք համոզված ենք, որ սոցիալիզմը դեռևս չի բացահայտել իրեն ներհատուկ հնարավորությունները, և այդ խնդիրը կվճռվի նրա տարբեր ձևերի ու մոդելների կազմավորման և համադրման ընթացքում՝ որպես համաշխարհային մասշտաբով որոնումների արդյունք:

Հենց այն արևմտյան պրոպագանդիստներին, որոնք փորձում են իրենց երկրների բոլոր նվաճումները վերագրել կապիտալիզմի արժանիքներին, տեղին է հիշեցնել, որ դրանցից շատերի համար նրանք պարտական են սոցիալիզմին: Առանց Խորհրդային Միության, առանց տնտեսության պլանավորման և անձի սոցիալական իրավունքների լայն ներդրման նրա պիոներական օրինակի, առանց Հոկտեմբերի բարձրացրած բանվորական և դեմոկրատական շարժման ալիքի արևմտյան երկրները, իհարկե, չէին լինի այն, ինչ որ այժմ են: Կամ, գաղութային և կախյալ երկրների ազատագրումը նախադրյալներ ստեղծեց համաշխարհային շուկայի կտրուկ ընդլայնման համար և դրանով իսկ նոր հնարավորություններ բացահայտեց տնտեսական կապերի ծավալման նպատակով: Այնինչ ազատագրական պրոցեսի զարգացումը մեծապես տեղի ունեցավ Հոկտեմբերյան հեղափոխության այդ նույն ազդակի, իսկ ապա Խորհրդային Միության, մյուս սոցիալիստական երկրների կողմից ազգային անկախության համար ժողովուրդների պայքարի հետևողական աջակցության շնորհիվ:

Եվ, վերջապես, պետությունների մեծ խմբի շարժումն իսկ սոցիալիստական ուղիով իր բոլոր պլյուսներով ու մինուսներով հանդերձ աշխարհին պարզեց հասարակական առաջընթացի բնույթը մեր դարաշրջանում, ակնբախորեն ապացուցեց և՛ սոցիալիզմի բարերարությունը, և՛ հասարակական, կոլեկտիվ ու անհատական սկզբունքների խելամիտ միահյուսման անհրաժեշտությունը: Մեր զարգացման արդյունքները կարող էին անհամեմատ ավելի բարձր լինել, եթե այն շատ բաներում չձևախեղվեր ստալինականության կողմից: Վերակառուցումը հնարավորություն է ընձեռում լրիվ ծավալով վերածնել գիտական սոցիալիզմի արժեքները, դրանք հարստացնելով հայրենական և համաշխարհային կուտակված փորձով, և այդ հիման վրա ստեղծել սոցիալիստական հասարակական կառուցվածքի նոր, շատ ավելի կենսունակ ու արդյունավետ մոդել:

## IV

Այսպիսով, ժամանակակից աշխարհը հասարակական կառուցվածքի տեսանկյունից գտնվում է նոր, ոչ շահագործողական սոցիալ-տնտեսական ֆորմացիայի կազմավորման փուլում: Այդ իմաստով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հիմնական կանխատեսումը անբասիր դուրս եկավ: Եվ ոչ միայն նրանց: Նույնը մարդկության համար կանխատեսել էին Ֆուրիեն, Օուենը, Չերնիշևսկին և այլ մարգարեներ:

Բայց իրական զարգացումն անցել է շատ ավելի բարդ ուղիով, քան կարող էր ենթադրել նրանցից որևէ մեկը: Գնահատելով հասարակության ներկայիս անցման փուլի առավել էական գծերը, կարելի է քննարկման առաջարկել հետևյալ պրոբլեմները:



digitised by A.R.A.R.@

Առաջին, **սոցիալականացման պրոցեսը** համընդհանուր բնույթ է ընդունում, թեև այն ընթանում է ծայրաստիճան անհամաչափ, նայած նրա շարժիչ ուժին (հեղափոխություն կամ էվոլյուցիա), տնտեսական զարգացման և մշակույթի մակարդակին, պատմական ավանդույթներին, դասակարգային ուժերի հարաբերակցությանը և շատ այլ գործոնների: Ինչպիսի՞ն են նրա հորիզոնները գիտատեխնիկական հեղափոխության (հատկապես արտադրության ավտոմատացման և ինտելեկտուալացման) շարունակվող թունդ զարգացման պայմաններում:

Երկրորդ, այն դարաշրջանին, երբ առաջադեմ և արդարացի սոցիալական կառուցվածքի խնդիրը դրվում էր՝ նկատի ունենալով առանձին հասարակությունները (լավագույն դեպքում եվրոպական մասշտաբով), փոխարինելու եկավ մի դարաշրջան, երբ այդ խնդիրը պետք է դրվի ու վճռվի մոլորակի մասշտաբով: Դատելով ըստ բազմաքանակ հատկանիշների, մենք գտնվում ենք մի նոր քաղաքակրթության ձևավորման ամենասկզբնական փուլում, երբ ինտերնացիոնալացման և սոցիալացման պրոցեսները միահյուսվում են:

Այժմ այն հետնությունների մասին, որոնք, մեր կարծիքով, բխում են այս դրույթից միջազգային հարաբերությունների համար:

*Ամենից առաջ անհրաժեշտ է սոցիալական և քաղաքական գիտակցությունից բացառել երկրները տարբեր սոցիալական սիստեմներին պատկանելության հատկանիշով միմյանց հակադրելու միտքը: Մենք իրոք որ տարբեր ենք, բայց հակադիր չենք, և, կրկնեմ, սոցիալական կառուցվածքի առանձնահատկությունն ունի ոչ ավելի մեծ նշանակություն, քան այն, որը բխում է տնտեսական զարգացման մակարդակների կամ քաղաքական ռեժիմների տարբերությունից:*

*Գիտակցության մեջ այդ, թող որ ոչ հասարակ, բայց միանգամայն մատչելի շրջադարձի իրագործումը խոստանում է ամբողջ մարդկությանը հսկայական օգուտ բերել: Գլոբալ պրոբլեմների լուծումը, փոխադարձ վստահության ամրապնդումը, կոնֆլիկտների կարգավորումը, միջազգային նոր կարգի ստեղծումը՝ այն ամենը, ինչը մենք վիթխարի ջանքերի գնով ձեռք ենք բերում պառակտված գիտակցության և բաժանված աշխարհի բազայի վրա, ձեռք կբերվի շատ ավելի հասարակ, ավելի արագ ու ավելի հիմնավոր ձևով: Ինտերնացիոնալացման ու ինտեգրացման տարերայնության ոլորտի կրճատման և համաշխարհային գործերի կառավարելիության չափերի բարձրացման օբյեկտիվ պրոցեսը կզարգանա անհամեմատ ավելի բարենպաստ գաղափարաքաղաքական մթնոլորտում: Այդ ամենը, հարկավ, չի նշանակում, թե աշխարհը մի ակնթարթում կտեղափոխվի համընդհանուր միասնության ու համաձայնության ողորմած դրախտ: Նրանում եղել են և անխուսափելիորեն կլինեն պետությունների ինչ-որ միություններ ըստ շահերի, վեճեր, հակասություններ, մրցակցություն: Բայց առանց կույր անհանդուրժողության, այլ մյուս բոլորի նկատմամբ հասարակական շահերի գերակայությունն ըմբռնելով և ընդունելով հանդերձ:*

«Միջսիստեմային առճակատման» հաղթահարումը կթեթևացներ նաև մեկ այլ պատմական խնդրի լուծումը, որ հող չէր թողնի բանվորական շարժման երկու հիմնական ճյուղերի դիմակայության համար, ինչպես նաև նախադրյալներ կստեղծեր լայն համագործակցման, իսկ հեռանկարում նաև ձախ ուժերի վերամիավորման համար:

Հարկ է շեշտել, որ այդ ուղղությամբ խոշոր քայլ է Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության ընդունած վերակառուցման քաղաքականությունը, որի միջուկն է սոցիալիզմի միացումը դեմոկրատիայի հետ: Հրապարակայնությունը, աշխատավորական կոլեկտիվների ինքնակառավարումը, անձի սոցիալական իրավունքների հետ ժողովրդի քաղաքական ազատությունների ռեալ ապահովումը, քաղաքական համակարգի՝ XIX կուսկոնֆերանսի որոշումներով և ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1988 թ. դեկտեմբերին ընդունված օրենքներով սահմանված արմատական ռեֆորմը, միջազգային հարաբերություններում սկսված ներդաշնակման պրոցեսը՝ այս ամենը լայն ճանաչում է գտել ամբողջ աշխարհում: Սոցիալիստական իրավական պետության կազմավորումը նշանակում է սոցիալիզմի կողմնակիցների շարքերում գլխավոր տարաձայնություններից մեկի վերացում: Դեմոկրատացման ուղղությամբ խոշոր վերափոխումներ են իրագործվում նաև սոցիալիստական մյուս երկրներում:

*Բայց սա ևս ամենը չէ: Բանն այն է, որ սոցիալիստական մտքի ու գործի երկու հիմնական հոսանքների միջև առկա տարբերությունները, դեմոկրատիայի նկատմամբ վերաբերմունքից զատ, շոշափում են մի սկզբունքային հարց ևս, այն է՝ վերաբերմունքը դեպի սոցիալիզմը զարգացնելու մեթոդը:*



*Ժամանակակից սոցիալ-դեմոկրատիան, ըստ էության, իր համար որպես տեսական «հավատամք» և քաղաքական դրույթ է ընտրել կառավարման չափանիշով, ավելի ճիշտ պրոցեսի կողմնորոշմամբ պայմանավորված սոցիալականացման տարերային ինքնազարգացման մեթոդը: Սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների ծրագրերում չի դրվում սոցիալիզմի՝ որպես վաղօրոք մշակված նախագծով ամբողջականության, կառուցման խնդիրը, այլ սահմանվում են կոնկրետ նպատակների հասնելու շարժման կոնկրետ մեթոդներ: Նման մոտեցման թույլ կողմերն ակնհայտ են, դրանք քննադատության են ենթարկվում իր իսկ սոցիալիստական շարժման ձախ թևի կողմից:*

*Կոմունիստական դոկտրինան և քաղաքականությունը աչքի են ընկնում հասարակության զարգացման կոնցեպտուալ մեթոդով և տարերայնության հանդեպ գիտակցականության առավելությամբ: Հենց այդ սկզբունքներից նահանջելով է բացատրվում XX համագումարից հետո ձեռնարկված ռեֆորմների փորձերի անհաջողությունը: Վերակառուցման հաջողության գրավականը մեր սոցիալիստական հասարակության հեղափոխական նորացման հեռանկարի հետ ոչ միայն էկոնոմիկան, այլև քաղաքականությունը, հոգևոր կյանքը, միջազգային գործերն ընդգրկող անհետաձգելի խնդիրները կապող կոմպլեքսային մոտեցման մեջ է:*

*Բայց, նշելով կոմունիստական դոկտրինայի ուժեղ կողմը, հարկավոր է տեսնել նաև սոցիալ-դեմոկրատականի դրականը: Այն բավականին սերտորեն է կապված իրական կյանքին, ավելի գործնական է, նպատակաուղղված այս կամ այն սոցիալական միջոցառումներից ու քաղաքական ակցիաներից անմիջական արդյունքների հասնելու խնդրին: Մեր կողմից այդ դրական տարրերի ընկալումը, ինչպես նաև էվոլյուցիոն սոցիալականացման բուն ֆենոմենի ընդունումը կվերացներ էական տարաձայնությունները կոմունիստների և սոցիալ-դեմոկրատների միջև:*

Խոսելով սոցիալիզմի կողմնակիցների համախմբման հնարավորության մասին՝ սոցիալական առաջադիմության այս կամ այն պրոբլեմների նկատմամբ հայացքների ու մոտեցումների բնական բազմազանությունը պահպանելով հանդերձ, չի կարելի հաշվի չառնել, որ ամբողջական և փոխկապակցված աշխարհի կոնցեպցիան պահանջում է որքան կարելի է ավելի լայն հասարակական համաձայնության ձևավորում գոնե հասարակական զարգացման կարևորագույն հարցերի առումով: Այդ բանի նախադրյալները գոյանում են: Այժմ ձևավորվում է համատեղ ստեղծագործության, համամարդկային համերաշխության գիտակցություն, որի հիմքում ընկած են այնպիսի արժեքներ, ինչպիսիք են անձի իրավունքներն ու ազատությունները, խաղաղությյան, մարդու բնական և հոգևոր միջավայրի մասին հոգածությունը, ունեզրկվածներին օգնելը, առաջադիմությանն աջակցելը:

Հասկանալի է, համամարդկային շահերը պաշտպանված և իրագործված լինելու համար դրանք ամենից առաջ այս կերպ պետք է գիտակցվեն: Իսկ դա հնարավոր չէ առանց համատեղ որոնման, առանց գիտական գիտելիքների ոլորտում պառակտումը հաղթահարելու: Եթե մեզ մոտ «բուրժուական» պիտակը հասարակական գիտությունների առդրմամբ նշանակել է, որ դա ամենևին էլ գիտություն չէ, այլ համակ մոգություն կամ նույնիսկ խաբեբայություն, ապա «մյուս կողմում» հենց այդպիսի իմաստ է վերագրվել «մարքսիստական» հասկացությանը: Կորուստներ էին կրում երկու կողմերն էլ, բայց ամենից շատ այն կրում էր իր էությամբ միասնական ու անբաժանելի գիտությունը, որը օբյեկտիվորեն գոյություն ունի հանուն ճշմարտության ճանաչման:

Եթե դեն նետվի տասնամյակներ շարունակ արմատավորվող անհանդուրժողությունը, կմնա այն հարցը, թե հնարավո՞ր է արդյոք մեկ միասնական գիտություն, որի առարկան գտնվի դասակարգային պայքարի էպիկենտրոնում: Պատասխանը կլինի բացասական, եթե կանգնելու լինենք աղանդավորական դիրքերում, և անպայման դրական՝ եթե հիշենք, որ սոցիալիզմի նպատակն է ամբողջ մարդկության բարօրությունը և որ համամարդկային զարգացման շահերը բարձր են ցանկացած այլ շահերից: Վերականգնելով մարքսիզմ-լենինիզմի այս հիմնարար դրույթի իրավունքները, նոր քաղաքական մտածողությունը ճանապարհ բացեց նաև գիտության մեջ «մեծ պառակտումների» հաղթահարման համար:

Դա, իհարկե, չի նշանակում հրաժարվել ժամանակակից հասարակական մտքի հիմնական հոսանքների՝ մարքսիստականի և ոչ մարքսիստականի յուրօրինակություններից, չխոսելով դեռ զանազան դպրոցների և ուղղությունների մասին, որոնք գոյություն ունեն երկուսի էլ ներսում և կամ նրանց «չեզոք սահմանաշերտում»: Գաղափարների և կոնցեպցիաների մրցությունը գիտության բնական վիճակն է, առանց որի նա մատնված է ամլության: Բայց դա պետք է լինի հատկապես գի-



digitised by A.R.A.R.@

տական բանավեճ, այլ ոչ թե մարտնչող կողմերի մահացու գոտեմարտ, որ նրանք մղում են միմյանց ոչնչացնելու նպատակով:

Մենք հպանցիկ անդրադարձանք պետությունների «միջսիստեմային» քաղաքական-գաղափարախոսական առճակատումը հաղթահարելու սոսկ առավել էական հավանական արդյունքներին՝ եղած տարաձայնությունները անհանդուրժողության և թշնամանքի ոլորտից տեղափոխելով տեսական և քաղաքական երկխոսության ու համագործակցության ոլորտ: Վերադառնալով մեր մտորումների ելակետին, հարկավոր է շեշտել, որ այն կոնցեպցիան, ըստ որի համաշխարհային զարգացման գլխավոր առանցքը երկու հակադիր սիստեմների պայքարն է, այլևս չի արտացոլում իրականությունը: Դրանից, սակայն, չի հետևում, թե այն պարզապես պետք է դեն նետվի: Ամբողջ բանն այն է, որ սիստեմների (մեկ անգամ ևս կրկնենք. ոչ թե երկրների, այլ սիստեմների) մրցությունը **գլխավոր հակասությունից** դառնում **է մեկն այն հակասություններից**, որոնք լիցք են տալիս մարդկության շարժմանը և որոշում նրա ապագան:

Այլ կերպ ասած, այստեղ տեղին է էվկլիդեսյան երկրաչափությունը Լոբաչևսկու և Ռիմանի երկրաչափության, Գալիլեյի և Նյուտոնի մեխանիկան Էյնշտեյնի հարաբերականության տեսության կողմից «կլանվելու» զուգադրությունը: Ընդհանուր օրինաչափությունների հայտնագործումը չի վերացրել մասնավորները, այլ նրանց սոսկ ավելի համեստ դեր է հատկացրել, որոշել նրանց գործողության սահմանները:

Ամբողջ ասվածը կարելի է ընդհանրացնել և արտահայտել հետևյալ կերպ. Արևելքի ու Արևմուտքի առջև, ինչպես և Հյուսիսի ու Հարավի առջև, խնդիր է հառնել ոչ միայն կամուրջներ գցել նրանց բաժանող անդունդների վրա, այլև ջանալ վերացնել այդ անդունդները:

«КОММУНИСТ», № 3, 1989

---



# ՃՇՄԱՐՏԱՑԻՈՐԵՆ ԼՈՒՍԱԲԱՆԵԼ ԽՄԿԿ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

ՄԵՐ ՕՐԵՐՈՒՄ, երբ վերակառուցումը մուտք է գործում խորհրդային հասարակության կյանքի բոլոր ոլորտները, միլիոնավոր մարդկանց պրակտիկ գործունեության մեջ, անչափ մեծացել են երկրի պատմաբանների խնդիրները: Ինչպես հայտնի է, ԽՄԿԿ XXVII համագումարի և XIX համամիութենական կոնֆերանսի որոշումներում սևեռուն ուշադրություն դարձվեց հասարակական գիտությունների զարգացմանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում նրանց դերի բարձրացմանը: XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսում ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի «ԽՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարման ընթացքի և վերակառուցման խորացման խնդիրների մասին» զեկուցման մեջ նշված էր, որ հենց հասարակական գիտություններն են «առավել մեծ չափով տուժել անհատի պաշտամունքից, ղեկավարման բյուրոկրատական մեթոդներից, դոգմատիզմից և անգիտակ միջամտությունից» (ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի նյութերը, «Հայաստան» հրատ., 1988 թ. էջ 32): Կոնֆերանսը պահանջեց արմատական փոփոխություններ կատարել հասարակական գիտությունների զարգացման գործում: Նրա բանաձևում նշված է. «Կենսականորեն անհրաժեշտ է խոր վերակառուցում հասարակական գիտություններում, որոնք պետք է մինչև վերջ հաղթահարեն դոգմատիզմը և խզումը կյանքից...» (նույն տեղը, էջ 154):

Այդ նկատառումով բացառիկ պատասխանատու խնդիրներ են ծառանում Հայրենական մեծ պատերազմը լուսաբանող պատմաբանների առջև: Ինչպես հայտնի է, ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն 1987 թ. օգոստոսի 13-ի որոշմամբ պաշտպանեց Խորհրդային ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը հիմնարար տասնհատորյա աշխատություն հրատարակելու առաջարկը՝ նրա նախապատրաստումը և հրատարակումը հանձնարարելով ԽՍՀՄ պաշտպանության մինիստրությանը, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիային և ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին: Պետք է հուսալ, որ այդ աշխատությունում պատերազմի պատմությունը ճշմարտացիորեն կշարադրվի:

Տասհատորյակի խնդիրների, Հայրենական մեծ պատերազմի «սպիտակ բծերի» և «չբացահայտված էջերի», երկրի ռազմաքաղաքական ղեկավարության վրիպումների և սխալների մասին սկզբունքային խոսակցություն ծավալվեց 1988 թ. մայիսին՝ ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կազմակերպած գիտական կոնֆերանսում:

Խորհրդային ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը երկրորդ համաշխարհային պատերազմի մի մասն էր, պատերազմ, որը հազվադեպ էր իր ծավալա-

---

*ՄՈՒՐԱԴՅԱՆ ՎԻԿՏՈՐ ԱՍԼԱՆԻ— ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի ավագ գիտաշխատող, պատմական գիտությունների դոկտոր:*



digitised by A.R.A.R.@

չափերով, գլոբալ բնույթով, չտեսնված թվով մարդկանց մասնակցության առումով: Նա նմանը չուներ մարդկության պատմության մեջ: Պատերազմի կաստաղի մարտերում իրար բախվեցին ազգային, դասակարգային, գաղափարական գործոնները: Ռազմական պատմաբանների առջև ծառացել է խորհրդային ժողովրդի Հայրենական մեծ պատերազմի կարևորագույն ասպեկտները խորապես, համակողմանիորեն բացահայտելու խնդիրը: Հարկավոր է պատմական փաստերը, իրադարձությունները և պրոցեսները ուսումնասիրել, վերլուծել պատմագիտության վերակառուցման դիրքերից՝ անշեղորեն պահպանելով պատմականության սկզբունքները:

Հայտնի է, որ Հայրենական մեծ պատերազմի պատմությունն ունի իր «սպիտակ բծերը», նրանում թույլ է տրվել փաստերի և իրադարձությունների սխալ կամ միանշանակ լուսաբանում: Եվ, առհասարակ, ռազմաճակատում նվաճված հաղթանակների ու թիկունքում ձեռք բերված աշխատանքային հաջողությունների նկարագրման հետ մեկտեղ, անհրաժեշտ է խոսել նաև դժվարությունների ու թերությունների, ինչպես ռազմական, քաղաքական, այնպես էլ տնտեսական բնույթի սխալների ու վրիպումների մասին (տե՛ս «Вопросы истории КПСС», 1988, № 7, стр. 150):

Կոնֆերանսի մասնակիցները իրենց ելույթներում առանձնապես նշեցին, որ պահանջվում է նոր մոտեցում բարձրագույն քաղաքական ու ռազմական ղեկավարության՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի, ՊՊԿ-ի, գերագույն գլխավոր հրամանատարության ռազմակայանի գործունեության գնահատման նկատմամբ: Հայտնի է, որ այդ բոլոր մարմինները միանձնյա գլխավորում էր Ստալինը՝ իր ձեռքում կենտրոնացնելով անսահման իշխանություն: Նրանք շեշտեցին, որ Ստալինը հաշվի չէր առնում պաշտպանության ժողկոմատի և գլխավոր շտաբի կարծիքը պատերազմի նախօրեին զինված ուժերի ծավալման մասին, երբ արդեն ակնհայտ էր ֆաշիստական Գերմանիայի կողմից ԽՍՀՄ-ի դեմ պատերազմի սանձազերծման իրական սպառնալիքը:

Ելույթ ունեցողները նշեցին, որ պատերազմի առաջին փուլում բացասական ազդեցություն ունեցան նաև այն զանգվածային ճնշամիջոցները, որոնց ենթարկվել էին ղեկավար զինվորական կադրերը նախապատերազմյան տարիներին: Ստալինը, փաստորեն ոչնչացնելով խորհրդային զինված ուժերի ծաղիկը, ռազմական դոկտրինայի կորիֆեյներին, ականավոր խորհրդային ղեկավարներին, մեծ վնաս հասցրեց մեր բանակին: Զոհերի թիվը կազմում է 43 հազար մարդ, այսինքն՝ Ստալինը բանակի բարձրագույն հրամանատարական կազմից երեք անգամ ավելի շատ զինվորական մասնագետներ է ոչնչացրել, քան մենք կորցրել ենք Հայրենական մեծ պատերազմի ամբողջ ընթացքում: Ոչնչացվել են օկրուգների և բանակների բոլոր հրամանատարները, ռազմական խորհուրդների անդամները, կորպուսների և դիվիզիաների գրեթե բոլոր հրամանատարները, գնդերի հրամանատարների մեծ մասը: Զոհվածների թվում են քաղաքացիական պատերազմի երևելի զորավարներ, Խորհրդային Միության մարշալներ Մ. Ի. Տուխաչևսկին, Վ. Ի. Բլյուխերը, Ա. Ի. Եգորովը և փառաբանված շատ այլ զորապետներ: Անվանի խորհրդային ռազմական պատմաբան, պաշտոնաթող գեներալ-լեյտենանտ Ն. Գ. Պավլենկոն «Военно-исторический журнал»-ի գլխավոր խմբագիր եղած ժամանակ բազմիցս հանդիպումներ և զրույցներ է ունեցել Գ. Կ. Ժուկովի, Ա. Մ. Վասիլևսկու, Ի. Ս. Կոնևի և այլ անվանի խորհրդային զորավարների հետ, որոնց ընթացքում բազմիցս շոշափվել է մեր երկրի և նրա զինված ուժերի պատմության այդ ողբերգական էջը: «Զինված ուժերում մասսայական ճնշամիջոցները 1937—1938 թվականներին,— գրել է նա,— բանակը զրկեցին ավելի քան քառասուն հազար հրամանատարներից, քաղաշխատողներից, ռազմական ինժեներներից ու մասնագետներից»: Այդ առչությամբ նա հիշատակել է մարշալ Ա. Մ. Վասիլևսկու խոսքերը. «Եթե չլիներ երեսունյոթ թվականը, թերևս, չէր լինի նաև քառասունմեկ թվականի պատերազմն առհասարակ: Այն հարցում, որ Հիտլերը վճռեց պատերազմ սկսել քառասունմեկ թվականին, մեծ դեր խաղաց մեզանում տեղի ունեցած զինվորական կադրերի ջախջախման չափի գնահատումը» («Коммунист», 1988, № 9, стр. 88):

1938 թ. Ստալինը որոշեց վերացնել ազգային դիվիզիաները և ռազմական ուսումնարանները: Վերակազմավորելով դրանք, նա միաժամանակ ֆիզիկապես ոչնչացրեց նաև կուսակցության աճեցրած բարձրագույն հրամանատարական ու քաղաքական կազմի կադրերին: Վերցնենք, օրինակ, հայ զինվորականների ճակատագիրը: Ստալինյան ճնշամիջոցների զոհեր են դարձել նաև լեգենդար 24-րդ Սիմբիրսկյան «Երկաթե դիվիզիայի» հրամանատար Գայը (Հայկ Բժշկյան), կարմիր բանակի հրամանատար Գասպար Ոսկանյանը, կարմիր բանակի գլխավոր քաղաքական վարչության պետի տեղակալ, առաջին կարգի բանակային կոմիսար Հայկ Հովսեփյանը, կարմիր բանակի համազորային վարչության պետի տեղակալ, երկրորդ կարգի կոմիսար, կորպուսի հրամանատար Գրիգոր Խախանյանը, բրիգադի հրամանատար Հակոբ Մելքումովը, դիվիզիայի հրամանատար Հակոբ Աթոյանը, դիվիզիաների կոմիսարներ Գևորգ Սաֆրազբեկյանը, Հովսեփ Լազյանը, Իվան Վարդանյանը, Խորեն Աբրահամյանը, և շատ ուրիշներ: Նրանցից շատերի կրծքին շողշողում էին մարտական կարմիր դրոշի երկու-երեք շքանշաններ, որոնց արժանացել էին քաղաքացիական պատերազմի տարիներին ցուցաբերած անձնական արիության ու խիզախության, մարտական գործողությունների գերազանց կազմակերպման համար: Մարտական կարմիր դրոշի երկու շքանշանի ասպետ Գասպար Ոսկանյանին հերթական պարգևը՝ ոսկե ժամացույցը Կրեմլում նվիրել էր Վ. Ի. Լենինը: Եվ այնպես ստացվեց, որ կուսակցության այդ բոլոր քաջարի զավակների, հերոսական լենինյան գվարդիայի խիզախ զինվորների կյանքի թելը խզվեց 1937 թվականին՝ Ստալինի և նրա մերձավորագույն շրջապատի անօրինության պատճառով:

Նոր, հետպատերազմյան ճնշամիջոցներին զոհ գնաց հայ ժողովրդի ևս մեկ փառաբանված որդին, ավիացիայի մարշալ Սերգեյ Ալեքսանդրի Խուդյակովը: Նրա իսկական անուն-ազգանունը Արտեմ Արմենակի Խանփերյանց էր: Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանի Մեծ Թաղլար գյուղում ծնված Արմենակը, 14 տարեկանում որբ մնալով, թափառել է Միջին Ասիայի քաղաքներում, այնուհետև դարձել բանվոր Բաքվում, կարմիրբանակային և պաշտպանել Բաքվի կոմունան՝ իր ճակատագիրն առհավետ կապելով կարմիր բանակի հետ: Ռազմաօդային ակադեմիան ավարտելուց հետո Խուդյակովը բարձր պաշտոններ է զբաղեցրել ռազմաօդային ուժերի շտաբներում: Հայրենական մեծ պատերազմի առաջին ամիսներին նա արժանանում է գեներալ-մայորի կոչման և բարձր շտաբային ու հրամանատարական պաշտոնների է առաջ քաշվում գործող բանակում, իսկ այնուհետև նշանակվում կարմիր բանակի ռազմաօդային ուժերի շտաբի պետ: Հետագայում նրան շնորհվում են գեներալ-լեյտենանտի, գեներալ-գնդապետի կոչումներ, իսկ 1944 թ. օգոստոսին՝ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության հրամանագրով ավիացիայի մարշալի բարձր կոչում: 1945 թ. օգոստոսին նա հեռավոր արևելյան ռազմաճակատում 12-րդ օդային բանակն է գլխավորում:

Ս. Խուդյակովի այդ բոլոր հաջողությունները հանգիստ չէին տալիս Բերիային: Հենց նույն՝ 1945 թվականին, նա զրպարտվում է և ձերբակալվում: Հինգ տարի է տևում նրա «գործի» հետաքննությունը: Սակայն չի հաջողվում որևէ բանում Ս. Խուդյակովին մեղադրել: Թվում էր, թե հայ մարշալը նորից շարք կվերադառնա, բայց Բերիան Խուդյակովի դեմ նոր «գործ» է թխում և, 1950 թվականին, ստանալով Ստալինի սանկցիան, հաշվեհարդար տեսնում նրա նկատմամբ:

Կարծում ենք, որ մեր պատմության այս բոլոր ողբերգական էջերը ճշմարտացիորեն կլուսաբանվեն **Խորհրդային ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը** աշխատության տասհատորյակում: Եվ քանի որ պատերազմի տարիներին ԽՄԿԿ վարած ազգային քաղաքականության լուսաբանման հարցերում առկա են բազմաթիվ «սպիտակ բծեր» և փաստական խեղաթյուրումներ, կկամենայինք անդրադառնալ այդ պրոբլեմի երկու ասպեկտին. նախ, մեծ Հայրենականի տարիներին ԽՄԿԿ ազգային քաղաքականության տեղին ու դերին և, երկրորդ, պատերազմի ժամանակակից պատմագրությունում այդ պրոբլեմի լուսաբանման վիճակին:

Առաջին հերթին պետք է նշել, որ մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը ոչ միայն փայլուն կերպով դիմացավ պատերազմի դաժան փորձություններին, այլև բազմազգ խորհրդային պետության և նրա բազմազգ զինված ուժերի կյանքի բոլոր ոլորտներում հաստատվեց նոր բովանդակությամբ, դրսևորման նոր ձևերով: ԽՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը և մարտական համագործակցությունը այն հզոր հոգևոր կռվանն էր, որը հսկայական դեր խաղաց զորեղ և նենգ թշնամու ջախջախման գործում:

Պատերազմի տարիներին ազգային հարաբերությունների ասպարեզում ԽՄԿԿ գործունեության գլխավոր ուղղություններն էին.

— խորհրդային ժողովուրդների բարոյաքաղաքական միասնության ու պետական դաշինքի հետագա ամրապնդումը.





digitised by A.R.A.R.@

կազմի 42 տոկոսը ոչ ռուս ազգի ռազմիկներ էին, իսկ Կալինինյան ռազմաճակատում ոչ ռուս ազգի մարտիկները և կրտսեր հրամանատարները որոշ միավորումներում կազմում էին 46 և ավելի տոկոս: Այս տվյալները համոզիչ կերպով հերքում են վեցհատորյակի երրորդ հատորում առկա այն պնդումները, թե գործող բանակում ոչ ռուս ազգի ռազմիկները կազմում էին սոսկ 20 տոկոսը, այն էլ միայն որոշ բանակներում:

Պատերազմի տարիներին բանակում կատարված կուսակցական աշխատանքին նվիրված կոլեկտիվ աշխատությունում («Партийно-политическая работа в Советских Вооружённых Силах в годы Великой Отечественной войны 1941—1945 гг.», Воениздат, М., 1973),), լուրջ սխալներ են թույլ տրվել խորհրդային զինված ուժերի բազմազգ անձնակազմի ինտերնացիոնալ համախմբման նպատակով ռազմական խորհուրդների, քաղմարմինների, բանակային կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների գործունեության լուսաբանման հարցում: Հիշյալ աշխատության երկու գլուխները նվիրված են Դոնի և Վոլգայի միջակա տարածքում մղված պաշտպանական գոտեմարտերին և Ստալինգրադի մոտ մեր զորքերի ձեռնարկած հակահարձակմանը: Կարդում ես ու զարմանում. դրանց հեղինակներն ինչու՞ են անտեսել այն մի շարք կարևոր իրադարձությունները, որոնք վերաբերում են ԽՍՀՄ ժողովուրդների բարեկամության և նրանց ռազմիկների եղբայրական զինակցության հետագա ամրապնդման համար կուսակցության ձեռնարկած միջոցներին:

1942 թվականի գարնանից ազգային հանրապետություններից սկսեցին գործող բանակ ժամանել խոշոր համալրումներ, մինչդեռ բազմաթիվ զորակոչիկներ զինվորական ծառայություն չէին անցել, վատ գիտեին կամ գրեթե չէին տիրապետում ռուսերենին: Կարմիր բանակի գլխավոր քաղվարչությունը, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումով, մշակեց խորհրդային զինված ուժերի անձնակազմի ինտերնացիոնալ համախմբման հետագա ուժեղացման միջոցառումներ: Դրանք շարադրվել էին կարմիր բանակի քաղվարչության 1942 թ. սեպտեմբերի 17-ի «Ոչ ռուս ազգի կարմիրբանակայինների և կրտսեր հրամանատարների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի մասին» № 012 դիրեկտիվում: Դա ոչ ռուս ազգի մարտիկների և կրտսեր հրամկազմի հետ տարվող դաստիարակչական աշխատանքի բարելավման մարտական ծրագիր էր ռազմաճակատների և բանակների ռազմական խորհուրդների, ստորաբաժանումների քաղմարմինների և կուսակցական-քաղաքական ապարատների, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների համար: Այդ դիրեկտիվը հասցվել էր մինչև վաշտերի քաղաշխատողները ներառյալ: Ամենուրեք տեղի ունեցան դիրեկտիվում շարադրված խնդիրների գործնական կատարմանը նվիրված կուսակցական և կոմերիտական ժողովներ:

Ողջ կուսակցության ուշադրությունը տարբեր ազգերի մարտիկների ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց մեկ մարտական ընտանիքում համախմբելու խնդիրների վրա բևեռելու նպատակով «Պրավդա» թերթը 1942 թ. հոկտեմբերի 14-ին հանդես եկավ առաջնորդող հոդվածով, ուր նշված էր. «Գերմանական զավթիչների դեմ ուղղված պատերազմի բոլոր տեղամասերում մարտնչում են ռուսները՝ հավասարների մեջ առաջինը, պաշտպանելով ողջ Խորհրդային Միության հանրապետությունները, ցուցադրելով զինվորական պարտքի, հայրենիքի նկատմամբ նվիրվածության, երդման հանդեպ հավատարմության օրինակներ: Իր հայրենիքն անձնուրացաբար պաշտպանող կարմիր բանակի շարքերում կան Խորհրդային Միության բոլոր ժողովուրդների ներկայացուցիչներ: Նրանք բոլորը լի են թշնամու դեմ ատելությամբ, տոգորված են մինչև վերջին շունչը խորհրդային հողի յուրաքանչյուր թիզը պաշտպանելու վճռականությամբ: Խնդիրն այն է, որ կարմիր բանակի բոլոր մարտիկների համար պետք է ստեղծել այնպիսի պայմաններ, որոնցում իրենք կարողանային լիովին դրսևորել ռազմիկի իրենց հատկանիշները»:

Վեցհատորյակի երրորդ հատորում կան նաև մի շարք այլ վրիպումներ, որոնք նույնպես վկայում են զորքերի ինտերնացիոնալ համախմբմանն ուղղված քաղաքական աշխատանքի թերագնահատման մասին: Վերցնենք թեկուզ մի այսպիսի կոնկրետ օրինակ. 302—313-րդ էջերում, որտեղ նկարագրվում են Նովոռոսիյսկի մոտ հարձակողական գործողությունները, գրված է, որ էլեկտրակայանի շենքի վրա կարմիր դրոշը բարձրացրեց վաշտի կուսկազմակերպիչ Մարտիչևը: Այս հարցի առնչությամբ ես նամակ հղեցի խմբագրությանը՝ փաստաթղթերով ապացուցելով, որ Մարտիչև ազգանունը հայկական Մկրտիչև խեղաթյուրված ազգանունն է: Բայց դա չէ գլխավորը: Բանվորագյուղացիական կարմիր բանակի գլխավոր քաղվարչության արխիվային ֆոնդերում պարզորոշ գրված է, որ այդ դրոշը բարձրացրել է 318-րդ հրաձգային դիվիզիայի 1339-րդ հրաձգային գնդի վաշտի կուսկազմակերպիչ, դասակի հրամանատարի օգնական Մ. Ա. Մկրտչյանը: Այդ մարտական գործողության ընթացքում վաշտի քաղկազմակերպիչ Մկրտչյանի ցուցաբերած սխրանքները հանգամանորեն նկարագրված են հենց նույն «Воениздат»-ի հրատարակած «Մարտական եղբայրություն» իմ մենագրությունում (տե՛ս էջ 231—232):

Վեցհատորյակի երրորդ հատորում, ինչպես նաև **Գաղափարական աշխատանքը ԽՍՀՄ զինված ուժերում: Պատմական ակնարկ** մենագրությունում, որը նույն հրատարակչությունը լույս է ընծայել 1982 թ., նույնպես անտեսվել է մեր զինված ուժերի և միութենական ու ինքնավար հանրապետությունների կյանքում տեղի ունեցած մի այնպիսի խոշոր իրադարձություն, ինչպիսին էր ոչ ռուս ազգերի մարտիկների շրջանում աշխատող ռազմաճակատային և օկրուգային ագիտատորների 1943 թ. հուլիսի վերջին, օգոստոսի սկզբին Մոսկվայում տեղի ունեցած 20-օրյա սեմինար խորհրդակցությունը: Նրա աշխատանքը գլխավորել է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, Կենտկոմի քարտուղար, կարմիր բանակի գլխավոր քաղվարչության պետ Ա. Շչերբակովը: Ագիտատորների առջև ծրագրային մեծ ճառով հանդես է եկել ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության նախագահ Մ. Կալինինը: Զեկուցումներով հանդես են եկել Դ. Մանուիլսկին, Ե. Յարոսլավսկին, Ա. Պանկրատովան, միութենական և ինքնավար հանրապետությունների պատասխանատու աշխատողներ, փորձի փոխանակմամբ՝ տարբեր ազգության 25 ռազմաճակատային ագիտատորներ:

Զարմանալի է նաև այն, որ վերոհիշյալ աշխատության «Կուսակցական-քաղաքական աշխատանքը Կուրսկի մոտ և Դնեպրի գետանցման ժամանակ տեղի ունեցած մարտերում» հատուկ գլխում (էջ 263—290) նույնիսկ չի հիշատակված խորհրդային զինված ուժերի կյանքում կատարված այդ կարևոր իրադարձությունը: Վերջինիս մասին ոչ մի խոսք չի ասվում նաև **Գաղափարական աշխատանքը ԽՍՀՄ զինված ուժերում** մենագրությունում: Կամ վերցնենք մեկ այլ փաստ: Վոլգայի ափին ճակատամարտերի ամենաթեժ պահին, 1942 թ. հոկտեմբերի 31-ին, «Պրավդան» հրապարակեց ուզբեկ ժողովրդի նամակը ուզբեկ ռազմիկներին: 1943 թ. առաջին կիսամյակում իրենց ռազմաճակատային հայրենակիցներին նամակներ հղեցին ղազախ, հայ, կիրգիզ, թուրքմեն, տաջիկ և այլ ժողովուրդները: Միլիոնավոր մարդկանց կողմից ստորագրված այդ նամակները տպագրվեցին կենտրոնական և հանրապետական թերթերում: «Պրավդան» դրանց հատուկ առաջնորդող հոդվածներ նվիրեց: Դրանք քննարկվեցին ռազմաճակատներում, բանակային կոլեկտիվներում: Տարբեր ռազմաճակատների ոչ ռուս ազգի ռազմիկներն իրենց ժողովուրդներին զեկույցներ էին հղում պատվիրանների կատարման մասին: Պատասխան նամակ-զեկույցները նույնպես լայնորեն հրապարակվեցին մամուլում:

Անտարակուսելի է, որ մեր կուսակցության, նրա ազգային ջոկատների, բանակների կուսակցական կազմակերպությունների այդ բոլոր միջոցառումները մեծապես նպաստեցին զորքերի հայրենասիրական և ինտերնացիոնալ համախմբման ուժեղացման, նրանց մարտունակության բարձրացման գործին: Բայց պատերազմի տարիներին խորհրդային զինված ուժերում կատարված կուսակցական-քաղաքական աշխատանքի մասին պատմող այս արժեքավոր աշխատությունների հեղինակները, ցավոք, աչքաթող են արել հիշյալ կարևոր փաստերը:

Հայրենական մեծ պատերազմին նվիրված հանրագիտարանի 682—685 էջերում նկարագրված է Ստալինգրադյան ճակատամարտը: Այստեղ մանրամասնորեն նշված են նաև մեր հաղթանակի ակունքները: Սակայն ոչ մի խոսք չի ասված Ստալինգրադի պաշտպանների մարտական եղբայրության մասին: Մինչդեռ ասելու շատ բան կա: «Պրավդա» թերթը 1942 թ. հոկտեմբերի 31-ին «Խորհրդային Միության ժողովուրդների մարտական եղբայրությունը» առաջնորդող հոդվածում նշել է. «Աշխարհի ժողովուրդները խոսում են Ստալինգրադի հրաշքի մասին: Մարդկության պատմությունը դեռ երբեք չէր տեսել այդպիսի անձնազոհ պաշտպանություն, այդպիսի հերոսական հաստատակամություն: Իսկ ո՞վ է պաշտպանում Ստալինգրադը: Ո՞վ նրանում երկաթե պատ դարձավ. ռուս մարդիկ՝ ուկրաինացիների և բելոռուսների կողքին, ուզբեկների, վրացիների, հայերի, ադրբեջանցիների կողքին, ամբողջ բազմամիլիոն խորհրդային տերության որդիների հետ: «Հանու՜ն հայրենիքի: Ո՛չ մի քայլ հետ». այս լոզունգով են մարտի գնում Ստալինգրադի պանծալի պաշտպանները: Ժողովուրդների բարեկամությունը՝ սա է խորհրդային պաշտպանության մեծ ուժը... Հանուն հայրենիքի արյամբ կնքված եղբայրությունն ամենաամուր եղբայ-



digitised by A.R.A.R.@

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը պատմականության սկզբունքը համարում էին պատմության դիալեկտիկամատերիալիստական ըմբռնման միջուկը. «Ինչից սկսվում է պատմությունը,— գրել է Ֆ. Էնգելսը,— դրանից էլ պետք է սկսվի մտքի ընթացքը, և նրա հետագա շարժումը պետք է ներկայանա ոչ այլ կերպ, քան որպես պատմական պրոցեսի արտացոլում» (Маркс К. и Энгельс Ф., Соч., т. 13, стр. 497): Այդ սկզբունքի առաջին մեծ կիրառողը դարձավ Վ. Ի. Լենինը: Պատմականությունը պահանջում է երևույթները ուսումնասիրել նրանց ծագման ու զարգացման պրոցեսում՝ հաշվի առնելով տվյալ ժամանակաշրջանի կոնկրետ պայմանները, մինչ՝ այդ եղած փորձն ու հետագա հեռանկարը: Միայն այդ դեպքում կարելի է հայտնաբերել որոշակի օրինաչափություններ և ճիշտ հասկանալ ու կանխատեսել զարգացման ուղին, պատմական հաջորդականության իմաստը: Դա նշանակում է մերժել անհատի պաշտամունքի և լճացման ժամանակաշրջանում առաջացած ամեն մի մեխանիկական ու դոգմատիկ մոտեցում և ցուցաբերել ստեղծագործական վերաբերմունք:

Երևույթները պետք է գնահատել ոչ միայն իրենց ժամանակի ու պայմանների մեջ, այլև դրանք տեսնել դինամիկ վիճակում, այսինքն՝ թե ինչպես են զարգացել ու ինչի են հանգել: Իր խոսքը մասնավորելով մի այնպիսի բարդ հարցի մասին, ինչպիսին է պետությունը, Լենինը նշել է. «Հասարակական գիտության հարցում ամենահուսալին ու ամենաանհրաժեշտը՝ այդ հարցին իրոք ճիշտ մոտենալու հմտություն ձեռք բերելու համար և բազմաթիվ մանրուքների կամ պայքարող կարծիքների հսկայական բազմազանության մեջ չկորչելու համար,— այդ հարցին գիտականորեն մոտենալու առումով ամենակարևորն է՝ չմոռանալ հիմնական պատմական կապը, յուրաքանչյուր հարցին նայել այն տեսակետից, թե տվյալ որոշակի երևույթը պատմության մեջ ինչպես է ծագել, իր զարգացման ընթացքում ինչպիսի գլխավոր փուլեր է անցել այդ երևույթը, և դրա զարգացման տեսակետից նայել, թե տվյալ բանն ինչ է դարձել այժմ» (ԵԼԺ, հ. 39, էջ 82—83): Լենինն իր աշխատություններում օգտագործում է բազմաթիվ պատմական փաստեր և դրանք քննարկում հենց այդ տեսանկյունից: Պատմականության սկզբունքի կիրառման փայլուն օրինակ է նարոդնիկության երկու սերունդների բաժանման ու գնահատման լենինյան դրվածքը, շերտավորված վերաբերմունքը Պլեխանովի գործունեության տարբեր շրջանների նկատմամբ և այլն: Կարևորն այն է, որ բոլոր դեպքերում Լենինը ճշմարտության չափանիշ է դարձնում պրակտիկան, պատմության փորձը:

Պատմականության հետ անխզելիորեն կապված է օբյեկտիվությունը, որը նշանակում է լիովին հավատարիմ մնալ իրականությանը և բոլոր եզրահանգումները կատարել՝ ելնելով անառարկելի փաստերից, դրանք վերցնելով ամբողջությամբ և ոչ թե ընտրել քմահաճորեն, զբաղվել սոսկ փաստագրությամբ, դրանք դիտել ընդհանուր կապակցությունից դուրս: Պատմությունն ուսումնասիրելը չի նշանակում հավաքել միայն փաստեր, այն էլ խառնիխուռն, այլ, նախ, պետք է վերցնել տիպական փաստերը՝ իրենց ամբողջության մեջ և, երկրորդ, տալ դրանց առաջացման ու զարգացման գիտական բացատրությունը. «Գիտությունը,— գրել է Ֆ. Էնգելսը,— դադարում է այնտեղ, որտեղ կորչում է անհրաժեշտ կապի ուժը» (Маркс К. и Энгельс Ф., Соч., т.20, стр.. 533):

Պատմագիտության մյուս կարևոր լենինյան սկզբունքը կուսակցականությունն է: Դասակարգային հասարակության մեջ դեպքերին ու երևույթներին մարդիկ կամա թե ակամա վերաբերվում են ելնելով իրենց դասակարգային-կուսակցական շահերից: Մարքսիստ-պատմաբանը պետք է բացահայտի երևույթների դասակարգային էությունը և դրանց զարգացման միտումները: Լենինը կուսակցականության սկզբունքը համարում էր գիտական օբյեկտիվության բարձրագույն աստիճան, որովհետև այն ելնում է ռեալ իրականության իմացությունից և ոչ թե երևույթների ու դեպքերի կամայական ընտրությունից: Կոմունիստական կուսակցությունը քննադատաբար է մոտենում նաև սեփական գործունեությանը, բացահայտորեն մատնանշում իր թույլ տված սխալներն ու թերությունները: Այժմ, երբ ԽՄԿԿ-ն ձեռնամուխ է եղել հեղափոխական վերակառուցման, մեզանից պահանջվում է վեր հանել պատմական ճշմարտությունը, քննադատական մոտեցում ցուցաբերել կուսակցության պատմության ամեն մի ժամանակաշրջանի նկատմամբ: Կոմունիստական կուսակցությունը խստորեն քննադատում է այն լուրջ վրիպումներն ու շեղումները, որոնք թույլ են տրվել անհատի պաշտամունքի և լճացման տարիներին: Այստեղ խոսքը վերաբերում է Լենինի ժառանգության նոր ընթերցմանը, լենինյան պարբերացման և մեթոդաբանության, լենինյան դիալեկտիկայի ու քաղաքական փորձի յուրացմանը: Բայց սա չի նշանակում պատճենում, վերադարձ նախկին ձևերին: Դա ենթադրում է ոչ թե



մեխանիկական մեջբերումներ Լենինից, այլ լենինյան դասի յուրացում, դաս, որը ներառում է նաև սոցիալիզմի վերաբերյալ մեր պատկերացումների ձերբազատումը խեղաթյուրումներից, ձևախեղումներից և ժամանակակից կյանքի իրողությունների, սոցիալիստական պրակտիկայի անցած ուղու օբյեկտիվ հաշվառում: Հետևապես, պատմության ճշմարիտ ընկալումը և բացահայտումը հասարակական կյանքի ճանաչողության ու վերակառուցման գրավականն է: Դեռևս ժամանակին Կ. Մարքսը Պրուդոնի անգիտության (հատկապես տնտեսական օրենքների իմացության մեջ) պատճառն ամենից առաջ համարում էր այն, որ նա «չուներ պատմական գիտելիքներ» (Նույն տեղը, հ. 27, էջ 406):

Արդյոք ժամանակը չէ՞ հստակորեն տարբերելու սոցիալիզմի էությունը և նրա իրականացման պատմականորեն սահմանափակ ձևերը: Արդյոք ժամանակը չէ՞ գիտականորեն և քննադատաբար վերլուծելու մեր պատմությունն ու առաջընթացի դիալեկտիկան: Վերակառուցման լավագույն ուսուցիչը, որին մենք պետք է մշտապես անսանք, կյանքն է՝ իր հակասություններով հանդերձ: Ֆ. Էնգելսը նկատել է, որ դիալեկտիկայի համար մեկընդմիշտ սահմանված, պարտադիր, սրբազան ոչինչ չկա: Հենց բնության ու հասարակության և մեր մտածողության այդ անընդհատ շարժումը, մշտական նորացումն էլ նոր մտածողության ելակետային, ամենաարմատական սկզբունքն է: Պատմության ամենաբարդ, ամենադրամատիկ, բեկումնային պահերին Վ. Ի. Լենինը նորից ու նորից դիմում էր դիալեկտիկային՝ որպես մարքսիզմի կենդանի ոգու:

Հայտնի է, որ առանց ժամանակագրության ու պարբերացման չի կարող պատմագիտություն լինել: Ելնելով լենինյան պատմականության, օբյեկտիվության և կուսակցականության դիրքերից փորձենք քննադատաբար իմաստավորել կուսակցության պատմության հետհոկտեմբերյան շրջանի պարբերացման որոշ հարցեր: Մինչհոկտեմբերյան շրջանի կուսակցության պատմության պարբերացումն իր բնորոշ կողմերով գրեթե պարզաբանված է Վ. Ի. Լենինի երկերում, կուսակցական բազմաթիվ փաստաթղթերում և հեղինակային հոդվածներում: Մինչդեռ կուսակցության հետհոկտեմբերյան շրջանի պատմության պարբերացման բնագավառում դեռևս գոյություն չունի ամբողջական որևէ ուսումնասիրություն, չնայած որ խորհրդային որոշ պատմաբաններ միայն վերջին ժամանակներս այս կամ այն ձևով անդրադարձել են այդ հարցին:

Հեղափոխական վերակառուցման գաղափարախոսությունը հնարավորություն է ընձեռում նոր ձևով իմաստավորելու կուսակցության դերը սոցիալիզմի քաղաքական սիստեմում, բնորոշելու նրա գործունեությունը պատմության կտրուկ շրջադարձերում, երբ համապատասխանաբար փոխվում են պատմակուսակցական գիտելիքների ընդհանրացման մակարդակն ու որակը:

Այսօր գրականության մեջ մշակվել են հետհոկտեմբերյան շրջանի կուսակցության պատմության հետևյալ փուլերը.

Առաջին, կուսակցության վերածվելը կառավարող ուժի մինչև 20-ական թվականների սկիզբը, երբ կիրառվում է նէպը և Լենինը որպես խնդիր (ոչ լիովին կատարված) առաջ է քաշում իրականացնել «փոփոխություններ մեր քաղաքական կարգում» (ԵԼԺ, հ. 45, էջ 405): Պատմակուսակցական գիտությունն այդ ժամանակ տիրապետում է, չնայած ոչ լրիվ կերպով, կուսակցության պատմության լենինյան սկզբունքներին, ստեղծվում է հետազոտման կենտրոնների ծավալուն ցանց, լայն մասշտաբով պատրաստվում են մարքսիստ պատմաբանները:

Երկրորդ, 30-ական թվականներ, երբ Ստալինի անձի պաշտամունքի հաստատման հետևանքով տեղի ունեցավ նահանջ սոցիալիզմի կառուցման և կուսակցության պատմության ուսումնասիրության լենինյան սկզբունքներից:

Երրորդ, 1956 թ. մինչև 60-ական թվականների կեսերն ընկած ժամանակահատվածում ԽՄԿԿ XX համագումարը կյանքի կոչեց նոր քաղաքական իրադրություն կուսակցության մեջ, վեր հանեց ու քննադատեց անհատի պաշտամունքը և նրա հետևանքները: Միաժամանակ տեղի ունեցավ ստեղծագործական վերելք պատմակուսակցական գիտության մեջ:

Չորրորդ, 70-ական թթ. մինչև 80-ական թթ. սկիզբը, այն է՝ լճացման և պահպանողականության տարիներ: Այդ ժամանակահատվածում պատմակուսակցական գիտությունը դոփում էր տեղում:

Հինգերորդ, 1985 թ. ապրիլից սկսվում է նոր ժամանակաշրջան կուսակցության պատմության և նրա պարբերացման ու պատմագրության ուսումնասիրության մեջ (տե՛ս «Вопросы истории КПСС», 1988, № 12, стр. 106):



digitised by A.R.A.R.@

Այստեղ միաժամանակ պետք է ցույց տրվի, թե ինչպես «ավելի շատ սոցիալիզմ, ավելի շատ դեմոկրատիա» կուսակցության պահանջը կօգնի պատմակուսակցական գիտության զարգացմանը: Հարկ է նաև այդ պրոբլեմը սերտորեն զուգակցել սոցիալիստական հասարակարգի հեղափոխական վերափոխումների հետ:

Առաջադրված ժամանակագրական սահմանները դոգմա չեն, դրանք պետք է դրվեն կոլեկտիվ քննարկման, ենթարկվեն կարծիքների փոխանակման այն հաշվով, որպեսզի բացահայտվի ճշմարտությունն այդ ասպարեզում: Միաժամանակ վերոհիշյալ պարբերացումը չի հետապնդում միայն ուսումնական նպատակներ: Այն, անշուշտ, կնպաստի պատմակուսակցական գիտության արմատական վերափոխմանն ու զարգացմանը, նրա օբյեկտիվ լուսաբանմանը: Հարկավոր է վերացնել այսպես կոչված «սպիտակ բծերը» և հրաժարվել մինչև այժմ անխուսափելի համարվող «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» ժառանգությունից: Ներկայումս արդեն այդ նպատակով կուտակվում են բավականին նյութեր, որոնք հնարավորություն կընձեռեն խոր կերպով բացահայտելու կուսակցության պատմության լենինյան սկզբունքները նրա զարգացման ու փոփոխման մեջ, բացահայտելու մարքս-լենինյան ժառանգության տեսական ու մեթոդաբանական նշանակությունը կուսպատմության բոլոր փուլերի համար, լիովին ազատագրվելու վերջինիս սկզբունքների ստալինյան մեկնաբանումներից, հրաժարվել սոցիալիզմի մասին դոգմատիկ պատկերացումներից:

Ժամանակին Ի. Ստալինը պատմակուսակցական գիտության պարբերացումը կապում էր իր կենսագրության հետ, որն արտացոլվել էր «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացում»: Այն երկար ժամանակ իշխում էր պատմակուսակցական գիտությամբ զբաղվող գիտնականների շրջանում: Պատմաբանը, անհատի պաշտամունքի ու լճացման տարիներին օգտվում էր միայն միատեսակ աղբյուրագիտական բազայից՝ այսպես կոչված «նորմատիվ փաստաթղթերից», որոնք ներկայացվում էին որպես օբյեկտիվ ճշմարտություններ և որոնց վերամշակումը բոլոր դեպքերում տարվում էր առանց քննադատական մոտեցումների: Փաստորեն մեծ անջրպետ գոյություն ուներ տեսական ընդհանրացումների և պատմական պրակտիկայի միջև: Հենց այս խնդիրներն են, որ պետք է բազմակողմանիորեն վեր հանեն կուսակցության պատմության պարբերացմամբ զբաղվող գիտնականները:

Այստեղից բխում է, որ անհրաժեշտ է ուսումնասիրել բուն պատմությունը, այլ ոչ թե շատ թեմաներում կրկնել տեսական այն հարցերը, որոնք մինչև այժմ ուսուցանվել են պատմակուսակցական գիտության բնագավառում: Հարկավոր է օբյեկտիվորեն ցույց տալ գաղափարների ու կոնկրետ անձանց պայքարի պատմությունը, կուսակցության կողմից գիտականորեն հիմնավորված քաղաքականության մշակման պատմությունը: Կուսակցության «Ավելի շատ սոցիալիզմ» լոզունգը տեսության բնագավառում նշանակում է ավելի շատ մարքսիզմ-լենինիզմ: Այլ կերպ ասած, վերակառուցումը պատմակուսակցական գիտության բնագավառում նախ և առաջ նշանակում է ավելի մոտ կանգնել Մարքսին, Էնգելսին և Լենինին: Ավելի մոտ, քանի որ ճշմարտության դասերը թելադրում են օբյեկտիվորեն ընդունել այն, որ մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական ոգու նկատմամբ դրսևորվում էր կամայական վերաբերմունք, իրականության հրատապ պրոբլեմներից պատմակուսակցական գիտության խզվածության հետևանքով գերիշխող էին դարձել պահպանողականությունը, դոգմատիզմն ու սխոլաստիկան: Հետևաբար անհրաժեշտ է խստությամբ բացահայտել ճշմարտությունը: «Սա,— ընդգծել է Վ. Ի. Լենինը,— դառը ճշմարտություն է. Բայց սա ճշմարտություն է. Ժողովրդին պետք է ասել ճշմարտությունը: Նրա աչքերը միայն այդ ժամանակ կբացվեն, և նա կսովորի պայքարել անճշտության դեմ» (ԵԼԺ, հ. 32, էջ 18): Այդպես երբեք արմատախիլ չեն արվի ապօրինության ու կամայականության մնացուկները, որոնք այսօր էլ դեռ երբեմն դրսևորվում են և որոնց մասին այնպիսի կրքով ու սոցիալական անհանդուրժողականությամբ գրում է մամուլը:

Պատմակուսակցական գիտության խնդիրն է շատ պրոբլեմների, այդ թվում և հետհոկտեմբերյան շրջանի պարբերացման հարցերի մշակման գործում ձերբազատվել միակողմանիությունից: Անհրաժեշտ է հասարակական կյանքի հակասական երևույթները, իրադարձություններն ու փաստերը ենթարկել օբյեկտիվ գիտական վերլուծության, որի շնորհիվ խորհրդային մարդիկ, մեր արտասահմանյան բարեկամները, ողջ համաշխարհային հասարակայնությունը կըմբռնեն լենինյան կուսակցության ղեկավարությամբ սկսված հեղափոխական վերակառուցման իսկական պատճառներն ու անհրաժեշտությունը:



Հայտնի է, որ կուսակցության պատմության պարբերացումը բուն կուսակցության կազմավորման ու զարգացման տարեգրության մարքս-լենինյան իմաստավորումն է, համակարգումը որոշ շրջանակներում: Պատմակուսակցական գիտության պարբերացման սկզբնավորումն անխզելիորեն առնչվում է Ռուսաստանում ազատագրական շարժման, մարքսիստական կուսակցության ստեղծման ու ամրապնդման համար Վ. Ի. Լենինի և նրա զինակիցների ծավալած պայքարի հետ: Նրա առանձին կողմերի ուսումնասիրությունը սկիզբ առավ ՌՍԴԲԿ-ի ձևավորվող պատմության լուսաբանման հետ զուգընթաց: Դրանք դեռևս թույլ են ուսումնասիրված, հատկապես՝ կուսակցության հետհոկտեմբերյան շրջանի պարբերացումը: Կուսակցության պատմության ուսումնասիրության տեսական հիմքը Լենինը համարում էր Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հարուստ գիտական ժառանգությունը: Իսկ կուսպատմության պարբերացման հիմնական պրոբլեմները առաջնորդը մշակել է դասակարգային մարտերում, աշխատավորական զանգվածների շահերի համար մղվող իր գաղափարական-քաղաքական պայքարի և կազմակերպչական գործունեության ընթացքում: Պարբերացման վերաբերյալ լենինյան նկատառումներ պարունակվում են նրա շատ աշխատություններում: Ելնելով պարբերացման լենինյան սկզբունքներից՝ պատմակուսակցական գիտության հետհոկտեմբերյան պատմության պարբերացումը կարելի է բաժանել հետևյալ ժամանակաշրջանների կամ փուլերի.

Առաջին (1917 թ. հոկտեմբերից մինչև 1921 թ.) փուլը բնորոշվում է որպես խորհրդային պատմակուսակցական գիտության զարգացման շրջան, երբ կուսակցությունը վերածվում է կառավարող ուժի, ձևավորվում է խորհրդային պատմակուսակցական գիտությունը, հաջող պայքար է մղվում ազնվականական-բուրժուական հոսանքների, հին պատմական գիտության դեմ, զգալի աշխատանք է տարվում կուսակցության պատմության լենինյան սկզբունքների ձևավորման ու հետագա մշակման գործում, ստեղծվում է պատմակուսակցական գիտության գիտական կենտրոնների լայն ցանց, լայն մասշտաբներով պատրաստվում են երիտասարդ պատմաբանների առաջին կադրերը:

Երկրորդ (1922 թ. մինչև 1936 թ.) փուլում Ստալինի անձի պաշտամունքի հաստատման հետևանքով տեղի է ունենում նահանջ սոցիալիզմի կառուցման և կուսպատմության սկզբունքներից: Հաստատելով սեփական և իր մերձավոր շրջապատի բռնապետական իշխանությունը, Ի. Ստալինը սոցիալիզմի լենինյան կոնցեպցիան նենգափոխում է իր կոնցեպցիայով: Մեր երկրում ինդուստրացումն ու կոլեկտիվացումը իրականացվեցին ոչ միայն պետական հարկադրանքի, այլև անօրինականության և զանգվածային բռնությունների միջոցով: Ի. Ստալինն այդ ամենը որակեց որպես ավարտուն սոցիալիզմ: 1936 թ. սահմանադրությամբ Խորհրդային Միությունում հռչակված սոցիալիզմը պետական-վարչական սոցիալիզմ էր՝ կուսակցական-պետական բյուրոկրատիայի գերիշխումով, զանգվածային բռնություններով, դեմագոգիայով և մարդկանց համակած վախով, առանց տարրական դեմոկրատիայի ու հրապարակայնության, այսինքն՝ ոչ թե իրական, այլ զորանոցային սոցիալիզմ:

Երրորդ (1937 թ. մինչև 1953 թ.) փուլում ավելի դաժան մեթոդներով նորից շարունակվում է նախկին դեսպոտիզմը, ծավալվում են զանգվածային բռնությունները, աշխատավոր լայն զանգվածներն անտրտունջ ենթարկվում են իշխանությունների բոլոր կամայականություններին: Չնայած ԽՍՀՄ որոշ հեղինակության աճին, կապված նրա՝ ինդուստրիալ հզոր տերության վերածման, պատերազմում հաղթանակի, հետպատերազմյան վերելքի հետ, հենց այն ժամանակից, երբ ստալինյան բռնապետական իշխանությունը բանվոր դասակարգին և նրա դաշնակիցներին փաստորեն մեկուսացրեց երկրի կառավարումից ու հաստատեց կուսակցական-պետական բյուրոկրատիայի լիիշխանություն, խորհրդային հասարակության մեջ գլխավորը դարձավ աշխատավորական զանգվածների և վարչաբյուրոկրատական ուժերի միջև առաջացած հակասությունը, որը մինչև այժմ լրիվ չի հաղթահարված:

Չորրորդ (1953 թ. մարտից մինչև ԽՄԿԿ Կենտկոմի 1964 թ. հոկտեմբերյան պլենումը) փուլը բնորոշ է նրանով, որ կուսակցության համար ստեղծվեց նոր քաղաքական իրադրություն, որը կյանքի կոչեց ԽՄԿԿ XX համագումարը: Այն վեր հանեց և քննադատեց անհատի պաշտամունքն ու նրա հետևանքները, միաժամանակ ստեղծագործական վերելք ապրեց պատմակուսակցական գիտությունը: Այս փուլը բնութագրվում է նաև բյուրոկրատիայի վրա դեմոկրատական ուժերի վճռական հարձակումով, որի մեջ էր «ձնհալի», այսինքն՝ Ն. Ս. Խրուշչովի բարենորոգչական գործունեության էությունը:



digitised by A.R.A.R.@

Հինգերորդ (1964 թ. հոկտեմբերյան պլենումից մինչև ԽՄԿԿ Կենտկոմի 1985 թ. մարտ ամիսը) փուլը համընկնում է Լ. Բրեժնևի և Կ. Չեռնենկոյի կառավարման ժամանակաշրջանի հետ, երբ, ընդհակառակը, նախորդ շրջանի համեմատ այն ներկայացնում էր բյուրոկրատիայի հարձակումը, որը և դարձավ հասարակության լճացման ու խորացող ձևախեղումների շրջան: Պատմակուսակցական գիտության մեջ տիրապետող դարձան դոգմատիզմն ու պահպանողականությունը:

Եվ, վերջապես, վեցերորդ (1985 թ. ապրիլյան պլենումից սկսած...) փուլին բնորոշն այն է, որ սկսվում է նոր ժամանակաշրջան կուսակցության պատմության պատմագրության և պարբերացման լուսաբանման մեջ: Մինչ այդ քայլ առ քայլ հասունանում է սոցիալ-քաղաքական ճգնաժամը երկրում, որի բռնկումը փոքր-ինչ կասեցրեց Յու. Անդրոպովը և արագացրեց Կ. Չեռնենկոն: Այդ իրադրության մեջ էլ հենց վրա հասավ 1985 թվականի ապրիլը, որը բացեց խորհրդային հասարակության սոցիալ-տնտեսական վերակառուցման, հեղափոխական նորացման, սոցիալիզմի իսկական մարդասիրական և բարոյական նկարագրի վերականգնման ուղին: Հետևաբար վերակառուցումը պահանջում է նաև խոր փոփոխություններ կուսակցության հետհոկտեմբերյան շրջանի պատմության պարբերացման բնագավառում: Ուստի խիստ կարևոր է ԽՄԿԿ Կենտկոմի հատուկ հանձնաժողովի ստեղծումը ԽՄԿԿ պատմության ուրվագծերի նախապատրաստման և հրատարակման համար: Հանձնաժողովն արդեն ձեռնամուխ է եղել այդ գործին:

Ժողովրդի կերտած պատմությունը գալիք սերունդները ժառանգություն են ստանում միայն ու միայն օբյեկտիվ գիտական հետազոտությունների միջոցով: Այդ պատճառով էլ հեղափոխական վերակառուցման ներկա պայմաններում պատմության գիտական պարբերացման կարևորագույն խնդիրն է՝ ելնելով լենինյան պարբերացման սկզբունքներից ճիշտ մոտեցում ցուցաբերել պատմության նկատմամբ, լայն մասսաներին դաստիարակել խորացող վերակառուցման անհրաժեշտության նկատմամբ համոզվածության և նվիրվածության ոգով:

---

# ՀԱՇՎՈՂԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԻ ԾՆՈՒՆԴ Է

Երևանի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը երկրի հաշվողական տեխնիկայի մշակման հզոր կենտրոններից է:

Առաջին սերնդի «Արագածից» մինչև չորրորդ սերնդի նորագույն հաշվողական համակարգեր. ահա հայ մաթեմատիկոսների անցած ուղին:

Ինստիտուտում մշակված էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն այժմ օգտագործվում են երկրի ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր բնագավառներում: Հաշվողական տեխնիկայի ստեղծման և կատարելագործման գործում պատկառելի ավանդ ունի գիտահետազոտական հաստատության առաջատար մասնագետներից մեկը՝ ինստիտուտի գլխավոր ինժեներ, Լենինյան և Հայկական ԽՍՀ պետական մրցանակների դափնեկիր, հանրապետության ԳԱ թղթակից անդամ, տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր ԱՐՄԱՆ ՔՈՒՉՈՒԿՅԱՆԸ:

Ճանաչված գիտնականի հետ է լրագրող Լևոն Կանցյանի զրույցը:

ԼԵՎՈՆ ԿԱՆՑՅԱՆ — Ընկեր Քուչուկյան, Դուք եղել եք ԽՄԿԿ XIX կոնֆերանսի պատգամավոր: Ելույթ չեք ունեցել, բայց...

ԱՐՄԱՆ ՔՈՒՉՈՒԿՅԱՆ — Ինչպես հայտնի է, համաժողովը մեր հասարակության առաջընթացի համար որոշիչ նշանակություն ունեցող ծրագրեր ընդունեց: Դրանք կոնֆերանսում եղած ելույթների, պատվիրակների հարցապնդումների, հանձնաժողովների համահավաք կարծիքների արգասիք են: Բոլոր ելույթ ունենալ ցանկացողների ունկնդրումները զգալիորեն կերկարացնեին համաժողովի նախատեսված տևողությունը և, բնական է, որ ելույթների թիվը սահմանափակվեց: Սակայն, շատ պատգամավորներ, այդ թվում և ես, մեր կոլեկտիվների պատվիրանները, հարցադրումները, ելույթների գրավոր տեքստերը հանձնեցին կոնֆերանսի ղեկավար մարմիններին: Հետագայում դրանց մեծ մասն արտացոլվեց կոնֆերանսի փաստաթղթերում, կուսակցության և կառավարության որոշումներում:

Պետք է ուղղակիորեն ասել, որ երկրում ստեղծվել է նոր գաղափարների պատկառելի պոտենցիալ, զգում ենք, որ առաջվա նման այլևս հնարավոր չէ ապրել: Ամբողջ հասարակության մեջ, նորույթ գիտության ու տեխնիկայի բնագավառը, մեծ տեղաշարժերի անհրաժեշտություն է հասունացել, ինտենսիվորեն քննարկվում են առաջացած խնդիրների լուծման ուղիները:

Կոնֆերանսում ընդգծվեց արտադրությունից մարդու օտարացման հաղթահարման, գիտության ու տեխնիկայի բնագավառի աշխատողների մեջ տիրոջ զգացում առաջացնելու, նրանց ստեղծագործական կարողությունների լրիվ բացահայտման պայմաններ ստեղծելու կարևորությունը արմատական տնտեսական ռեֆորմի իրականացման համար: Նյութական արտադրության բոլոր ճյուղերի փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման, պահանջում է ջանքերի լարում և գործիմացություն, այնպիսի գործողություններ, որոնք վճռականորեն կվերացնեն տնտեսության մեջ վերակառուցողական երևույթների զարգացմանը խոչընդոտող հանգամանքները: Հիմնավորապես առաջ են մղվելու գիտատեխնիկական առաջադիմության ծավալմանը նպաստող գործընթացները, կկիրառվեն խթանիչ միջոցառումներ, որպեսզի առավելություն ստեղծվի արդիականացման ուղին բռնած աշխատավորական, գիտական և գիտահետազոտական կոլեկտիվների համար:

Կոնֆերանսն ամրապնդեց այն համոզմունքը, որ երկրում իրականացվող վերակառուցումն անշրջելի է, պատվիրակների ճնշող մեծամասնությունը, արտահայտելով ժողովրդի կամքը, լի էր վճռականությամբ՝ իրականացնելու կուսակցության առաջադրած խնդիրները: Համաժողովում ընդգծվեց, որ վերակառուցման բախտը, վերջին հաշվով, կախված է աշխատավորական կոլեկտիվների, տնտեսական կադրերի, ամբողջ կուսակցության գործունեությունից: Այսօր արդեն առաջին պլան է մղվում ստեղծարար, կոնստրուկտիվ աշխատանքը:

Լ. Կ.— Ի՞նչն ամենամեծ տպավորություն թողեց Ձեզ վրա կոնֆերանսում:



digitised by A.R.A.R.@

Լ. Կ.— Ես տեսել եմ Ձեր ղեկավարությամբ ստեղծված «Մարշրուտ—1» հաշվիչ համալիրի աշխատանքը: Այն կիրառվում էր ԽՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության մոսկովյան հանգույցում: Մասնագետներն ինձ պատմեցին, որ համալիրը հիշողության մեջ պահում է Մոսկվայից դուրս եկող ավելի քան մեկուկես միլիոն տեղով մոտ երեք հարյուր գնացքների մասին բազմապիսի և բազմակողմանի տեղեկություններ՝ ապահովելով տոմսերի նախնական վաճառքը...

Ա. Ք.— Ավելացնեմ, որ օպերատիվ հիշողության սարքերի միջոցով «Մարշրուտ—1»-ը հիշում է բոլոր գնացքների մեջ գտնվող տեղերից յուրաքանչյուրը: Հատուկ ծրագրավորման համակարգի միջոցով մեկ վայրկյանում կատարվում է 4—5 պատվեր, արագ տեղեկություններ են տրվում օրվա ընթացքում բոլոր ուղղություններով, ցանկացած գնացքով մեկնող ուղևորների, նրանց բաշխման և տոմսերի վերավաճառքից ստացած գումարի մասին: Այսօր, իհարկե, այն կատարելագործված է ԵՍ—1045 մակնիշի մեքենաների միջոցով և ունի զգալիորեն ավելի լայն հնարավորություններ:

Լ. Կ.— Իսկ ես ուզում եմ ավելացնել, որ համալիրն ստեղծող կոլեկտիվն արժանացավ գիտության և տեխնիկայի բնագավառում Հայկական ԽՍՀ պետական Մրցանակի: Յոթանասունականների սկզբներին Ձեզ մոտ մշակվեց ԵՍ—1130 հաշվիչ մեքենան: Դրա ստեղծմանը մասնակցեցին երկրի տարբեր գիտահետազոտական ինստիտուտներ: Արդյունքում՝ ծնվեց նոր էլեկտրոնային հաշվիչ մեքենա, որը, մասնագետների կարծիքով, աննախադեպ էր հայրենական հաշվիչ մեքենաների ընտանիքում, իսկ Դուք դարձաք հանրապետության պետական մրցանակի կրկնակի դափնեկիր: Որո՞նք էին էՀՄ-ի առանձնահատկությունները:

Ա. Ք.— Այդ մեքենան ներառել էր «սերընդակիցների» լավագույն հատկանիշները և հնարավորություն էր տալիս որակական նոր աստիճանի բարձրացնելու հաշվիչ մեքենաների արտադրությունը և կիրառումը: Այն լուծում էր գիտատեխնիկական բարդ խնդիրներ, կատարում տնտեսական ու վիճակագրական հաշվարկներ և լայնորեն օգտագործվեց երկրի հաշվողական կենտրոններում: Համալիրն առաքվել է արտասահման, համընդհանուր ճանաչման արժանացել:

1980-ի կեսերին Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրներ ուղարկվեց մեր ինստիտուտում մշակված նոր՝ ԵՍ—1045 էլեկտրոնային հաշվիչ մեքենան: Շուտով ստեղծվեց ԵՍ—1046-ը: Այն լուծում է բազմատեսակ գիտատեխնիկական, տնտեսական, ինֆորմացիոն և հատուկ խնդիրներ՝ ինչպես առանձին, այնպես էլ ինֆորմացիոն մշակման համակարգերում: ԵՍ—1046-ը, փաստորեն, իր նախորդի՝ ԵՍ—1045-ի հետագա տրամաբանական զարգացման արգասիքն է: Նոր համակարգը առաջին անգամ հնարավորություն ավեց խնդրի լուծման ժամանակ նրա առանձին մասերն իրարից անջատել ու լուծել էլեկտրոնային միջոցների օգնությամբ:

Մեքենայի մաթեմատիկական ապահովությունը թույլ է տալիս, որ առանց իրար խանգարելու այն միաժամանակ օգտագործեն բազմաթիվ մասնագետներ: Ըստ որում, նրանցից յուրաքանչյուրին թվում է, թե իր տրամադրության տակ ունի ամբողջական հաշվիչ մեքենա՝ մուտքի, ելքի, հիշող սարքերով հանդերձ: ԵՍ—1046-ի հեռակա սպասարկման համակարգը կապի գծերի միջոցով այն անմիջապես միացնում է կենտրոնական սպասարկող կայանի հետ, որտեղ որակյալ մասնագետներ են աշխատում, կան մագնիսական սկավառակների վրա գրանցված տեղեկությունների շտեմարաններ: Կենտրոնի անձնակազմը, անկախ մեքենայի հեռավորությունից, կարող է «տեսնել» նրա անսարքությունները ու դրանք տեղում վերացնելու անհրաժեշտ հանձնարարություններ տալ:

Լ. Կ.— Դա, հիրավի, նորույթ էր, որի դերը հաշվիչ տեխնիկայի զարգացման գործում պետք է գնահատվի հավուր պատշաճի: Ես ծանոթ եմ պետական հանձնաժողովի նախագահ, ԽՍՀՄ ԳԱ հաշվողական կենտրոնի դիրեկտոր, ակադեմիկոս Անատոլի Դորոդնիցինի տված գնահատականին: Նա գտնում է, որ «նորաստեղծ մեքենան օժտված է ոչ միայն տեխնիկական և ծրագրային նորույթներով, այլև առաջին անգամ կիրառվել է մեքենայի նախագծման նոր մոտեցում, որը հնարավորություն է տալիս տարբեր տեխնիկական միջոցների խմբային փորձարկումներ կատարել»:

Ա. Ք.— Մեր ստեղծագործական խմբերն ու ստորաբաժանումները, կլնելով մեքենաներ մշակելու փորձից, ձեռնամուխ եղան հաշվողական ամբողջական համակարգերի մշակմանը: Բանն այն է, որ բազմամեքենա և բազմապրոցեսորային համալիրները, կառուցված լինելով ստանդարտ մեքենաներից, կարող են լայնորեն կիրառվել ժողովրդական տնտեսության ամենապատասխանատու տեղամասերում:

Լ. Կ.— Ընկեր Քուչուկյան, ձեռք բերվածը, սակայն, սահման չէ: Ի՞նչ նոր մեքենաշարեր են մշակվում ինստիտուտում:

Ա. Ք.— Մենք այսօր մշակում ենք միասնական համակարգի միջին արտադրողականության նոր մեքենաշարի փորձնական նմուշներ, որոնց բնորոշ է խոշոր ինտեգրալ սխեմաների ակտիվ օգտագործումը, օպերատիվ մեծ հիշողությունը: Դրանք, անկասկած, զգալիորեն գերազանցում են իրենց նախորդների կարողությունները և հատկապես ԵՍ—1046 մակնիշի էՀՄ-ի արագագործությունը: Եթե մեր հույսերն արդարանան, իսկ ես դրան չեմ կասկածում, միավոր գործողության արժեքը 4—5 անգամ կիջնի, կբարձրանա մեքենայի հուսալիությունը: Առանձնահատկություններից մեկն էլ նոր մեքենայի ծավալի զգալի փոքրացումն է: Ես չեմ ուզում ավելի մանրամասն հրապարակել նրա տեխնիկական տվյալներն ու ցուցանիշները, քանի որ դա պետական հանձնաժողովի «մենաշնորհն է»: Կատարելով անհրաժեշտ զուգահեռ ստուգումներ, նա էլ հենց որոշում է տեխնիկական առանձնահատկություններն ու առավելությունները՝ համասեռ մեքենաների համեմատ:

Լ. Կ.— Այսօր շատ է խոսվում էլեկտրոնային հաշվիչ մեքենաների սերնդափոխության մասին: Ասացեք, խնդրեմ, ո՞րն է դրա էությունը:

Ա. Ք.— Հաշվիչ տեխնիկան, ինչպես և տեխնիկայի ցանկացած ասպարեզ, զարգանում է, մի կետի վրա կանգնած չի մնում: Տեխնիկայի կատարելությունը առաջին հերթին պայմանավորված է տվյալ ժամանակաշրջանի տեխնիկական միջոցների՝ էլեկտրոնային տարրերի մակարդակով: Արտադրական ու կոնստրուկտորական լուծումները, մեքենաների կառուցման ճարտարապետական հիմունքներն ու մաթեմատիկական ապահովությունը, հաշվի առնելով նաև գիտության ու ժողովրդական տնտեսության պահանջները, այս կամ այն սերնդի մեքենաների ստեղծման անհրաժեշտություն են առաջացնում: Պատկերավոր ասած՝ յուրաքանչյուր մեքենա իր ժամանակի պահանջների և հնարավորությունների ծնունդն է: Եթե ելնենք մեքենայի էլեկտրոնային տարրերից, ապա մինչև այժմ ստեղծվել են չորս սերնդի մեքենաներ: Առաջին սերնդի էլեկտրոնային լամպերով աշխատող մեքենաների և ներկայիս չորրորդ սերնդի խոշոր ինտեգրալ սխեմաներով աշխատողների միջև եղած տարբերությունն ավելի մեծ է, քան մեր պապենական սայլի և նեպընթաց գնացքի միջև: Ես դեռ չեմ խոսում մեքենաների փորձագիտային համակարգերից և գիտելիքների շտեմարաններից օգտվելու մասին, որոնք հնարավորություն են ընձեռում, որ մարդու գիտելիքները դասակարգվեն ու տարածվեն ժողովրդական տնտեսության տարբեր ասպարեզներում: Դա, ինչ խոսք, էապես ընդլայնում է մարդու իմացության սահմանները, գործունեության բոլոր բնագավառների զարգացման պայմաններ ապահովում: Այդ գործում կարևոր դեր ունի «մարդ-մեքենա» երկխոսությունը, որն այսօր հնարավոր է դառնում գերխոշոր ինտեգրալ տրամաբանական սխեմաների և գերխոշոր հիշողությունների օգտագործման շնորհիվ: Իսկ դարավերջին այդ տեխնիկական միջոցների օգնությամբ արդեն կունենանք մեկ լեզվից մյուսը թարգմանություն կատարող ինքնաշխատ թարգմանիչներ, որոնք կարելի է տեղավորել անգամ գրպանում: Նման համակարգերի հետ մարդու երկխոսությունը պետք է իրագործվի բնական ձևով՝ ձայնի և տեսողության միջոցով: Հսկայական աշխատանք կա անելու: Բայց եթե հենց այսօր կոմպլեքսայնորեն ձեռնամուխ չլինենք այս, հիրավի, հեղափոխական վերափոխումներին, ապա վտանգ կա, որ XXI դարը կարող ենք դիմավորել որպես ոչ առաջատար երկիր: Ուրեմն արդեն այժմ պետք է համապատասխան մասշտաբով ձեռնամուխ լինենք հինգերորդ սերնդի մեքենաների ստեղծմանը, որոնց գիտականորեն հիմնավորված մոտեցումներն արդեն կան և նախագծային աշխատանքներն սկսվել են մի շարք երկրներում (Ճապոնիա, Անգլիա, ԱՄՆ և այլն): Մեքենաների այդ սերնդի ստեղծումը հեղափոխական նշանակություն կունենա հասարակության զարգացման համար, կփոխվի մարդու աշխատանքը, ավելի մեծ տեղաշարժեր կկատարվեն, քան տեղի են ունեցել արդյունաբերական առաջին հեղափոխությունից հետո: Այս վիթխարի առաջընթացն ընկալելու համար լուրջ փոփոխություններ տեղի կունենան նաև սոցիալական ոլորտում: Առանց դրա մենք կարող ենք նմանվել մի մարդու, որին ուզում են ուսուցանել բարձրագույն մաթեմատիկա, այն դեպքում, երբ նա չի տիրապետում անգամ թվաբանության հիմունքներին: Բայց դա առանձին խոսակցության նյութ է:

Լ. Կ.— Ընկեր Քուչուկյան, օգտվելով առիթից, ուզում եմ, այսպես ասած, պահի ազդեցության ներքո առաջացած մի հարց տալ: Ինչպես գիտեք, այժմ միջնակարգ հանրակրթական դպրոցներում, ՊՏՈՒ-ներում և որոշ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում մտցված են կոմպյուտերային ուսուցման ժամեր: Ձեր կարծիքն այդ մասին:

Ա. Ք.— Հաշվիչ տեխնիկայի օգտագործման հիմունքների յուրացումը հույժ արդիական է և կարևոր փուլ ինֆորմատիկայի «բարիքներից» ավելի լայնորեն օգտվելու ճանապարհին: Սակայն, անկեղծորեն խոստովանենք, որ այդ հարցում զգալիորեն հետ ենք մնում Արևմուտքի շատ երկրներից: Մեզանում դեռևս շատ քիչ են այն դպրոցները, որոնք հագեցված են համակարգիչներով: Դրա հետևանքով սովորողները սահմանափակ հնարավորություններ ունեն գործնական փորձ և հմտություններ ձեռք բերելու: Պատճառները շատ են՝ մեր սուղ հնարավորություններն ու նյութական աղքատիկ բազան, եղած համակարգիչների ցածր հուսալիությունը և ուսումնական ծրագրերի պակասը, նաև՝ դպրոցների որոշ ղեկավարների ան-





digitised by A.R.A.R.@

յուրջ մոտեցումը: Երբ սրանց ավելացնենք նաև այն, որ ուսումնական հաստատությունները մասնագետ դասատուներով ապահովված չեն, ապա պատկերն ավելի պարզ կդառնա: Մինչդեռ դպրոցում համակարգիչը պետք է դառնա այնպիսի առաջնային պիտույք, ինչպես գրիչն ու տետրը:

Վերջերս Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանի շրջկենտրոնի միջնակարգ դպրոցում մեր ուժերով կահավորեցինք համակարգիչների դասարան՝ անհրաժեշտ ծրագրերով, ցուցադրական միջոցներով, այլ հարմարություններով: Վստահ եմ, որ այն կնպաստի Արցախի պատանիների ու աղջիկների տեխնիկական ուսուցման մակարդակի բարձրացմանը:

Լ. Կ.— Վերադառնանք մեր հիմնական թեմային: Հայտնի ճշմարտություն է, որ առանց առաջավոր փորձի փոխանակման, առանց մտքերի ու կարծիքների բախման չի կարող լինել առաջընթաց: Տարբեր երկրների հետ համագործակցելու ի՞նչ հեռանկարներ կան ձեր բնագավառում:

Ա. Ք.— Միասնական համակարգի մեքենաշարի ստեղծման աշխատանքում մենք սերտորեն համագործակցում ենք ոչ միայն երկրի գիտահետազոտական կազմակերպությունների, այլև ՏՓԽ-ի անդամ երկրների համասեռ հիմնարկների հետ: Մեքենաների միասնական համակարգն ստեղծվում է ընդհանուր ծրագրով, և յուրաքանչյուր շարք ունենում է իր ընդհանուր տեխնիկական առաջադրանքը՝ համաձայնեցված բոլոր շահագրգռված երկրների հետ: Մաթեմատիկական ապահովությունը և տեխնիկական միջոցները ունենում են իրենց մասնավոր տեխնիկական առաջադրանքները, որոնք նույնպես համաձայնեցվում են: Դա հնարավորություն է տալիս տարբեր երկրների միջև, առանց սահմանափակումների, մեքենաների մասերի և տեխնիկական միջոցների ազատ փոխանակում կատարել: Միասնական համակարգի խոշորագույն առավելությունը հենց այն է, որ թույլ է տալիս նույն նպատակի համար միավորել տարբեր երկրների ջանքերը: Երբ նկատի ունենանք, որ այդ համակարգը համատեղելի է նաև աշխարհում լայնորեն տարածված, համընդհանուր հանաչման արժանացած մեքենաների հետ, ապա մասնագետների միջոցով կատարվող համադրման աշխատանքները կազմում են միջազգային համագործակցության սկզբունքը: Այդ ուղղությամբ աշխատանքի մեր կուտակած փորձը դրական արդյունք է տալիս, նպաստում մեր ինստիտուտում մշակված մեքենաների տարածմանն արտասահմանում:

Լ. Կ.— Դուք շարադրեցիք համագործակցության սկզբունքները: Խնդրում եմ, մեր երկրում և նրա սահմաններից դուրս, համագործակցման օրինակներ բերել:

Ա. Ք.— Առանձնապես հաջող է ընթանում մեր համատեղ աշխատանքը Մինսկի հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի, Մոսկվայի էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի գիտահետազոտական կենտրոնի, ինչպես նաև մի շարք այլ ձեռնարկությունների հետ: Նրանց հանձնարարված է ապահովել ավելի քան հարյուր տեսակի արտաքին հիշող սարքերի, էլքի ու մուտքի հարմարանքների մշակումն ու արտադրությունը: Մեր ավանդական համագործակցության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում Կազանի հաշվիչ մեքենաների գործարանի հետ ունեցած ստեղծագործական կապերը: Ի դեպ, Կազանի գործարանից Հենրի Կրենզելը, որն իմ՝ որպես գլխավոր կոնստրուկտորի, արտադրության մեջ մեքենաների ներդրման գծով տեղակալն է, 1988 թվականին արժանացավ Հայկական ԽՍՀ պետական մրցանակի: Մենք պետք է շարունակենք և ընդլայնենք կապերն այլ ինստիտուտների հաշվողական կենտրոնների, հատկապես սպառող կազմակերպությունների հետ՝ առանց միջանկյալ բյուրոկրատական-վարչարարական օղակների: Ի դեպ, ինչպես Կրենզելը, այնպես էլ մյուս դափնեկիրները, իրենց դրամական պարգևատրումների կեսը նվիրեցին Հայաստանում երկրաշարժից տուժածներին:

Համադրման ծրագրի շրջանակներում համագործակցում ենք Բուլղարիայի և Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի և այլ երկրների հետ: Հատկապես արգասաբեր է մեր համագործակցությունը Բուլղարիայի գործընկերների հետ: Այստեղ արտադրվում են մեր ինստիտուտում մշակված հաշվիչ մեքենաների համար սնման աղբյուրներ:

Լ. Կ.— Դուք պարգևատրվել եք Լեհաստանի կառավարության «Վաստակների համար» առաջին կարգի շքանշանով: Առի՞թը:

Ա. Ք.— Դա ևս մեր փոխադարձ համագործակցության արգասիքն է: Միասնական համակարգի ԵՍ—1045 մակնիշի ԷՀՄ-ն նախագծելիս երկար ժամանակ համագործակցում էինք Վրոցլավի «էլվրո» գործարանի նախագծողների և գիտաշխատողների հետ· Այդ ընթացքում տեղի ունեցան համատեղ քննարկումներ, մշակվեցին խորհրդային և լեհական տարբերակների հիմնական տեխնիկական լուծումները: Համատեղ երկկողմանի աշխատանքային խմբերը մեզ մոտ և Լեհաստանում փորձնական նմուշների առանձին սարքերի ներդրման փորձարկումներ կատարեցին: Տեխնիկական գաղափարների, ինչպես նաև էլեկտրոնային տարրերի՝ կոնստրուկտորական նախագծումների փոխադարձ ապահովումը մեծապես նպաստեց միասնական համակարգի միջին արագագործության հաշվիչ մեքենայի զարգացմանն ու կատարելագործմանը:



Լ. Կ.— Մեր զրույցը ավարտին է մոտենում: Վերջում մի այսպիսի հարց. Դուք ինչպե՞ս եք պատկերացնում էլեկտրոնային հաշվիչ մեքենաները հաջորդ հազարամյակի շեմին:

Ա. Ք.— Արդեն ասացի հինգերորդ սերնդի մեքենաների կարևորության ու նրանց հնարավորությունների մասին: Ես այսօր չեմ պատկերացնում գործունեության որևէ բնագավառ, ուր հնարավոր չլիներ լայնորեն ներդնել հաշվիչ մեքենաներն ու հաշվողական համալիրները: Մենք ականատես ենք լինում, թե ինչպես առանձին մեքենաներից աստիճանաբար անցնում ենք մեքենաներից կազմված հաշվողական ցանցերի, որոնք դուրս են գալիս առանձին երկրների սահմաններից և գոտևորում ամբողջ մոլորակը: Սա հնարավորություն է տալիս ավելի լայնորեն օգտվել հաշվիչ մեքենաներից՝ անկախ նրանց գտնվելու տեղից:

Այսօր քաղաքակիրթ աշխարհն ապրում է գիտատեխնիկական հեղափոխության միանգամայն նոր, յուրօրինակ փուլ, որն ունի սկզբունքային ու համընդհանուր նշանակություն: Սակայն, ինչպես գործունեության այլ ոլորտներում, այստեղ ես խիզախում և նվիրում է պետք, որոնք իսկական ստեղծագործական աշխատանքում են ծնվում:

Լ. Կ.— Տեխնիկական մտավորականության ուսերին ծանր ու պատասխանատու բեռ է դրված: Նա վերակառուցման առաջնագծում պետք է լինի...

Ա. Ք.— Անպայման: Տեխնիկական առաջընթացի գաղափարները պետք է անարգել թափանցեն անմիջականորեն տեխնիկա արտադրողների շրջանները, մարմնավորվեն կյանքում: Տնտեսական առաջընթացն անհնար է պատկերացնել առանց հաշվողական տեխնիկայի, որովհետև վերակառուցումը պետք է հիմնվի ստույգ և հավաստի ինֆորմացիայի վրա: Յուրաքանչյուր սխալ ու բացթողում, կիսաճշմարտություն ու վրիպում աղետալի հետևանքներ կարող են ունենալ: Վերակառուցման ծրագիրը լիովին համապատասխանում է տեխնիկական մտավորականության իղձերին և ակնկալություններին: Գնալով կբացահայտվեն նրա կարողություններն ու ունակությունները: Կարելի է ասել, որ ինֆորմատիկան և նրա հիմքը՝ հաշվողական տեխնիկան, վերակառուցման հիմնաքարերից են:

digitised by A.R.A.R.@

Կուսակցական աշխատանքի

պրակտիկա

# ՆՈՐ ՊԱՅՄԱՆՆԵՐ, ՆՈՐ ԳՈՐԾԵԼԱԿԵՐՊ

Կ. ՄԿՐՏՉՅԱՆ

Մի ՔԱՆԻ ԱՄԻՍ Է, ինչ ընտրվել եմ կուսշրջկոմի առաջին քարտուղար: Սակայն շրջխորհրդի գործկոմի նախագահ և դրանից էլ առաջ Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար եղած տարիների աշխատանքային փորձն ինձ հնարավորություն է ընձեռում զուգահեռներ անցկացնել լճացման և վերակառուցման ժամանակաշրջանների միջև, ամբողջությամբ պատկերացնել մեր հասարակության կյանքի համակողմանի դեմոկրատացման, երկրի քաղաքական սիստեմի արմատական ռեֆորմի պայմաններում շրջկոմի առաջին քարտուղարի աշխատանքի առանձնակի կարևորությունն ու դժվարությունները: Եվ եթե կուսակցության առաջադրած խնդիրները համադրելու լինենք այն աշխատանքի հետ, որ իրականացվում է մեր շրջանային կուսկազմակերպությունում, ապա պետք է ասել, որ մեզ մոտ արվել են միայն առաջին քայլերը՝ շրջկոմի, նրա բյուրոյի և սկզբնական կուսկազմակերպությունների ոճն ու մեթոդներն արմատապես փոխելու, ղեկավարման քաղաքական մեթոդներին տիրապետելու ճանապարհին:

Այժմ, երբ հրապարակի վրա են համամիութենական XIX կուսկոնֆերանսի նյութերը, որոնցում նախատեսված է մեր կյանքի բոլոր ոլորտների վերակառուցման մասշտաբային ծրագիրը, կուսակցական աշխատանքի վերակառուցման պրոբլեմը դրվում է առանձնահատուկ սրությամբ: Գաղտնիք չէ, որ կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ մինչև այժմ էլ կենսունակ է տարիներով ձևավորված սովորույթի ուժը՝ գործել «վերևից ներքև» ոսկրացած սխեմայով, որի դեպքում ներքին օղակներն սկսել են շարժվել միայն ու միայն վերադասի հրամաններով ու ցուցումներով: Եվ անցած տարիների աշխատանքի մեր դիտարկումները ցույց են տալիս, որ այնքան էլ հեշտ չէ սկզբունքային քայլ անել շաբլոնից դեպի ստեղծագործություն, ցուցումներով գործելուց դեպի նախաձեռնություն, որոշումների ընդունման ինքնուրույնություն: Որակապես նոր պայմաններում նորովի գործելու դժվարություններն զգացվում են ամեն քայլափոխում, որի հետևանքով մինչև հիմա չի հաջողվել ազգաբնակչության լայն խավերին ամբողջությամբ ակտիվորեն ընդգրկել վերակառուցման մեջ: Դրա պատճառները շատ խորն են: Տարիներ ի վեր մարդուն ասվել է մի բան, իսկ նա տեսել է ուրիշ բան, նրան հավատացրել են, որ մեր երկրում ամեն ինչ արվում է հանուն մարդու բարօրության, իսկ իրականում տնտեսական քաղաքականության մեջ իշխել է մնացորդային վերաբերմունքը սոցիալական ոլորտի հարցերի լուծման նկատմամբ, աշխատավորությանը կոչ է արվել դրսևորել հասարակական-քաղաքական ակտիվություն, մասնակցել կոլեկտիվների գործերի կառավարմանը, մինչդեռ ընդունվել են այնպիսի որոշումներ, որոնցում բոլորովին հաշվի չի առնվել նրանց կարծիքը:

Եվ եթե այսօր լճացման ժամանակաշրջանից մնացած այս երևույթներին չհակադրենք կուսակցական աշխատանքի նոր մոտեցումներ, եթե մեր գործունեությունը

ՄԿՐՏՉՅԱՆ ԿԱՐԵՆ ՍԱՄՍՈՆԻ — ՀԿԿ Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար:



չհագեցնենք որակապես նոր բովանդակությամբ, այն դեմքով չշրջենք դեպի մարդը, լոզունգների լեզվից չանցնենք պրակտիկ գործերի, ապա սպասվելիք արդյունքը չենք կարող ստանալ: Կոմունիստների, աշխատավորների, մտավորականության ներկայացուցիչների հետ ունեցած հանդիպումները ցույց են տալիս, որ հիմա դժվար է մատնանշել որևէ կոլեկտիվ, որևէ կուսկազմակերպություն, որտեղ համաձայն չլինեն այս մտայնությանը: Բայց համաձայնել դրան մի բան է, իսկ գործել այնպես, ինչպես պահանջում է ժամանակը՝ այլ բան:

Կուսակցության համամիութենական XIX կոնֆերանսը բանաձև ընդունեց երկրի քաղաքական ռեֆորմի, կուսակցական, խորհրդային, տնտեսական մարմինների ֆունկցիաների սահմանազատման մասին այն հաշվով, որպեսզի այդ մարմիններից ամեն մեկը զբաղվի իր գործով: Չէ՞ որ երբ կուսակցությունը պատասխանատու է ամեն ինչի համար, անհնար է խուսափել մանրախնդիր խնամակալությունից ու առօրյա հոգսերից:

Ասվածից, իհարկե, չի բխում, որ չմիջամտել խորհրդային և տնտեսական մարմինների ֆունկցիաներին, նշանակում է չզբաղվել տնտեսական և սոցիալական հարցերով: Ամենևին ո՛չ: Մենք գտնում ենք, որ կուսակցական մարմինը պետք է պահպանի իր ազդեցությունը տնտեսական և սոցիալական ոլորտների գործերի վիճակի վրա, տեսնի, իմանա, վերլուծի ընթացող պրոցեսները և նրանց վրա ներգործի քաղաքական որոշումների, տնտեսության մեջ աշխատող կոմունիստների միջոցով:

Այդ խնդրի լուծման համար, մեր կարծիքով, պահանջվում է ամենից առաջ արմատապես վերակառուցել կադրերի հետ տարվող աշխատանքի ավանդական ձևերն ու մեթոդները: Հենց այդպիսի ոգով անցան մեր շրջանային կուսկազմակերպության 44-րդ կոնֆերանսը և նրան նախորդած հաշվետու-ընտրական կամպանիան սկզբնական կուսկազմակերպություններում: Կոնֆերանսում շրջկոմի կազմի ավելի քան 75 տոկոսն ընտրվել են կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում առաջադրված թեկնածուներից: Դա հանգեցրեց նրան, որ 60 տոկոսով թարմացավ շրջկոմի անդամների, 84 տոկոսով՝ անդամության թեկնածուների կազմը, իսկ շրջանային կուսկազմակերպության վերստուգիչ հանձնաժողովինը նորացավ ամբողջությամբ: Նոր ընտրված մարդկանց պրակտիկ գործերով ստուգելու համար այնքան էլ շատ ժամանակ չի անցել, սակայն այսօր արդեն կարելի է ասել, որ շրջկոմի կազմը դարձել է առավել գործարար, նրանում ավելի շատ են վերակառուցման իսկական ջատագովները:

Կոնֆերանսում մենք լուծարքի ենթարկեցինք շրջկոմի արդյունաբերության և գյուղատնտեսության բաժինները: Եվ ապարատի նոր կառուցվածքն այժմ, թվում է, ավելի է համապատասխանում արդի պահանջներին: Նրա աշխատակարգը վերանայվել է այն հաշվով, որպեսզի ավելի շատ ժամանակ հատկացվի անմիջականորեն սկզբնական կուսկազմակերպություններում իրականացվող աշխատանքի համար: Եվ դա հասկանալի է: Չէ՞ որ վերակառուցման բոլոր լծակները, ըստ էության, զուգամիտվում են սկզբնական կազմակերպություններում: Նշանակալիորեն կրճատվել են ապարատի ճյուղային կառուցվածքին հատուկ քաղաքական և տնտեսական ֆունկցիաների կրկնորդության նախկինում անխուսափելի դրսևորումները: Պակասել է այն միջոցառումների թիվը, որոնց անցկացումը կապված էր կուսակցական-տնտեսական ակտիվին շրջկոմ հրավիրելու հետ: Աճում են շրջկոմի հրահանգչի ինքնուրույնությունն ու անձնական պատասխանատվությունը կուսկազմակերպություններում տիրող իրավիճակի համար:

Մենք անչափ կարևորում ենք ըստ բնակչության վայրի տարվող աշխատանքը: Սակայն գաղտնիք չէ, որ այն մեզանում տարիներ ի վեր բարձիթողի է եղել: Դրա ապացույցն են Լեռնային Ղարաբաղի շուրջը տեղի ունեցած հայտնի իրադարձությունները, որոնք ցայտուն կերպով բացահայտեցին մեր առանձին կուսակցական, խորհրդային և հատկապես գաղափարախոսական ճակատի աշխատողների՝ ազգաբնակչության լայն շերտերի հետ անկեղծ, սրտաբաց երկխոսության մեջ մտնելու անընդունակությունը: Եվ թեպետ ձեռնարկված միջոցների շնորհիվ շրջանում ազգամիջյան հողի վրա ընդհարումներ չեղան, սակայն այդ իրադարձությունների դառը դասերը շատ բան են հուշում և հատկապես՝ ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի ուժեղացման անհրաժեշտության մասին: Այդ նպատակով մենք նպատակահարմար գտանք շրջանի ամբողջ տարածքը բաշխել շրջկոմի հրահանգիչների միջև: Նրանք սկսել են պարբերաբար հանդիպումներ ունենալ բնակչության հետ: Այդ հանդիպումների ընթացքում հաղորդում է տրվում շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարների մասին, առաջ են քաշվում մարդկանց հուզող պրոբ-



digitised by A.R.A.R.@

խորհրդտնտեսություններ, Գեղանուշի կոլտնտեսություն և այլն): Շրջկոմի ապարատի պատասխանատու աշխատողների ռեզերվի համար իրենց թեկնածությունները ներկայացրին շուրջ 20 սկզբնական կուսկազմակերպություններ: Իսկ առանձին կոլեկտիվներ, օրինակ, Ղափանի սառնարանային տնտեսությունը և բանվորական մատակարարման բաժինը, իրենց ղեկավարների ռեզերվներ ընտրեցին կուսշրջկոմի կոնսուլտանտ Ռ. Գրիգորյանին և հրահանգիչ Հ. Համբարձումյանին: Իրենց թեկնածությունները տարբեր պաշտոնների ռեզերվում նախատեսելու համար նպատակահարմար գտան շրջկոմ դիմելու Զանգեզուրի էլեկտրացանցի դիսպետչեր Հ. Պապիկյանը, ավտոնորոգման գործարանի պլանային-տնտեսական բաժնի վարիչ Գ. Պետրոսյանը, Հունան Ավետիսյանի անվան խորհտնտեսության գլխավոր գյուղատնտես Վ. Ավանեսյանը և ուրիշներ:

Ցավոք, սակայն, այդպես չեղավ ամենուրեք: Մեր առանձին հիմնարկ-ձեռնարկություններում եղան ձևական մոտեցումների, անհարկի վեհերոտության ու տեղայնության դրսևորումներ: Ահա թե ինչ են գրում ՀԿԿ շրջկոմին հասցեագրված իրենց նամակում Ղափանի № 2 երաժշտական դպրոցի մանկավարժները. «Փետրվարի 17-ին Ղափանի քաղաքային կուլտուրայի բաժնում կայացավ բաժնի վարիչի ռեզերվի ընտրությանը նվիրված ժողով: Մասնակցում էին 66 ընկերներ: Բաժնի վարիչը ժողովի նախագահի լիազորությունները ստանձնեց ինքնակամ: Մեր կոլեկտիվից մասնակցում էր 22 մարդ, քանի որ նախապես ներկայացուցչական նորմա չէր սահմանված: Առաջադրվեց երեք թեկնածու, որոնք բոլորն էլ ընտրվեցին ձայների մեծամասնությամբ: Հետո մեզ հայտնի դարձավ, որ ժողովը չեղյալ է հայտարարված այն պատճառով, որ ժողովի նախագահ չէր ընտրված, այն չէր արձանագրվում և բացի այդ, ինչպես երևում է, բաժնի վարիչին դուր չեն եկել ընտրված թեկնածուները: Բայց մի՞թե դրանում մեղավոր են ժողովի մասնակիցները և մի՞թե կարելի է խաղալ մարդկանց զգացմունքների հետ»:

Իրոք, մեր որոշ ղեկավարների թվաց, թե ռեզերվի ընտրությունները զբաղեցրած պաշտոնից իրենց տեղաշարժելու նախանշաններ են: Իսկ առանձին կոլեկտիվներում մասնագիտական և կազմակերպչական աշխատանքի փորձ և ունակություններ ունեցող մարդիկ խուսափեցին իրենց թեկնածություններն առաջադրելուց, երևի մտածելով, որ դրանով «կփչացնեն» իրենց հարաբերությունները ղեկավարների հետ:

Ընտրությունների նկատմամբ ձևական մոտեցումը այլ կերպ դրսևորվեց Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատում, Քաջարանի քաղխորհրդում, հանքաշինական մասնագիտացված վարչությունում և այլ ձեռնարկություններում, որոնցում մեկ պաշտոնի ռեզերվի համար առաջադրված մի քանի թեկնածություններ անցել են... միաձայն: Ղափանի սարքաշինական գործարանի կոլեկտիվի կոնֆերանսին, օրինակ, մասնակից չեն դարձվել Քաջարանի մասնաճյուղի կոլեկտիվի ներկայացուցիչները, իսկ Ղափանի բուժմիավորումից ավտովարորդ Ս. Գևորգյանը գրում է, թե ճնշում է գործադրվել պատգամավորների վրա, որ կոնֆերանսի համար սահմանված ներկայացուցչական նորմաները չեն պահպանվել, օրինակ, կենտրոնական պոլիկլինիկայից ավելի շատ մարդիկ են եղել դահլիճում, քան պետք է լինեին և այլն, և այլն: Մենք, իհարկե, նշված և այլ կոլեկտիվներում անցկացրինք նոր ընտրություններ, սակայն այս ամենը չի՞ վկայում նաև, որ դժվար, շատ դժվար ենք ազատվում կարևոր գործին հին մոտեցումների՝ տարիներով մեր ուսերին ծանրացած բեռից:

Բայց կա նաև հարցի մյուս կողմը: Չէ՞ որ հեռանկարային մարդ գտնելը, ուսումնասիրելն ու ռեզերվի մեջ մտցնելը դեռ գործի կեսն է: Ակտիվորեն աշխատել նրանց հետ, դաստիարակել նրանց, կոնկրետ գործերով ստուգել նրանց գործնական ու քաղաքական հատկանիշները— ահա մեր հետագա աշխատանքի կարևոր ուղղությունը: Չէ՞ որ, ինչպես ասում են, պատրաստի ղեկավարներ, որոնց վրա դրված լինի «պիտանի է աշխատելու վերակառուցման պայմաններում» դրոշմը մեզ ոչ ոք չի տալու: Նրանց պետք է աճեցնել, և ոչ ոք մեզնից բացի ու մեր փոխարեն դա չի անելու:

Վերակառուցման կարևոր պայմաններից մեկը կուսակցական-քաղաքական աշխատանքի ամբողջ զինանոցը առաջնահերթ նշանակության խնդիրների լուծմանը նպատակամղելն է: Շրջանային կոմիտեի, նրա բյուրոյի, ապարատի, սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի գլխավոր ուղղությունները սահմանված են մեր վերջին կուսկոնֆերանսի ընդունած որոշման մեջ: Այդ ուղղությունները կապված են տնտեսական մեխանիզմի և կառավարման կատարելագործման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, տնտհաշվարկի և ինքնաֆինանսա-



վորման համակողմանի ներդրման, ռեսուրսների և ռեզերվների լրիվ օգտագործման, կատարողական կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի համար կադրերի, կոմունիստների պատասխանատվության բարձրացման, սոցիալական ուժեղ քաղաքականության իրականացման, մեզանում տարբեր բնույթի բացասական երևույթների հաղթահարման հարցերի հետ:

Այդ պրոբլեմները լուծելու համար հարկավոր է, որ անհապաղ վճռական գործողությունների դիմեն թե՛ շրջկոմի ու նրա բյուրոյի յուրաքանչյուր անդամ, թե՛ կուսկազմակերպություններն ու խորհրդային և տնտեսական մարմինները: Հատկապես գործողություններ: Այդպիսին է կուսակցության վերակառուցման կուրսի պահանջը: Չի կարելի հանդուրժել, որ պրակտիկ գործերը խորտակվեն նախանշված քայլերի ճշտության մասին վերացական ու հայեցողական դատողությունների հորձանուտում: Առավել անթույլատրելի է սպասել ցուցումների ու հրահանգների այնտեղ, որտեղ ամեն ինչ պարզ է ու հստակ: Այսպիսի ոգով անցավ շրջկոմի բյուրոյի վերջերս կայացած նիստը, որտեղ քննարկվում էին շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսում արված քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրականացման ընթացքի ու այդ գործում սպասարկման ոլորտի ղեկավար կադրերի պատասխանատվության բարձրացման հարցերը: Կոնֆերանսից անմիջապես հետո մենք հսկողություն սահմանեցինք առևտրի, հասարակական տրանսպորտի, կապի, բնակարանային-կոմունալ և կենցաղային ծառայությունների կուսկազմակերպությունների ու ղեկավարների գործունեության նկատմամբ: Եվ եթե կարճ ժամանակամիջոցում հնարավոր եղավ որոշակի դրական տեղաշարժեր ապահովել քաղառում, շրջսպառկոոպընկերությունում, բանվորական մատակարարման բաժիններում, «Ղափանավտոտրանս» արտադրամիավորումում, կապի շրջանային հանգույցում բնակչության սպասարկման նպատակով տարվող աշխատանքում, ապա չի կարելի ասել, որ ամբողջությամբ հաղթահարվել են քաղաքի մաքրության, աղբահեռացման, սանիտարական վիճակի բարելավման, տաք և սառը ջրամատակարարման գործում եղած թերություններն ու բացթողումները, որոնց մասին սուր խոսակցություն ծավալվեց կոնֆերանսում:

Եվ ահա հարցը նախապատրաստելու համար շրջկոմի կազմից առանձնացրինք իրավասու հանձնաժողովներ: Նրանց ուսումնասիրությունները ցույց տվին, որ կոմունալ ձեռնարկությունների և բարեկարգման կոմբինատի, միջշրջանային ջրմուղկոյուղու, ջերմամատակարարման և բնակտնտեսության արտադրական վարչությունների կուսկազմակերպությունները գործուն միջոցներ չեն ձեռնարկում կադրերի պակասը լրացնելու, աշխատանքի կազմակերպման ու խթանման նոր ձևերն արմատավորելու և տարիներով կուտակված ուրիշ մեծ ու փոքր հարցերը լուծելու գործում ղեկավար կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու համար: Բյուրոն նշեց, որ այդ ձեռնարկությունների աշխատանքի վերակառուցման նկատմամբ թույլ պահանջկոտություն է ցուցաբերում Ղափանի քաղխորհրդի գործկոմը: Այստեղ պրակտիկա չի դարձել տնտեսական ղեկավարների հաշվետվությունների քննարկումը խորհրդի նստաշրջաններում ու գործկոմի նիստերում, ակտիվացման կարիք է զգում սպասարկման ոլորտի նկատմամբ դեպուտատական հսկողությունը: Իսկ չէ՞ որ սրանք այնպիսի հարցեր են, որոնց լուծման համար հարկ չկար սպասել ցուցումների: Բյուրոն կուսակցական պատասխանատվության ենթարկեց ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներին՝ կոնֆերանսում արված քննադատական դիտողություններից անհրաժեշտ հետևություններ չանելու համար, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց կազմակերպական-քաղաքական աշխատանքի ձևերի ու մեթոդների վերակառուցման անհրաժեշտության վրա, կուսբյուրոներից պահանջեց մշակել և իրականացնել սպասարկման գործի արմատական բարելավմանն ուղղված գործնական միջոցառումներ, սահմանեց ընդունված որոշման կատարման որոշակի ժամկետներ: Անհրաժեշտ համարվեց լայնորեն կիրառել սպասարկման ոլորտի ղեկավարների հաշվետվությունների քննարկումը ոչ միայն սկզբնական կուսկազմակերպություններում և խորհրդում, այլև շրջանի ազգաբնակչության առջև: Մենք այդպիսի հաշվետվությունների անցկացման մասին նախօրոք մարդկանց լայն շրջաններին իրազեկ ենք պահում տեղական մամուլի և ռադիոյի միջոցով, ղեկավարների աշխատանքը գնահատելիս հաշվի առնում հասարակության կարծիքը:

Փորձը ցույց է տալիս, որ համակողմանիորեն նախապատրաստված հաշվետվությունը, իրոք, կոմունիստի ակտիվության ու պատասխանատվության բարձրաց-



digitised by A.R.A.R.@

ման անփոխարինելի միջոց է և այն խելացիորեն կազմակերպելու դեպքում հնարավոր չէ չհասնել շոշափելի արդյունքների: Այդ մասին են վկայում վերջին երկու-երեք տարիներին շրջկոմի թե՛ պլենումում, թե՛ բյուրոյում և թե սկզբնական կուսկազմակերպություններում քննարկված հաշվետվությունների բազմաթիվ օրինակները:

Սակայն հաշվետվությունների քննարկման պրակտիկայի մեր դիտարկումները տեղիք են տալիս նաև այլ մտորումների: Բանն այն է, որ մեր առանձին կուսկազմակերպությունների քարտուղարներ մինչև այժմ էլ ճիշտ չեն ըմբռնում կուսակցական ներգործության այդ արդյունավետ մեթոդի էությունը և նրանց թվում է, թե դա կուսակցության մեջ սկսված հերթական կամպանիա է: Եվ ահա ստացվել է այնպես, որ նրանք սկսել են հաշվետվություններ քննարկել սոսկ շրջկոմին հաշվետվություն տալու համար: Եվ փոխանակ նախ և առաջ լսելու այն կոմունիստների հարցերը, որոնք անհոգություն են ցուցաբերում իրենց ծառայողական ու հասարակական պարտականությունների կատարման գործում և փոխանակ սկզբունքային գնահատական տալու նրանց գործելակերպին, իսկ անհրաժեշտության դեպքում՝ ենթարկելու խիստ պատասխանատվության, մեր քարտուղարները գործը սկսեցին բարեխիղճ կոմունիստներից՝ հաշվետվությունների էությունը երբեմն հանգեցնելով ճոռոմ ճառերի, չափազանցված գովաբանությունների, իսկ ղեկավարների հաշվետվությունների քննարկման ժամանակ երբեմն նաև՝ անզուսպ... ներբողների:

Իհարկե, լավ օրինակը նույնպես ունի իր դաստիարակիչ նշանակությունը, սակայն հատկապես մեր ղեկավարներին ուզում ենք հիշեցնել ժողովրդական իմաստությունը. «Բերք տվող ծառի ճյուղերը խոնարհ կլինեն»: Հաշվետվությունների քննարկման ժամանակ անկեղծ և գործին օգնող խոսակցության մթնոլորտը ամենից առաջ պետք է ստեղծեն մեր ղեկավարները: Չէ՞ որ կոմունիստի գործունեության գնահատման համար չկան այլ չափանիշներ, քան ԽՄԿԿ կանոնադրության պահանջներն են: Միայն ու միայն այսպիսի մոտեցումը հնարավորություն կընձեռի շրջանային կուսկազմակերպությանը՝ առավել արդյունավետ, ղեկավարման քաղաքական մեթոդներով ներազդել արտադրական, սոցիալական և դաստիարակչական խնդիրների լուծման վրա, նպաստել կարգապահության և կարգուկանոնի ամրապնդմանը, հսկողության տակ վերցնել յուրաքանչյուր կոմունիստի գործունեությունը:

Խոսելով դեպի աշխատանքի քաղաքական մեթոդները շրջադարձ կատարելու անհրաժեշտության մասին՝ մենք նկատի ունենք նաև, որ այստեղ չկան պատրաստի դեղատոմսեր: Ահա թե ինչու այսօր առաջնահերթ խնդիր է խորապես ուսումնասիրել այն ամբողջ նորը, որ երկրի կուսկազմակերպությունների կյանքում կուտակվել է ԽՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո, որպեսզի այդ փորձը վերածվի աշխատանքի կազմակերպական-քաղաքական միջոցների արդյունավետ համակարգի և շերտավորված կերպով ներդրվի կուսակցական ղեկավարման բոլոր մակարդակներում՝ սկսած կուսխմբից մինչև կուսակցության շրջանային կոմիտե:

---

# ՊԱՀՊԱՆԵԼ ՄԱՐԴՈՒ ՀԱՎԱՏԸ

Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՆՑԱԾ ՏԱՐՎԱ սեպտեմբերյան պլենումը հանգամանորեն ներկայացրեց հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման, հոգևոր կյանքի ճշմարիտ նկարագիրը լճացման երկար ու ձիգ տարիներին և որոշակի ուղիներ նշեց դրանք հաղթահարելու համար: Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հարությունյանի զեկուցման մեջ արված քննադատական դիտողությունները վերաբերում էին նաև Հրազդանի շրջանին: ՀԿԿ Կենտկոմը դիմեց բոլոր քաղաքացիներին, բոլոր նրանց, ովքեր մտահոգված են հայ ժողովրդի, երկրի ճակատագրով՝ կոչ անելով համախմբել ջանքերը, միավորվել լուծելու կենսականորեն կարևոր այն խնդիրները, որոնք ամենայն սրությամբ ծառացած են հանրապետության առջև: Այս կոչն ավելի համախմբեց Հրազդանի շրջանի աշխատավորությանն ու ազնիվ մարդկանց: Նրանք, գնահատելով սոցիալ-քաղաքական վերափոխումների կարևորությունը, դեմոկրատիայի ու հրապարակայնության արմատավորման, ծավալման հրատապությունը, պատրաստ են հօգուտ վերակառուցման գործադրել ամենայն ջանքեր:

Հրազդանի շրջանային կուսակցական 42-րդ կոնֆերանսի նախապատրաստման և անցկացման քաղաքական լարված մթնոլորտը վկայությունն էր այն բանի, որ մեզանում մշակվել է կայուն վերաբերմունք վերակառուցման նկատմամբ, հետևաբար, նաև՝ անհրաժեշտ աշխարհայացք: Շրջանի կոմունիստներն ու աշխատավորները մեծ հույսեր էին կապում այս կոնֆերանսի հետ՝ քաջ գիտակցելով, որ այն վճռորոշ դեր կունենա վերակառուցման ընթացքի համար: Այդ իսկ նպատակով իսկական դեմոկրատիայի պայմաններում անցկացվեցին հաշվետու-ընտրական կուսժողովները: Կուսկազմակերպությունների քարտուղարներ և կոնֆերանսի պատգամավորներ առաջադրվեցին ու ընտրվեցին հիմնականում նրանք, ովքեր կոլեկտիվում հեղինակություն են վայելում, աչքի են ընկնում իրենց սկզբունքայնությամբ, գործնական ու բարոյական դրական հատկանիշներով: Զգալիորեն նորոգվել է քարտուղարների կազմը: Կոմունիստները հավատում են, որ կուսակցական նոր ղեկավարները կարող են վերակառուցել կազմակերպության աշխատանքը՝ «դրա կենտրոնում դնելով մարդուն՝ իր հասունացած պրոբլեմներով»:

Շրջանում վերջին հաշվետու-ընտրական ժողովների ժամանակ օգտվեցին սոցիոմետրիայի «ծառայությունից»: Դա նորույթ էր և բացառում էր դեմոկրատիայի նենգափոխումը, ձևական, նախապես պլանավորված ժողովը, որը ոչ այլ ինչ էր, եթե ոչ բյուրոկրատիզմի դրսևորում: Մարդիկ, կուսժողովներում ազատ ու անկաշկանդ արտահայտվելով, սխալը սխալ, թերությունը թերություն ներկայացնելու հնարավորություն ստանալով, մեկ անգամ ևս համոզվեցին, որ կուսակցությունն, իրոք, բռնել է «մեր կյանքի լայն դեմոկրատացման, հրապարակայնության, ինքնավարական, ընտրական հանգամանքների ըստ ամենայնի զարգացման ուղին» (Մ. Ս. Գորբաչով), և դրա արդյունքն այն է, որ այսօր «հրապարակայնությունը շարժման մեջ է մըտել»: Եվ այս շարժումից հետ մնալու իրավունք ոչ ոք չունի և չի էլ կարող ունենալ: Այստեղ առավել կարևորվում է այն հարցը, թե մենք կարողանո՞ւմ ենք գործով ժամանակի հետ քայլել, ԽՄԿԿ XXVII համագումարի առաջադրած հասարակական, տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման մեջ մեր ներդրումն ունենալ, նպաստել վերակառուցման հաղթանակին, ներգործել մարդկանց վրա, որպեսզի առողջ երկխոսության միջոցով ողջ խորությամբ և իրական պատկերով ընկալենք

ԳԵՎՈՐԳՅԱՆ ԱՆԱՀԻՏ ՀԱՅԿԻ — «Հրազդան» թերթի խմբագրի տեղակալ:



digitised by A.R.A.R.@

երկրում տեղի ունեցող պրոցեսները, իմաստավորենք մեր կյանքը՝ մեզ համարելով որպես բարոյական ու սոցիալական ճշմարտություններ կրող:

Չէ՞ որ վերակառուցումը դեռևս լիովին չի թոթափվել զանազան կապանքներից: Իսկ դա ստեղծում է երերուն վիճակ, տեղ-տեղ թերահավատություն ծնում նրա հաղթանակի նկատմամբ, ապակենտրոնացնում մարդկանց ուժերը, սպառնում նրանց քաղաքական վստահությանը: Այդ նրանից է, որ մեր անցյալն ու ներկան փոխշաղկապված են, մեկը մյուսի օրգանական շարունակությունն է, և իներցիան գործում է, որ երեկվա ղեկավարներից դեռ այսօր էլ շատ կան, ու չի փոխվել նրանց գործելակերպը, ոչ էլ՝ մտածելակերպն ու ցանկությունը... Շատ տեղերում «պահանջկոտություն, ազնվություն, կուսակցական խիղճ, սոցիալական արդարություն, անգամ վերակառուցում բառերը սոսկ ինքնաքողարկման դրոշակ են... Ուրեմն՝ այսօր առավել, քան երբևէ, պետք է ասել ամեն ինչ, ասել շիտակ, առճակատ, որոշակի հասցեատերերին: Շրջանային կուսակցական կոնֆերանսը հենց այս ոգով էլ ընթացավ:

Այսօր փոխվում են բարոյական նորմերը: Ավելի ճիշտ, գլխիվայր շրջված նորմերը վերականգնվում են: Եվ «ո՞վ է ժողովուրդը», «ի՞նչ կոլեկտիվ» ու նման խոսքերի հեղինակներն այսուհետ զգույշ կլինեն ոչ միայն իրենց արտահայտություններում, այլև երկյուղածությամբ կկանգնեն ժողովրդի ու կոլեկտիվի առջև: Միայն այս դեպքում, ասենք, կաթի գործարանի դիրեկտորը վերջնականապես իրական պայմաններ կստեղծի բարձրորակ արտադրանք թողարկելու համար կամ կթողնի կհեռանա, որովհետև աստիճանաբար կհամոզվի, որ այս վիճակն այլևս չեն հանդուրժի թթված կամ «ջրալի» կաթ «սպառողները»:

Ընդհանուր առմամբ բնակչության սպասարկման բնագավառի աշխատողները պետք է կատարածի ցածր մակարդակի համար անձնական պատասխանատվություն կրեն: Չնայած Հրազդանի քաղաքի կազմը փոխվեց, բայց այդուհանդերձ, առևտուրը մնում է այն հիվանդագին օջախը, որի մարման անհրաժեշտ դեղահաբը դեռևս չի գտնվել մեզանում: Պահպանողական ուժերն ամեն ինչ անում էին (և՛ ներսում, և՛ դրսում) և անում են, որպեսզի դժգոհություն առաջանա բնակչության մեջ: Նման «բլոկադան», իհարկե, մասնակի ազդեցություն գործում է: Առևտուրն ինքնին, ըստ էության, ու, առաջին հերթին, վերակառուցման անհրաժեշտություն ունի: Եվ պատահական չէ, որ բնակչությունը մեր կյանքի բոլոր նորմերի կարգավորումը կապում է առևտրի հետ: Նրա մեջ արմատավորված է այն կարծիքը, թե առևտրի ղեկավարները շրջանում կարող են լուծել ցանկացած բարդության հարց և ամենաերևելի մարդիկ են: Եվ աշխատավոր մարդն սկսում է խորհել, թե ի՞նչն է դրա պատճառը:

Անշուշտ, ցանկացած խոցելի երևույթի երևան գալուն նպաստում են աշխատավորության քաղաքացիական կրավորականությունը, իրավական գիտելիքների պակաս իմացությունը: Ովքեր փորձում են վարպետանալ և ձվածեղ անել առանց ձու կոտրելու, ապավինում են ոչ միայն իրենց թիկնեղ հովանավորի և աթոռկեն համախոհի ուժերին ու դիրքին, այլև՝ մյուսների ինքնասպառ անտարբերությանն ու վախկոտ հանդուրժողականությանը:

Մի՞թե վերակառուցման պահանջների անտեսում չէ դիմում-բողոքներին ընթացք տալու գործում նկատվող բյուրոկրատիզմը: Օրինակ, եթե ղեկավարը ստանում և փակում է բողոք-նամակը հետևյալ մակագրությամբ. «Հիշատակված փաստերը հնացած են», ապա սա նշանակում է, սկզբունքային մոտեցման փոխարեն, բացահայտորեն քողարկել, պաշտպանել օրինազանցին ու հանցագործին: Այս պարագայում, հօգուտ զանցարարի, գործում է անպատժելիության մեխանիզմը, որին գումարվում են զանազան արտառոց, բայց արդեն սովորական դարձած խախտումներ ու զանցանքներ:

Նոր մտածողությունը պահանջում է ասել ամեն ինչ, և դա ոչ թե սոսկ ձևի համար, այլ՝ որպես կուսակցական գիծ, սթափեցնող ու մաքրող միջոց: Նոր մտածողությունը պահանջում է հարցնել, թե ի՞նչ իրավունքով կամ ու՞մ արտոնագրով ապօրինաբար բարելավեցին իրենց բնակարանային և մյուս պայմանները որոշ ղեկավարներ ու ճարպիկ մարդիկ, երբ նույն պայմանների համար ուրիշները տարիներով հերթագրված են և օրենքի սահմաններում էլ դժվարությամբ են ապահովվում: Սոցիալական արդարության վերաբերյալ նրանց խոսքին կհավատա՞ որևէ մեկը կամ նրանք կարո՞ղ են լուծել սոցիալական բազմակնճիռ հարցեր:

Մի փոքր ծավալուն՝ սոցիալական պաշտպանվածության մասին: Վերջերս



Հրազդանի Կաքավաձոր թաղամասի երիտասարդությունը հրավիրել էր շրջանի կուսակցական և սովետական ղեկավարներին՝ նրանց ներկայացնելու սոցիալական բազմազան պրոբլեմներ: Քսանհինգ տարուց ավելի կաքավաձորցիները համարվում են քաղաքի բնակիչ, սակայն կենցաղն ու հոգսը գրեթե նույնն են. չասֆալտապատված ու չլուսավորված փողոցներ, ավտոբուսային ու հեռախոսային անբավարար կապ, խանութի խղճուկ շենք, անմակարդակ ու անբավարար սպասարկում, կոյուղու բացակայություն, մշակույթի տան, հետևաբար, նաև, մշակութային կյանքի բացառում և այլն, և այլն:

Տարիներ շարունակ սոցիալական խնդիրների թերըմբռնման ու անտեսման հետևանքով նույն պատկերն է քաղաքն ամբողջացնող մյուս, երբեմնի հինգ գյուղերում, դրանց թվում՝ շրջանի ամենամեծ և նշանավոր Ռնդամալ գյուղում, որը 1961 թվականից նույնպես համարվում է Հրազդան քաղաքի թաղամասերից մեկը: Սակայն սոսկ համարվում է: Ջրառատ վերանվանված այս բնակավայրի բերրի հողատարածությունները կառուցապատվեցին. ծնվեց քաղաքի մի նոր ու հզոր թաղամաս՝ Միկրոշրջանը, որն այսօր ունի շուրջ 23 հազար բնակչություն: Ջրառատի հսկայական հողատարածությունները ծանրաբեռնվեցին արդյունաբերական շինարարությամբ: Այստեղ գցվեցին լեռնաքիմիական կոմբինատի հիմքերը: Դա ահավոր «նվեր» էր առհասարակ հանրապետության ողջ աշխատավորությանը: Մխիթարական էր, որ այն ցեմենտի գործարանի վերածվեց, և պարբերաբար փոխվում ու հետաձգվում է սրա կոնսերվացման ժամկետը, իսկ մինչ այդ նրա օդ արտամղած ցեմենտի փոշին հասնում է Կիրովական ու Ապարան, քայքայող շերտերով ծածկում բուսականությունն ու տանիքները: Ճերմակ ձյունը միայն հիշողություն է դարձել...

Ջրառատում կառուցվեց Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանը, որը քաղխորհրդի գործկոմի նախագահ Գ. Խաչատրյանի խոստովանությամբ «ապահովում է» օդի աղտոտվածության 70 տոկոսը: Այդուհանդերձ, այսօր կառուցվում են ՊՇԷԿ-ի նոր էներգաբլոկները: Դե, ի՞նչ կա որ, ջրառատցին, ինչպես և հրազդանցին, առհասարակ, համբերատար են: Իհարկե, նրանք դեմ չեն էլեկտրաէներգիային, գիտեն, որ այն կյանք է, զարգացման երաշխիք: Գիտեն նաև, որ նախատեսված է այդ նոր էներգաբլոկները մազութի փոխարեն աշխատեցնել գազով, որը օդային ավազանի համար անհամեմատ անվտանգ է, սակայն զարմանալի է, թե ինչու խոշոր գումարներ են ծախսվում՝ կառուցելու ծծմբամաքրման կայաններ, որոնք նման դեպքում հարկավոր չեն: Այսինքն երաշխիք չկա...

Վերջապես Ջրառատի տարածքում են կառուցվել «Հրազդանմեքենա» բազմահազարանոց կոլեկտիվ ունեցող արտադրամիավորումը և բազմաթիվ այլ հիմնարկ-ձեռնարկություններ, որոնք արդյունաբերական հզոր կենտրոն դարձրին թաղամասը: Այսպիսով, չորս կողմը՝ ուրբանիզացում և տեխնոկրատիա, շինարարական ու արդյունաբերական շրջափակում, և դրա կողքին՝ ավանդական կենսաձև: Շուրջբոլորը շինարարական լայն հրապարակ, սակայն շինարար ջրառատցու ձեռքերը կապեցին՝ զրկելով նրան տուն կառուցելու և վերակառուցելու հնարավորություն-իրավունքից: Ըստ գլխավոր հատակագծի՝ նախատեսվում էր քանդել գյուղը (ի՞նչ մտահղացում՝ քանդել շեն գյուղը): Որպես լճացման շրջանին բնորոշ երևույթ, որոշումը ձգձգվեց և միայն դիպվածով չիրականացավ՝ գյուղը փրկվեց:

Գյուղը չքանդվեց, ուղղակի ինքնահոսի մատնված՝ աստիճանաբար քայքայվում էր: Միկրոշրջանում ջրառատցու աչքի առջև, նրա բազկի ուժով կառուցվեցին տասից ավելի դպրոցներ ու մանկապարտեզներ, իսկ թաղամասում՝ ոչ մի: Գյուղական տարիներին կար ակումբ, իսկ քաղաքացած թաղամասում այդ էլ վերացավ: Երիտասարդ ընտանիքները այդ տարիներին թողեցին հայրենի բնակավայրը, տունը և գոհացան բնակարան ստանալով: Քաղաքաշինությամբ տարված ղեկավարները մոռացան բնակիչների ոչ միայն սոցիալական պահանջմունքների, այլև՝ իրավունքների մասին: Մոռացան, որ ամեն ինչի հիմքում ընկած է սոցիալական ինքնազգացողությունը, որն այնքան էլ բավարար չէր այս պարագայում: «Խոտհարքների ձեռքբերման արհեստական դժվարությունների ու արոտավայրերի սահմանափակման պատճառով,— ասում է Աշխատանքային կարմիր դրոշի և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր, անասնապահ Լ. Սիրունյանը,— պակասեցին անասուն պահողները»:

Ընդհանրապես շրջանում այն անհատական տնտեսությունները, որոնք անասուն-



digitised by A.R.A.R.@

ներ են պահում, հիմնականում աշնանը հանում են վաճառքի 200—300 կգ քաշով: Այդ անասունները մեծ մասամբ գնում են անհատներ՝ բտելու և վերավաճառելու նպատակով: Լավ չէ՞ր լինի, եթե մեր պետական, կոլեկտիվ տնտեսությունների ղեկավարներն այդ գործարքն իրենք կատարեին, միսը հանձնեին պետությանը՝ թույլ չտալով, որ տեղում ստեղծված մսի ռեզերվը շրջանից, անգամ հանրապետությունից դուրս գա: Դրա համար նրանք մի փոքր ջանք պետք է գործադրեն, բայց երևի սովոր են իրենց նեղություն չտալու: Քաղսիի տնտեսությունն այս օրինակելի փորձն ունի: Եվ դա միայն պարենային ծրագրին նպաստող ու տեղական հայրենասիրության դրսևորում չէ: Դա ղեկավարի հեռատեսության ու սրտացավության վկայությունն է: Բնականաբար, այդպիսի ղեկավարը մտածում է նաև իր աշխատողի ընտանիքի նյութական բարեկեցության, նրա տրամադրության ու տրամադրվածության մասին: Հենց այսպիսի ղեկավարներ են այսօր պետք ամենուր: Միայն այսպիսի ղեկավարները կմտածեն ոչ միայն իրենց վերադասներին, այլև ժողովրդին պատասխան տալու մասին:

Այսօր առաջնահերթ խնդիր է անհատական բնակարանաշինությունը: Եվ դա ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի պահանջն է. «Թո՛ղ մարդիկ իրենց վաստակած միջոցներով կառուցեն այն, ինչ իրենց հարկավոր է՝ հաշվի առնելով իրենց այսօրվա և ապագա պահանջմունքները»: Այդ պահանջը պետք է տարածվի ջրառատցիների վրա: Դա կթեթևացնի բնակարանային հերթերը, ապա՝ կրկին կմոտեցնի մարդուն հողին (իսկ հողից հեռանալը սեփական ձեռքով ստեղծած բարիքից հեռանալ է նշանակում), ուրեմն՝ չհեռանալ նաև բարուց: Բարիքն ու բարին իրար հետ սերտորեն կապված են: «Ես,— շարունակում է Լ. Սիրունյանը,— որպես հողի հետ կապված մարդ, փորձով գիտեմ, որ բարության այսքան պակասն ուղիղ համեմատական է մարդու հողից հեռանալուն»: Այսօր, որքան հնարավոր է, պետք է շատերին հող հատկացնել՝ տուն կառուցելու համար: Թո՛ղ հողի հետ կապվի մարդը, թո՛ղ անասուն պահի, հիշենք, որ անցած տարվա սեպտեմբերյան պլենումում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Հարությունյանը ցավով նշեց, որ գյուղական ընտանիքների կեսից ավելին անասուն չի պահում:

Ջրառատցիների այս պրոբլեմներին անդրադարձավ նաև Ջրառատի կաթնային համալիրի (այժմ սնաբղետի աճեցման գործարան) դիրեկտոր Ռ. Գևորգյանը՝ դրանք համարելով աշխատավորների սոցիալական կարիքների ու պահանջների նկատմամբ քար անտարբերության հետևանք: «Ջրառատի կաթնային համալիրը,— ասում է նա,— ստեղծվեց Ջրառատի տարածքում, սակայն այնքան էր հեռու ջրառատցու բնակավայրից (ճանապարհ ու բնակարաններ չկային), որ այն ամբողջովին ջրառատցիներով չհամալրվեց: Նրանց համար գերադասելի էր արդյունաբերական ձեռնարկություններում տեղավորվելը:

Կամենում եմ անդրադառնալ մանր թվացող, բայց սոցիալական արդարության ոտնահարման մի ինքնատիպ դրսևորման՝ քաղաքացիական պարտքը չկատարելուն: Պետությունը մարդկանց ապահովել է բնակարանով, աշխատանքով (խոսքը Ջրառատ բանավանի մասին է), որտեղ աշխատավորական ուժը համալրվել է հարևան հանրապետություններից եկածներով, և նրանք պետք է իրենց պարտքը հատուցեն՝ գոնե իրենց հարկի տակ պիտանի քաղաքացիներ աճեցնելով: Տարիներ շարունակ պարտուսից դուրս մնացած երեխաներ են եղել, որոնք աստիճանաբար բռնել են օրինական կյանքից շեղվելու ուղին: Մինչդեռ բոլորին քաջ հայտնի է մարդկային ռեսուրսների անգնահատելի դերը մեր կյանքի ցանկացած բնագավառի զարգացման գործում:

Սոցիալական անարդարության հանդեպ խլությունը, ցավոք, դրսևորվում է ոչ միայն անհատի, այլև աշխատավորական կոլեկտիվի նկատմամբ: Մի դեպքում դա արտահայտվում է խորհրդային մարմինների, մյուսում՝ վերադաս կազմակերպությունների կողմից: Թվարկեմ մի քանի օրինակներ, որոնք ամուր թելերով կապված են բյուրոկրատիզմի հետ: Այսպես, հանրապետության պետագրոարդը հանգստացուցիչ խոստումներով է ապահովում Ջրառատի գործարանի բարոյապես ու ֆիզիկապես մաշված տեխնիկայի փոխարինումը նորով: Հանրապետության ագրոարդյունաբերական պետական կոմիտեն մեկ տարի առաջ տվեց հերթական խոստումը՝ Ջրառատի տոհմային գործարանը ներտնտեսային ռեզերվները պետք է գործի դնի անհրաժեշտ քանակի կեր ձեռք բերելու համար: Այսօր մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը կազմում է 35 ռուբլի, օգուտը՝ 5 ռուբլի: Պետության կողմից տնտեսություններին վաճառվող խտացված կերի գինը 11-ից հասել է 20 կոպեկի, չնայած որակը, աշխատավորների վկայությամբ, կա՛մ վատացել է, կա՛մ լավագույն դեպքում մնացել նույնը: Ուստի ինքնարժեքի իջեցման ուղիներ պետք է գտնել: Դրա արդյունավետ ուղին կապալի, տնտհաշվարկի, ինտենսիվ տեխնոլոգիաների զուգակցումն է: Տընտեսությունն արդեն ստեղծել է վարձակալական կապալի ստորաբաժանումներ, որոնք շուտով կվերածվեն կոոպերատիվների: Սակայն էժան կերի ձեռքբերումը պակաս կարևոր գործոն չէ: Անցած տարի գործարանը հսկայական քանակությամբ խոտ կուտակեց՝ 2.600 տոննա, սակայն մյուս տեսակի կերերի հետ այն դարձյալ կազմում է անհրաժեշտ քանակի 70—80 տոկոսը: Ահա թե ինչու այնքա՜ն հրատապ է այն 800 հեկտար ջրովի հողատարածությունների ոռոգման ցանցի կարգավորումը: Այս մասին տնտեսության ղեկավարությունը տեղեկացրել է պետագրոարդի կոմիտեին և ստացել մի փաստաթուղթ, որով հայտնում են, թե «ՀԽՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությանը, պետագրոարդին», «Հայգլխջրշին» վարչությանը և «Հայպետջրնախագիծ» ինստիտուտին հանձնարարված է ուսումնասիրել և ներկայացնել առաջարկություն... Ջրառատի ներտնտեսային ոռոգման ցանցի վերակառուցման վերաբերյալ»: Եթե մի գործ հանձնարարված է այսքան կազմակերպությունների, ուրեմն այն գլուխ չի գա: Այս պատկառազդու կազմակերպությունները պարզապես հանձնարարականը գցել են իրենց գզրոցները՝ որպես հերթական չպատասխանվող գրություն: Դա այն 87 հազար փաստաթղթերից մեկն էր, որի մասին հիշատակվեց ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում: Փաստաթղթեր, որոնք տարվա ընթացքում պետագրոարդը առաքում է կազմակերպություններին և խանգարում կենդանի կազմակերպչական աշխատանքին: Փաստորեն արդյունքում մնացել են մի հանձնարարական-խոստում, երեք միլիոն ռուբլու ոռոգման խափանված ցանց և կերի կարիք:

Տնտեսությունում անհանգստություն կա նաև ֆինանսական վիճակի առիթով: Արդարացի չէ. շրջանի կաթի 30 տոկոսից ավելին արտադրող համալիրը մաս չունի կաթի գործարանի տարեկան 600—750 հազար ռուբլու զուտ օգուտներից: Ուստի, ճիշտ կլինի, որ շրջանային ագրոարդյունաբերական կոմբինատն առանց հաշվի առնելու, թե ում ենթակայության տակ է գտնվում այս համալիրը, նրան հատկացնի այդ գործարանի օգուտների ինչ-որ մասը, մինչև որ տնտեսությունն ինքը կարողանա տնօրինել իր արտադրանքը:

Ընթացիկ տարում համալիրում գործարկվեց արդյունաբերական ձեռնարկությունների հետ կապի հաստատման արդյունաբերական մասնաճյուղ, որը տնտեսությանը կբերի շուրջ 100 հազար ռուբլու օգուտ: Նման մասնաճյուղ կկազմակերպվի նաև Կաքավաձորում, որը նույնպես մտնում է այս տնտեսության տարածքի մեջ: Այստեղ ևս պարապ աշխատուժը՝ կանայք ու աղջիկներ կներգրավվեն հանրօգուտ աշխատանքի: Անշուշտ, այսպիսի ձեռնարկումները կշտկեն տնտեսության ֆինանսական վիճակը, և այլևս հարկ չի լինի սպասելու վերևների քաշքշուկային թույլտվությանը կամ զայրացնող օգնությանը, միաժամանակ կբարելավվի աշխատողների բարեկեցությունը: Այսինքն, երկուստեք կլուծվեն և՛ տնտեսության, և՛ աշխատավորների սոցիալական հարցերը, իհարկե, առաջնայինը բնակչությանը սննդամթերքով բավարարումն է: Ահա այստեղ է, որ դեռևս կան շեշտված տարբերություն, խտրականություն: Բանավանի բնակիչները կտրոններով պարենամթերք ստանում են գյուղական նորմաներով, այն և՛ տեսականիով, և՛ չափով քաղաքային նորմայի կեսն է կազմում: Նման սոցիալական անարդարությունը ևս պետք է հաղթահարվի:

Հիշատակված և մյուս բոլոր խնդիրները լուծելի են հատկապես այժմ, երբ ժողովուրդն իր դիրքերում է: Նա ցանկացած պահին իրեն զգում է դրության տեր և փորձում է հարցերը ճշգրտորեն լուծել: Հաղթահարվում է նրա երբեմնի անտարբերությունը, ավելի ճիշտ՝ կրավորականությունը, որն ասես հոգեբանություն, բնավորություն էր դարձել և պատճառ, որ ինչպես ասում է Հրազդանի քաղխորհրդի գործկոմի նախագահը, «հերթական ղեկավարները գան ու գնան, իսկ հասարակության ու սերունդների առջև նրանց պարտքը մնա անկատար: Իսկական դեմոկրատիայի դրսևորում էր քաղխորհրդի գործկոմի նախագահի տեղակալի ընտրությունը, երբ չընտրվեց ներկայացված թեկնածուն: Դժվար, բայց հաճելի է ժողովրդի աջակցությամբ աշխատելը: Ժողովրդավարությունը մեզ կպարգևի տառապալից բերկրանք»:



digitised by A.R.A.R.@

Շիշտ է, լճացումը, ևս կասեի, ճահճացումը, ընդարմացրել էր բոլորին, և այժմ էլ առանձին տեղերում ճահճուտները դեռ պահպանվում են... Պահպանողականները դեռ դիրքերում են, ուժ ունեն ու կարողություն: Ահա թե ինչու աշխատավոր մարդկանց մի մասը դեռևս իրեն օտար է զգում սեփական հարկի տակ, կղզիացած է: Շատերը դեռ չեն հավատում, որ վերջ կլինի անձնական նվիրվածությամբ ու նվիրատվությամբ վերև բարձրանալու արատավոր մեթոդին, մեթոդ, որը հանցագործություն է պետության, հասարակության, հարազատ ժողովրդի, ինչպես նաև՝ սեփական եսի նկատմամբ: Չի հավատում, որովհետև նրա աչքի առջև միայն այսպիսի մթնոլորտում անարգել տեղի են ունեցել (և դեռևս չեն հաղթահարվել) պետական միջոցների յուրացումներ, հավելագրումներ, կաշառակերություն, տարեցտարի ծաղկել է ստվերային էկոնոմիկան, հորդել են անաշխատ եկամուտների գետերը: Նա անխնա հարված է ստացել իր հավատին: Այսօր էլ հավատը փշրող մուրճը չի դադարել աշխատելուց: Աշխատավոր մարդը վերակառուցման այս եռուն օրերին, սոցիալական արդարություն և այսօրինակ հոգեշահ բառեր ու արտահայտություններ լսելիս, ի պատասխան՝ դառնություն է կուլ տալիս: Ինչպե՞ս չխոժոռվի, երբ նրա աչքի առջև «հավասարության» սկզբունքով բաշխեցին, ասենք, այգեգործական հողատարածությունը: Միայն թե հեղինակավոր կազմակերպություններն ու անհատները տեր դարձան բարեհարմար տեղանքի, իսկ համեստ աշխատանքի տերերին բաժին ընկան առասպելական քարքարուտներն ու բլուրները: Միայն ա՞յդ: Ամենևին՝ ո՛չ: Երբ շատ հողամասերում չէին հասցրել քարերը հավաքել, հողը հարթեցնել, վեր խոյացան պալատները: Ապա եկավ արգելափակոցի պահը: Կային մարդիկ, որ կիլոմետրերով ջրի խողովակաշար էին անցկացրել: Ու բանվորը կրկին համոզվեց, որ իր համար նման կառույցը սոսկ երազանք է, չնայած ինքը կրկնակի աշխատավարձ է ստանում: Իսկ որպեսզի, իրոք, արդարություն լինի, հարկ է, որ նման կառույցները գնահատվեն: Հատկապես այս օրերին ոմանք իրենց լրացուցիչ բնակտարածությունը ինքնակամ կարող են հանձնել կարիքավորներին, իսկ իրենք կբավարարվեն հանրապետության տարբեր շրջաններում ունեցած առանձնատներով, որոնք հիմնականում ձևակերպված են սրա կամ նրա անունով: Փաստաթղթային նման խաբեությունը չտեսնելը նշանակում է լռելյայն համաձայնել այսպիսի անազնվությանը, թույլ տալ, որ կրկին արվի ցանկացածը, ձեռնտուն, օրինականության քողով զարկ տրվի անօրինականությանը: Կարծում ենք, որ եթե որևէ կազմակերպությունում քննարկվի և համապատասխան որոշում կայացվի նման առանձնատներ ունեցողների նկատմամբ, ապա այդ օրինակին կհետևեն շատ-շատերը և, որ ամենակարևորն է, մեր խաթարված հավատը փոքր-ինչ կվերականգնվի, մյուսներն էլ այս աստիճան չեն հրապուրվի անձնական բարեկեցության մարմաջով:

Վերակառուցման իրական հաղթանակին մարդիկ կհավատան այն ժամանակ, երբ ղեկավար աշխատողները, ովքեր Երևանի բնակիչ են, բայց Հրազդանում էլ տուն ունեն, դրան գումարած ծառայական մեքենաներն ու այլ հարմարություններ, բավարարվեն քչով: Ասենք, ձեռնարկության տնօրենը շրջանում ունեցած լայնածավալ բնակարանը փոխարինի մեկ սենյականոցով: Եթե այսպիսի ինքնամաքրում սկսվի, ապա, անկասկած է, որ վերակառուցումն արդեն թափանցել է մարդկանց գիտակցության ու էության, գործունեության ու կենցաղի մեջ: Այդպիսի օրինակ կա. Չարենցավանի «Շինինդուստրիա» արտադրամիավորման դիրեկտոր Սարգիս Ասոյանն իր բնակարանը հատկացրել է կարիքավոր բանվորներից մեկին: Սակայն կան և ղեկավարներ, որոնք տարվա ընթացքում մի քանի օր են բացում բնակարանի դուռը, բայց այն ամուր պահում են իրենց ձեռքում...

Մենք լավատես ենք, հավատում ենք, զարթոնքը կա, որ գալիս է այդ մաքրամաքուր օրը, հատկապես երբ զգում ենք ժողովրդական հսկողության կարգավորող ուժը: Ժողովուրդն արդեն, կուսակցության հովանավորությամբ սկսել է հանդես բերել ակտիվություն ու նախաձեռնություն կյանքի ցանկացած բնագավառում: Այո՛, միայն պետք է ապավինել ժողովրդական ինքնամաքրման ուժին՝ չմոռանալով նաև, որ ինքնամաքրումը պետք է սկսվի վերևից: Այսպիսի աշխատանքի պայմաններում բոլորը կձգտեն անձամբ վատ ու չար բան չանել, թույլ չտալ ուրիշին, հանցավոր արարքների համար չթողնել որևէ սողանցք:

Եվ որպեսզի ասվածը սոսկ վերամբարձ խոսքեր չթվան, պետք է կարողանանք պահպանել ու ծավալելով ամրապնդել մեր հասարակական կյանք թափանցած նոր հոսանքը, որը բերել է իսկական դեմոկրատիա, հրապարակայնություն, մարդկային



գործոնի ակտիվացում, կադրային քաղաքականության մեջ լենինյան սկզբունքների արմատավորում և, իհարկե, սոցիալական արդարություն:

Չնայած պատմությունն աննախադեպ առաջ է ընթանում, այնուամենայնիվ, պահպանողականներն ու վերակառուցման հակառակորդները փորձում են խանգարել, կասեցնել ու պատնեշել վերակառուցման գրոհող հորձանքները: Սակայն՝ ապարդյուն ջանքեր: Արդեն կան վերակառուցման առաջին պտուղները: Հրազդանցիներն առաջինը (հանրապետությունում) հետ կանչեցին իրենց հույսերը չարդարացրած ՀԽՍՀ Գերագույն խորհրդի դեպուտատին: Հրազդանի աշխատավորությունը պահանջում է համալրել ոչ թե ձեռք բարձրացնողների բանակը կամ ապահովել պաշտոնատարության կցորդումը, «հաստիքային դեպուտատությունը», այլ ընտրել նրան, ով կարող է իրենց ու իր սոցիալական, ազգային ու մասնագիտական շահերը ներկայացնել խորհրդային իշխանության մարմիններին, պաշտպանել իր մարդկային իրավունքները, արժանապատվությունը, ով աչքի կընկնի և՛ ժողովրդին ծառայելու ցանկությամբ, և՛ քաղաքական ու քաղաքացիական ակտիվությամբ: Ժողովուրդն զգում է ժամանակի շունչը, ժամանակն է նկատել, ճանաչել, գնահատել ու առաջ քաշել արժանավորներին:

Մեր հայրենիքի հզորացմանն ու անպարտելիությանը նպատակամղված համաժողովրդական պայքարի ելքը վերակառուցման հաղթանակն է, հասարակության նորացումը, քաղաքական ռեֆորմի և սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացումը: Դրա համար պահանջվում է ամենուրեք պահպանել բարոյահոգեբանական, բարոյաքաղաքական առողջ մթնոլորտ: Իսկ դա հնարավոր է անել, ինչպես նշվում է կուսակցական փաստաթղթերում, կադրային առողջ ջոկատի ուժերով: Հեղափոխական մթնոլորտը թույլ կտա կուսակցական, խորհրդային, տնտեսական աշխատանքի բոլոր տեղամասերն ապահովել պատասխանատվության բարձր զգացումով օժտված, բանիմաց, թե՛ մտածողությամբ, թե՛ գործողություններով համարձակ մարդկանցով, ոչ միայն պարզապես գրագետ, այլև գործի նկատմամբ շահագրգիռ կազմակերպիչներով, նրանք էլ պիտի մարդկանց համակեն խոր հավատով վերակառուցման հաղթանակի նկատմամբ, ներգրավեն սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման համար ծավալված պայքարի մեջ:

digitised by A.R.A.R.@

# ՆՈՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Ա. ՍԱՔԱՆՅԱՆ**

*«Պլենումը պետք է մշակի և ժողովրդին առաջարկի այնպիսի ագրարային քաղաքականություն, որի իրագործումը կարողանա գյուղացուն վերածնել որպես հողի տնտեսատիրոջ, հուսալիորեն լուծել պարենային պրոբլեմը։ Նման հարցադրումը թելադրվում է երկրում ստեղծված ռեալ իրավիճակով, վերակառուցման ընդհանուր խնդիրներով»* (ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումի զեկուցումից)։

**ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ** կուսակցության ագրարային քաղաքականության հարցերին նվիրված ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի արտահայտած այս հույժ կարևոր մտքի շուրջ էլ ծավալվեց զրույցը Ապարանի շրջանի Արագած գյուղի, նրա պետական տնտեսության ղեկավարների հետ։ Ահա այդ զրույցից արված ընդհանուր հետևությունը. երբ գյուղում, տնտեսությունում այս առնչությամբ կատարվող աշխատանքը արժեքավորում ես պլենումի պահանջների չափանիշով, ապա համոզվում ես, որ վերջին տարիներին այստեղ էական փոփոխություններ են կատարվել ինչպես տնտեսական, այնպես էլ սոցիալական ոլորտում։ Արտադրության մարդը, իրոք, սկսել է դառնալ հողի իսկական տերը, իր արժանի ավանդը մուծել պարենային ծրագրի իրականացման գործում։ Սրա ակամայից մտաբերում ես ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար Թամարա Ալոյանի կարծիքն այն մասին, որ Արագածում հաջողությամբ են լուծվում սոցիալ-տնտեսական զարգացման, պարենային ծրագրից բխող խնդիրները, որովհետև ամենուրեք տիրում է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, կադրերն աշխատում են փոխադարձ ըմբռնումով ու խելամիտ համագործակցությամբ, լայնորեն արմատավորում են նորն ու առաջավորը՝ հանուն բնակավայրի բարգավաճման ու տնտեսության առաջընթացի, հանուն վերակառուցման հաղթանակի...

## ԽԵԼԱՄԻՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆ

ԽՄԿԿ XXVII համագումարին տրված Քաղաքական զեկուցման մեջ ասվում է. «Կուսակցության գործին նվիրված, նրա քաղաքական գծի կենսագործման համար մղվող պայքարի ավանգարդում ընթացող կադրերը մեր ամենագլխավոր, ամենաթանկ հարստությունն են»։ Այս կարևոր դրույթը իր արտացոլումը գտավ նաև ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումում։ Ծանոթանում ես Արագածի ղեկավարների գործունեությանը, նրանց աշխատանքի ոճին ու մտածում, որ համագումարի գնահատականը, իրոք, նման կադրերին է վերաբերում։ Պետական տնտեսության դիրեկտոր՝ Աղվան Կարապետյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Լևոն Հովհաննիսյան, գյուղխորհրդի գործկոմի նախագահ Անդրանիկ Հովհաննիսյան։ Երեքն էլ երիտասարդ, եռանդով աղնեցուն, իրենց գործում հմտացած, բանիմաց կադրեր են ու մեծ հեղինակություն են վայելում աշխատավորների շրջանում։ Անցել են հանրային արտադրության բովով, կողք-կողքի աշխատել իրենց համագյուղացիների հետ, անել նրանց աչքի առաջ ու աստիճան առ աստիճան բարձրացել նրանց հավանությամբ։

---

*ՍԱՔԱՆՅԱՆ ԱՐՏԱՎԱԶԴ ՄԱԹԵՎՈՍԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի բաժնի վարիչ, խմբագրական կոլեգիայի անդամ։*



Երրորդ տարին է՝ պետական տնտեսության ղեկը վարում է Ա. Կարապետյանը։ Գյուղի միջնակարգն է ավարտել ու ոտքը դրել Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի շեմին։ Գյուղատնտեսի դիպլոմով վերադարձել է հայրենի գյուղ ու կարգվել դաշտավարական բրիգադի բրիգադավար։ Հետո վստահել են գլխավոր գյուղատնտեսի, ապա՝ «Գյուղքիմիայի» միջշրջանային միավորման դիրեկտորի պաշտոնը։ Այնուհետև տնտեսության կուսբյուրոյի ազատված քարտուղարի պարտականությունն է կատարել։ Լ. Հովհաննիսյանը նույնպես գյուղատնտեսական ինստիտուտի սան է։ Նա ևս բարձրագույն դիպլոմով է դաշտավարական բրիգադի ղեկավար դարձել։ Երբ Ա. Կարապետյանը ստանձնեց տնտեսության ղեկը, կոմունիստները ցանկություն հայտնեցին, որպեսզի իրենց կազմակերպությունն էլ գլխավորի Լ. Հովհաննիսյանը։ Ա. Հովհաննիսյանին գյուղխորհրդի գործկոմի նախագահ ընտրելու համար դեպուտատներն իրենց միաձայն կամքն արտահայտել են 1984-ին։ Նա ևս միջին օղակի հրամանատարի ուղի է անցել, գլխավորել տնտեսության կուսկազմակերպությունը։ Եվ հիմա կուսշրջկոմի կազմբաժնի վարիչ Ազատ Գրիգորյանը առանց տարակուսանքի հավաստում է. «Երեքին էլ ժողովուրդը հարգում է, որովհետև ամեն ինչ համատեղ են անում, աշխատում համագործակցված»։ Եվ լավ է, որ շրջանի կուսակցական ու խորհրդային մարմինների ղեկավարների կարծիքը համընկնում է. Արագածի տնտեսությունը առաջավոր է, կուսկազմակերպությունը՝ մարտունակ, գյուղական խորհուրդը՝ գործունյա։ Իսկ նրանց ղեկավարները զորավիգ, նեցուկ են միմյանց, կնճռոտ հարցերը միասին են քննարկում ու լուծում։ «Երբ ինձ կուսբյուրոյի քարտուղար ընտրեցին,— ասում է Լ. Հովհաննիսյանը,— մի տեսակ տագնապ էի ապրում՝ կկարողանա՞մ, արդյոք, ինչպես հարկն է ղեկավարել կուսկազմակերպության գործերը։ Հարցնում էի ավագ ընկերներին, օրինակ, գյուղխորհրդի գործկոմի նախագահ Անդրանիկ Հովհաննիսյանին, որը երկար տարիներ կուսբյուրոյի քարտուղար է եղել, պետական տնտեսության դիրեկտոր Աղվան Կարապետյանին, որից ընդունել էի քարտուղարի պարտականությունը, և վերջապես, կուսշրջկոմի ընկերներին։ Ու մարդիկ չէին զլանում օգնել և խորհուրդներ տալ։ Մի կողմից էլ ամեն ինչ հեշտ էր ստացվում, քանի որ այստեղ ծնվել, սովորել ու աշխատել էի, կոմունիստներին, արտադրության մարդկանց լավ էի ճանաչում, նրանք էլ ինձ լավ գիտեին։ Այդ ամենը հաջողության երաշխիք էր դառնում»։

Կուսբյուրոյի քարտուղարը տնտեսության հաջողության գործոններից մեկն էլ համարում է բյուրոյի ու դիրեկցիայի համերաշխ, համագործակցված աշխատանքը, առողջ փոխհարաբերությունը։ «Ամեն ինչ հա՞րթ է անցնում, հակասություններ չե՞ն լինում»։ Այս հարցի վրա նա ժպտում է ու, ասես, մեղավորի պես ասում. «Ինչ թաքցնեմ, դժվարություններ լինում են, նաև վիճում ենք դիրեկտորի հետ, հետո, ինչպես ասում են, խելք-խելքի ենք տալիս, ընդհանուր, օգտակար եզրակացության հանգում և գործ ձեռնարկում։ Այդ «վեճերն» ու, ես կասեի, ոչ թե հակասությունները, այլ տարակարծությունները չեն խանգարում, որ աշխատանքից հետո մնանք որպես լավ ընկերներ»։ Եվ որքան բնական է, նույն հարցին համանման պատասխան է տալիս նաև տնտեսության դիրեկտորը։ «Այո՛,— հաստատում է նա,— աշխատանքի տեղում վիճում ենք, իսկ վեճը բխում է զուտ գործի շահերից»։ Լսում ես Արագածի ղեկավարներին ու ակամայից մտաբերում ԽՄԿԿ XXVII համագումարի այն պահանջը, որ «Պետք է հասնել այն բանին, որ կուսակցության մեջ, նրա յուրաքանչյուր օղակում պարտադիր նորմեր դառնան սկզբունքայնությունն ու կուսակցական ընկերականությունը»։

Անձնական լավ օրինակը վարակիչ է։ Արագածի ղեկավարներն այդպիսի օրինակ տալիս են միջին օղակի կադրերին, իրենց ենթականերին։ Ընդ որում, կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ նրանք հաշվի են առնում կուսակցության այն պահանջը, որ բոլոր առաջադրումների և պաշտոնափոխությունների չափանիշը մեկն է՝ աշխատողի քաղաքական ու գործարար հատկանիշները, ընդունակությունները, ռեալ նվաճումները, նրանց վերաբերմունքը մարդկանց հանդեպ, նվիրվածությունը վերակառուցման գործին։ Այս չափանիշի առումով Արագածի պետական տնտեսության կադրերը լավ քննություն են բռնում։ Այսօր մասնագետները, ֆերմաների վարիչները, միջին օղակի շատ այլ ղեկավարներ ունեն բարձրագույն կրթություն և բանիմացորեն են ղեկավարում իրենց վստահված տեղամասերի գործերը։ Նրանցից շատերը ևս թրծվել են բուն արտադրության ոլորտում։ Օրինակ, գլխավոր անասնաբույծ Սարգիս Ամետիսյանը եղել է անասնապահ, բարձրագույն կրթություն ստացել, ապա՝ ֆերմայի աշխատողները նրան վարիչ են ընտրել։ Հիմա էլ կոլեկտիվը նորից է ցանկանում, որ նա կրկին կանգնի իրենց



digitised by A.R.A.R.@

գործերի գլուխ: Այդ հեղինակությանն ու համակրանքին գլխավոր անասնաբույծը հասել է իր ճիշտ գործելակերպով ու նրբանկատ վարվելակերպով, աշխատանքի ու մարդկանց նկատմամբ ցուցաբերած նվիրված ու բարեհաճ վերաբերմունքով: Այսօր Արագածի պետական տնտեսությունում, դպրոցներում ու գործարանային մասնաճյուղում աշխատում են ավելի քան 200 բարձրագույնավարտ մասնագետներ, որոնց վրա էլ հենվում են սկզբնական կուսկազմակերպությունները, նրանց միջոցով քաղաքական-բացատրական աշխատանք ծավալում բնակչության շրջանում, լուծում տնտեսական ու սոցիալական զարգացման բազմաբնույթ ու բազմազան խնդիրներ:

Տնտեսությունում, այո՛, կադրային ճիշտ քաղաքականություն է վարվում: Այս հարցում և կուսբյուրոն ու դիրեկցիան խելամտորեն են համագործակցում, միասին ծանրութեթև անում առաջադրվող կադրերի քաղաքական ու գործնական հատկանիշները, նրանց դրական ու բացասական կողմերը: Եվ, որ շատ կարևոր է, հաշվի է առնվում կոլեկտիվի կարծիքը, կիրառվում ընտրովիության սկզբունքը: Ընտրության միջոցով են առաջ քաշվել դաշտավարական բրիգադի բրիգադավարներ Ավետիք Ասլանյանը, Գագիկ Հովհաննիսյանը, Ռուբեն Վարդանյանը, ֆերմայի բրիգադավար Ալեքսան Ալեքսանյանը: Բոլորն էլ իրենց գործին գիտակ, կոլեկտիվների համակրանքը վայելող մարդիկ են:

Եվ մեկ կարևոր հանգամանք, որ վճռական նշանակություն ունի կադրային գործում: Դա ռեզերվի հարցն է: «Ամեն մի բրիգադում, ֆերմայում,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— կան ռեզերվային կադրեր: Նրանք լավ հատկանիշներով օժտված երիտասարդներ են: Կադրերի փոփոխությունների ժամանակ մենք նեղություն չենք կրում: Այսպես, երբ ես ավարտեցի ինստիտուտը, ընկեր Կարապետյանը բրիգադավար էր, նրան նշանակեցին գլխավոր գյուղատնտես, ինձ՝ նրա փոխարեն բրիգադավար: Ռեզերվային էր իմ ղեկավարած բրիգադում բանվոր Ռուբեն Վարդանյանը: Առաջավոր, գործունյա երիտասարդ էր: Եվ, երբ ինձ ընտրեցին կուսբյուրոյի ազատված քարտուղար, նրան վստահեցին այդ բրիգադի ղեկավարումը: Կամ՝ վերջերս բրիգադավար Հովհաննես Հարությունյանն անցավ կենսաթոշակի: Նրա փոխարեն թեկնածու որոնելու հարկ չեղավ, նույն բրիգադի բանվոր Գագիկ Հովհաննիսյանին, որը նույնպես ռեզերվային էր, կարգեցինք բրիգադավար: Ի դեպ, կոլեկտիվը ևս այդպես էր ցանկանում: Զարմանալու ոչինչ չկա՝ մարդը միջնակարգ կրթություն ունի և հեղինակություն, հողից էլ ինչպես հարկն է գլուխ է հանում»:

## ՆՈՐԸ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ Է ԲՌՆՈՒՄ

*«Սոցիալիստական սեփականության հարաբերությունների վերակառուցման կարևորագույն, իսկ գուցեև տվյալ փուլում նաև վճռական ուղիներից մեկը վարձակալական հարաբերությունների զարգացումն է գյուղում։ Հենց վարձակալման միջոցով կարելի է առավել լիովին իրականացնել անձնական շահագրգռության ակտիվ ներգրավման լենինյան գաղափարը, մարդուն վերադարձնել տիրոջ զգացումը, խթանել նրա ստեղծագործական հնարավորությունները»։*
(ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումի զեկուցումից):

Արագածը շրջանի այն տնտեսություններից է, ուր նորն ու առաջավորը, իրոք, հարգի են, ու միշտ էլ կանաչ լույս է վառվում դրանց առջև: Եվ նորն ու առաջավորը այստեղ դառնում են մարդկանց արտադրությանը, հողին կապելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի քանակն ավելացնելու լավ երաշխիք: «Տարիներ առաջ,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— աշխատող ձեռքը չէր բավարարում, մարդիկ թողնում հեռանում էին գյուղից, ստիպված դիմում էինք դպրոցի ու շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների օգնությանը: Արտահոսքի պրոցեսը կանխեցինք և դրա հետ կապված դժվարությունները հաղթահարեցինք երկու հիմնական ճանապարհով: Մեկը աշխատանքի նոր, առաջավոր ձևերի ներդրումն էր, մյուսը՝ սոցիալական զարգացման խնդիրների լուծումը»:

Եվ քարտուղարը պատմում է, որ մի քանի տարի առաջ կազմակերպվեց կարտոֆիլ մշակող մեկ կապալային օղակ, որի ղեկավարումը ստանձնեց բրիգադավար Հովհաննես Հարությունյանը: Նրա կազմում ընդգրկվեց 12 մարդ, այդ թվում երկու մեխանիզատոր: Ողջ 13 հեկտարի վարի, ցանքի, մշակության, պարարտացման և բերքահավաքի աշխատանքները նրանք կատարեցին իրենց ուժերով: Եվ ի՞նչ: Առաջին իսկ տարում օղակը հեկտարից 230 ցենտներ բերք ստացավ, մինչդեռ նախկինում տնտեսությունում կարտոֆիլի բերքատվությունը 90—100 ցենտներից չէր անցնում: Իսկ մեկ մարդու ամսական աշխատավարձը 120—130 ռուբլուց հասավ 230—240 ռուբլու:



Փորձը ինքնին արդյունավետ և ուսանելի էր: Հաջորդ տարի արդեն կապալային եղանակով կարտոֆիլ մշակելու ցանկություն հայտնեցին բոլոր չորս բրիգադների կոլեկտիվները: Նրանց արդյունքները նույնպես գոհացուցիչ էին, խթանող և մոբիլիզացնող նշանակություն ունեցան: «Եթե նախկինում,— վկայում է պետական տնտեսության դիրեկտորը,— մարդիկ հեռանում էին տնտեսությունից, ապա բրիգադային կապալը ներդնելուց հետո նրանք սկսեցին կամովին աշխատել, շատերը վերադարձան գյուղ, եղավ պահ, երբ մենք չէինք կարողանում ընդառաջել, որովհետև աշխատանքի տեղ չկար: Այնուհետև ստեղծվեցին բրիգադի խորհուրդներ, որոնք իրենք են լուծում նոր աշխատողներ ընդունելու հարցը: Արդեն կապալային եղանակով են մշակվում նաև հացահատիկը, կերաբույսերն ու կաղամբը: Հարցնում եք՝ ի՞նչ շահեցինք, ասեմ. դեռևս 1982 թվականին ՀԿԿ Կենտկոմի պլենումներից մեկում մեր տնտեսությունը ևս քննադատվեց հեկտարից ընդամենը 6—7 ցենտներ հացահատիկի բերք ստանալու համար, մինչդեռ հիմա 34 ցենտներից ենք խոսում: Կամ նույն անցած տարի Հովհաննես Հարությունյանի կապալային օղակը հեկտարի հաշվով հազար ցենտներ կաղամբ հավաքեց: Դա մի ցուցանիշ է, որին հասնելու համար մեր մարդիկ նախկինում միայն կարող էին երազել: Ու թեև տարին աննպաստ էր կարտոֆիլի համար, սակայն, այնուամենայնիվ, լավ բերք հավաքեցինք՝ հեկտարից 190 ցենտներ, իսկ դրա նախորդ բարենպաստ տարում 265 ցենտների բնագիծ էինք նվաճել: Մի խոսքով, աշխատանքի կազմակերպման կապալային եղանակը օգտավետ է և՛ տնտեսության, և՛ կոլեկտիվի անդամների համար»:

Այդ իրողության կոնկրետ վկայությունը կարող է տալ նաև տավարի մատղաշի ինտենսիվ բտման կազմակերպումը կապալային եղանակով: Ամեն տարի տնտեսությունը բտում և պետությանն է վաճառում ավելի քան 150 գլուխ արու մատղաշ՝ 350—360 կգ կենդանի քաշով: Ամեն մի գլխի հաշվով տնտեսությունն ստանում է 400 ռուբլու օգուտ, իսկ անասնապահները ամսական՝ 300—350 ռուբլի աշխատավարձ: Եվ այսօր կոմունիստ Արայիկ Սարգսյանն ու իր գործընկերները՝ Սուրեն Մխիթարյանն ու Խաչիկ Խաչատրյանը, գոհ են այդ եղանակով աշխատելուց, ձգտում են ավելի բարձր վերջնարդյունքներ ձեռք բերել: Ընթացիկ տարվա առաջին երկու ամսում նրանք մթերակայան էին ուղարկել 40 գլուխ ցլիկ, որի շնորհիվ տնտեսությունը զգալիորեն գերակատարեց պետությանը միս վաճառելու առաջին եռամսյակի պլանը:

Այո՛, կապալային եղանակը լավ քննություն է բռնել Արագածի պետական տնտեսությունում և խոր արմատներ է ձգում, դառնում անհրաժեշտություն, բոլոր կուլտուրաներից առատ բերք ժողովելու ու անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու լավագույն երաշխիք:

Անցած տարի կանաչ ճանապարհ բացվեց նաև վարձակալական կապալի առջև: Այն ներդրվեց կերի կուտակման ոլորտում և առավել քան ձեռնտու է տնտեսությանը: Բանն այն է, որ այստեղ, ինչպես ասում է կուսբյուրոյի քարտուղարը, «խոտի կուտակումը դժվարին գործ է, խոտհարքները մեքենահարման չեն և հիմնականում հնձվում են ձեռքով: Լեռնալանջերի ավելի քան 300 հեկտար խոտհարք վերածվել էր արոտավայրի ու տարիներ շարունակ այդ տարածություններից խոտ չէինք կուտակում: Այդ պատճառով տնետուն էինք ընկնում, խնդրում, որպեսզի տղամարդիկ մասնակցեն խոտհնձին, կանայք՝ հավաքին: Մյուս կողմից՝ տուժում էր նաև անհատական սեկտորը, կեր հայթայթելու հարցում մարդիկ շատ էին դժվարանում: Մի օր էլ, իսկ դա անցած տարվա սկզբներին էր, համագյուղացիներից մի քանիսը դիմեցին՝ խոտհարքները վարձակալելու խնդրանքով: Ավելի կոնկրե՞տ եք ուզում, խնդրեմ. Վալտեր Առաքելյանն էր, Արամայիս Գասպարյանը, Գարեգին Սարգսյանը: Վերջինս կուսակցության ու աշխատանքի վետերան է, քսան տարվա կենսաթոշակառու, նախկին բրիգադավար: Նրանք եկան ու ասացին, որ տղաներ ու հարսներ ունենք, բարեկամներ ունենք, որոնք տարբեր պատճառներով տնտեսության հիմնական աշխատանքներին չեն կարող մասնակցել, իսկ խոտի կուտակմանը կարող են օգնել: Եվ մենք ընդառաջեցինք: Հետո եղան նաև այլ ցանկացողներ»:

Սակայն հարկ է նշել, որ վարձակալական կապալի ներդրումը այնքան էլ դյուրին չի ընթացել: Այդ առնչությամբ տարակարծություններ ծագեցին հենց առաջին օրերին ղեկավարների՝ տնտեսության դիրեկտորի և կուսբյուրոյի քարտու-



digitised by A.R.A.R.@

Սոցիալական զարգացման նվաճումները շատ են, բոլորը չես կարող թվել ու դրա հարկն էլ չկա: Սակայն չխոսել մի կարևոր բնագավառի մասին, չի կարելի: Դա արդյունաբերական արտադրությունն է: Բանն այն է, որ տնտեսության վերելքի, մեքենայացման մակարդակի բարձրացման, գյուղի հետ նրա մարդկանց կապվելու առնչությամբ առաջացել էր աշխատող ձեռքի ավելցուկ, հատկապես ձմռան ամիսներին: Եվ ահա գյուղի ղեկավարությունը շրջանային մարմինների առջև հարց հարուցեց՝ բացելու գործարանային մասնաճյուղ: Շուտով ծնունդ առավ Երևանի «Ալմաստ» գործարանի մասնաճյուղը, ուր այժմ աշխատում են զգալի թվով արագածցիներ: Նրանք հիմնական արտադրանքից զատ թողարկում են նաև լայն սպառման առարկաներ, մասնավորապես անձեռոցիկներ ու թանկայի կափարիչներ: Կոլեկտիվի անդամները ամռան ամիսներին կազմում են բրիգադներ և օգնում կերի կուտակմանը, աշնանը՝ կարտոֆիլի բերքահավաքին: Ձեռնարկության տնօրեն Հրանտ Ավագյանը, պատրաստակամ ու գործունյա մի անձնավորություն, նախանձախնդիր է ոչ միայն արտադրական, այլև գյուղի սոցիալական զարգացման հարցերում և ամեն կերպ աջակցում է նրա ղեկավարությանը՝ դրանք լուծելու համար: Նա հեռանկարում տեսնում է մի ինքնուրույն ձեռնարկություն, որն ինքը կարողանա հոգալ իր հոգսերը և ուղղակի կապի մեջ մտնել պատվիրատուների հետ...

Ժամանակի հետ բարձրանում է մարդկանց ճաշակը, աճում են նրանց պահանջմունքները: Դա բնորոշ է նաև Արագածի այսօրվա սերնդին: Նա ցանկանում է ունենալ նորատիպ, բարեշեն, ժամանակակից կահկարասիով կահավորված երկհարկանի ու բազմասենյականոց առանձնատուն: Ուրախալի է, որ տնտեսության դիրեկցիան ու գյուղխորհրդի գործկոմը ստեղծում են այդպիսի հնարավորություն: Անցած երեք տարում 185 ընտանիքի տնամերձ հողամաս է հատկացվել՝ առանձնատուն կառուցելու համար: Միայն անցած տարի բնակարանամուտի հանույքն է վայելել 55 նորաստեղծ ընտանիք: Գյուղխորհրդի գործկոմի նախագահը անքող հպարտությամբ է տեղեկացնում. «Այժմ երիտասարդները գյուղից հեռանում են միայն բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորելու առիթով (տնտեսության դիրեկտորը ընդհատում է նրան՝ սովորում, ավարտում ու վերադառնում են գյուղ), այդ առնչությամբ էլ ստեղծվում են նոր ընտանիքներ, ավելանում է բնակչության թիվը: Տարեկան 35—40 զույգ ամուսնության դաշն է կնքում, 100—105 ծնունդ է լինում: Հետևաբար, կամա-ակամա ծագում է նոր առանձնատուն ունենալու անհրաժեշտություն: Այս տարի ևս 15 երիտասարդ ընտանիքի հողամասեր ենք հատկացրել տուն կառուցելու համար: Էլ չենք ասում, որ այլ վայրերում ապրող մեր նախկին արագածցիները ցանկություն են հայտնում վերադառնալու գյուղ»:

Սոցիալական զարգացման հարցերը մշտապես գտնվում են կուսկազմակերպության, նրա բյուրոյի տեսադաշտում, ապահովվում է այդ գործի կուսակցական ղեկավարումն ու հսկողությունը: Հատկապես վերջին հաշվետու-ընտրական ժողովում սոցիալական զարգացման հարցերին մեծ ուշադրություն նվիրվեց, մասնավորապես խոսվեց գյուղը լիովին խմելու ջրով և բնական գազով ապահովելու մասին: Ժողովի որոշման հիման վրա կազմվեց ջրմուղի նախագիծը, նախատեսվեց ընթացիկ տարում 100 ընտանիքի ապահովել բնական գազով:

## ՎԱՂՎԱ ՕՐՎԱ ՄՏԱՀՈԳՈՒԹՅԱՄԲ

Հիմա գյուղի մարդկանց, կուսկազմակերպության, գյուղխորհրդի գործկոմի և պետական տնտեսության դիրեկցիայի մտահոգության առարկան գյուղի, տնտեսության վաղվա օրն է: Իսկ ի՞նչ է արվում այդ առնչությամբ: Տնտեսության դիրեկտոր Աղվան Կարապետյանը, ասես, հարցի պատասխանին պատրաստվել էր վաղօրոք: «Այսօր,— ասում է նա,— մեր գլխավոր հոգսը երկրաշարժի հետևանքների վերացումն է: Արդեն նախատեսվել է կառուցել 640 տեղանոց միջնակարգ դպրոցի շենք՝ բոլոր հարմարություններով, մանկապարտեզ, խանութ, 12 բնակելի տուն, նորոգել-ամրացնել մշակույթի տունը, գրասենյակը, անասնապահական շենքերը և այլն: Ընդ որում, նոր օբյեկտների մի մասը կառուցելու են Բելոռուսիայի ագրոարդի շինարարները: Բրեստի «Ագրոշին» տրեստն արդեն Ապարանում ստեղծել է իր № 303 ԾՄԾ-ն: Նրա մի ջոկատը, որը ղեկավարում է Իվան Պոզնյակը, օգնում է մեզ: Բրեստցիներն արդեն փոխել-նորացրել են գոմերի ներքին մեքենայացման համակարգը, կառուցել երկու առանձնատուն՝ մեկական ընտանիքի համար: Նրանք են կառուցելու 140 տեղանոց մանկապարտեզի և բանվորական ճաշարանի շենքերը:



digitised by A.R.A.R.@

Մենք էլ ձեռներս ծալած չենք նստելու. հիմնական նորոգումներն ու ամրացումները կանենք սեփական ուժերով: Պակաս կարևոր չէ նաև մյուս խնդիրը՝ ուժերի ներածին չափով ավանդ մուծել երկրաշարժի հետևանքների վերացման համազգային գործում: Նախ ասեմ, որ Սպիտակի շրջանի Գոգարան և Ջրաշեն գյուղերի տնտեսություններից բերել և պահում ենք 100 գլուխ տավար և 450 գլուխ ոչխար: Եվ երկրորդ՝ որոշել ենք նախատեսված պլանների համեմատությամբ զգալիորեն ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Մեր մարդիկ հաստատակամությամբ են տոգորված և անպայմանորեն կլուծեն իրենց առջև ծառացած խնդիրները: Սակայն արի ու տես, որ ոմանք տարակուսում էին, թե վերականգնողական աշխատանքները չենք կարող ավարտել նախատեսված ժամկետներում: Ոմանք էլ չէին հավատում, թե վարձակալական կապալը երկար կգործի: Առաջիններին գործով ենք ապացուցում. վերականգնողական աշխատանքներն արդեն սկսվել են: Իսկ մյուսներին վստահություն ներշնչեց ԽՄԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա մարտյան պլենումը»:

Եվ Կենտկոմի պլենումից հետո առանձնակի ակտիվություն նկատվեց արագածցիների մոտ. շատացավ ընտանեկան ու անհատական կապալով աշխատել և հողը վարձակալել ցանկացողների թիվը: Այդ օրերին գլխավոր հաշվապահ Համբարձում Հակոբյանի և տնտեսագետ Հրաչիկ Հարությունյանի աշխատանքային օրը հագեցած էր լուրջ հոգսերով: Նրանք արդեն պայմանագրեր են կնքել 40 ընտանիքի հետ՝ հինգ տարուց ավելի ժամանակով հողը կապալային և վարձակալական եղանակով մշակելու վերաբերյալ: Ընդ որում, կապալայիններին ու վարձակալներին հատկացվել է 30 հեկտար կարտոֆիլի, 10 հեկտար կաղամբի ցանքադաշտ, 300 հեկտարից ավելի ոչ մեքենահարմար խոտհարք: Իսկ հացահատիկի, ցանովի խոտաբույսերի, սիլոսային կուլտուրաների, մնացած 30 հեկտար կարտոֆիլի մշակումը և մեքենահարմար բնական խոտհարքների խնամքն ու հունձը կատարվելու են բրիգադային կապալի եղանակով:

Այսօր արագածցիներն աշխատում են կրկնապատկված եռանդով: Դրա վկայությունը դարձավ ԽՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի արդյունքներին նվիրված կուսակցական ժողովում ծավալված տաք ու գործարար խոսակցությունը: Ժողովականները նորից շեշտեցին կապալային աշխատանքի, հատկապես վարձակալական կապալի անհրաժեշտությունը և որոշեցին հետագայում առավել մեծ ուշադրություն նվիրել այդ եղանակի արմատավորմանը, ամեն կերպ աջակցել վարձակալներին՝ բարիքների առատություն ստեղծելու գործում, ընթանալ կուսակցության ագրարային քաղաքականությամբ նշված նորացման ուղիով...

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ ԵՎ ԱՐԳԵԼԱԿՄԱՆ ՈՒԺԵՐԸ

**Ռ. ՍԱՖԱՐՅԱՆ**

ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ԱՐՄԱՏԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ կոնցեպցիայում հիմնարար նշանակություն ունի տնտեսական ռեֆորմը՝ ձեռնարկությունների փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման։ Ի տարբերություն էկոնոմիկայի բարեփոխումների անցյալի չհաջողված փորձերի, ներկայումս անցկացվող արմատական ռեֆորմը բնութագրվում է տնտեսավարման պահպանողական ուժերի և հին մտածելակերպի նկատմամբ հեղափոխական բնույթով։ Այդ ուժերը բավականին կենսունակ են և կարող են դանդաղեցնել սկսված վերափոխումները, մարդկանց շահերի միջոցով գիտակցված նպատակահարմար գործունեության իրականացումը, որոնք կոչված են ապահովելու հասարակության սոցիալական օրգանիզմի բոլոր կողմերի զարգացումը։

Մեր հասարակության իրական հակասությունների բացահայտումը և հետազոտումը, որոնք ռեֆորմի միջուկն են, և անցյալի, հատկապես լճացման տարիների փորձի վերլուծությունը ցույց է տալիս կառավարման վարչական մեթոդների բացասական հետևանքները և տնտեսական կյանքում առաջ քաշում «պարենմասնատրումից պարենհարկին անցնելու» անհրաժեշտությունը, որը նշանակում է հիերարխիական կառավարման բոլոր աստիճաններում անցում վարչահրամայական մեթոդներից առավելապես տնտեսագիտական մեթոդների, առանձնասենյակային մոտեցողությունից՝ առողջ բանականության, կառավարողի կամայականությունից՝ աշխատավորների շահերով ու շահերի միջոցով կառավարելու անհրաժեշտության։

Ռեֆորմը բնութագրվում է էկոնոմիկայի կառավարման դեմոկրատացման, ցենտրալիզմի, ժողովրդական տնտեսության կենտրոնացված պլանային կառավարման և նրա առանձին օղակների ինքնակառավարման միասնության, պլանաչափության ու ապրանքադրամային հարաբերությունների նոր իմաստավորմամբ, որոնք, վերջին հաշվով, բերում են սոցիալիստական արտադրահարաբերությունների իրացման, հասարակության բարօրության համար արգասաբեր աշխատանքի խթանների ու ազդակների ավելի բարձր աստիճանի։

Տնտհաշվարկային հարաբերությունները, որոնք գիտականորեն արտահայտում են սոցիալիստական արտադրաեղանակի օբյեկտիվ պահանջները և տնտեսական մեխանիզմը ամբողջությամբ ու տնտհաշվարկը մասամբ համապատասխանեցնում էկոնոմիկայի նոր խնդիրներին և հնարավորություններին, ձևավորվել ու փորձարկվել են խորհրդային իշխանության անցած 70 տարիների ընթացքում։ Ըստ որում, դրանց հիմքում շարունակում են մնալ տնտհաշվարկի, ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման՝ Վ. Ի. Լենինի աշխատություններում մշակված տեսական դրույթները։ Տնտհաշվարկի անհրաժեշտությունը Վ. Ի. Լենինը կապում էր սոցիալիստական տնտեսության զարգացման տնտեսական պայմանների և, ամենից առաջ, նրանում ապրանքային արտադրության ու ապրանքադրամային հարաբերությունների առկայության հետ։ «Պետական ձեռնարկությունները այսպես կոչված տնտեսական հաշվարկի փոխադրելը անխուսափելիորեն և անխզելիորեն կապված է նոր տնտեսական քաղաքականության հետ, և մոտ ապագայում այդ տիպը անխուսափելիորեն կդառնա գերակշռող, եթե ոչ բացառիկ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 44, էջ 406)։ Կյանքը լիովին հաստատեց տնտհաշվարկի զարգացման լենինյան եզրակացության իրավացիությունը, և այսօր, ինքնաֆինանսավորման պայմաններում, դրա կիրառումը գործնականում դարձել է անհրաժեշտություն։

Այսօր ավելի, քան երբևէ, որոշիչ է դառնում լենինյան այն հանրահայտ դրույթը, որ սոցիալիստական տնտեսությունը անհրաժեշտ է կառուցել ոչ թե աշխատավորների անմիջական խանդավառության վրա, այլ խանդավառության օգնությամբ, մարդկանց անձնական շահագրգռության, տնտհաշվարկի հիման վրա։ Ստեղծելով տնտհաշվարկի հիմունքները, Լենինը առաջին հերթին անհրաժեշտ էր համարում ծախսերի ծածկումը ձեռնարկության ստացած դրամամուտքից։ Բնութագրելով տնտհաշվարկի էությունը, Վ. Ի. Լենինը ինքնածախսածածկումը կարևորում էր լայն իմաստով, ընդգծում «յուրաքանչյուր պետական ձեռնարկության անվնաս և շահութաբեր աշխատանքն ապահովելու խիստ հրամայական անհրաժեշտությունը» (նույն տեղը, էջ 406)։

Տնտհաշվարկի վերաբերյալ լենինյան դրույթներն արտացոլվել են կուսակցության և կառավարության որոշումներում ու տնտեսական-քաղաքական փաստաթղթերում։ Ժողովրդական տնտեսության՝ Գերագույն խորհրդի նախագահության 1921 թ. հունիսի 11-ի որոշման մեջ նշվում է այն սկզբունքի հաստատման անհրաժեշտությունը, որ ժողովրդական տնտեսության բնագավառում պետությունը ոչ մեկին ոչինչ ձրի չի տալիս, որ ամբողջ տնտեսական քաղաքականության հիմքում անհրաժեշտ է դնել տնտեսական հաշվարկը։

Կուսակցության XII համագումարի (1923 թ.) որոշումների «Արդյունաբերության մասին» բաժնում հատուկ նշվում է, որ հաղթանակած կարող է լինել միայն այն արդյունաբերությունը, որը տալիս է ավելի շատ, քան վերցնում է, որ պետական արդյունաբերության մեջ հավելյալ արդյունքի ստեղծման հարցը խորհրդային իշխանության ճակատագրի հարց է։

Խոսքն այստեղ, ըստ էության, սոցիալիստական մեթոդներով ստացված շահույթի և ինքնաֆինանսավորման մասին է, որ արդյունաբերության ու արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական և սոցիալական զարգացման բոլոր ծախսերը փոխհատուցվեն կոլեկտիվների վաստակած սեփական միջոցների հաշվին։ Հենց այդ դրույթն է բնութագրում սոցիալիստական ձեռնարկությունների գործունեության արդյունավետության աստիճանը։

Այսօր, ինքնաֆինանսավորման պայմաններում, իրական տնտհաշվարկի ներդրման համար, յուրաքանչյուր ձեռնարկության գլխավոր խնդիրն է նյութական և բարոյական խթանումը ուղղակի կախվածության մեջ դնել յուրաքանչյուրի անձնական աշխատանքային ավանդից, ձեռնարկության տնտեսական գործունեության վերջնական արդյունքներից։ Նշենք, որ նման հարցադրումը նոր չէ։ Ֆաբրիկաների աշխատանքների ընդհանուր արդյունքներին աշխատավարձի համապատասխանության անհրաժեշտությունը նշվել է դեռևս համամիութենական կենտրոնական գործադիր կոմիտեի 1918 թ. մայիսի 4-ի գրավոր կարգադրություններում։ Ժողովրդական կոմիսարների խորհրդի 1921 թ. ապրիլի 7-ի դեկրետով առաջարկվում է պարգևատրման մեծությունը հաստատել յուրաքանչյուր ձեռնարկության աշխատանքի արտադրողականությունից ելնելով։ Աշխատանքի և պաշտպանության 1921 թ. հունիսի 18-ի որոշման մեջ նշվում է, որ «ձեռնարկությանը աշխատավարձը տրվում է նրա աշխատանքի արդյունքներին համապատասխան...» (Сборник материалов и статей по вопросам коллективного снабжения. Издание центральной комиссии по снабжению рабочих при Наркомпроде. М., 1921, с. 5)։ Հետևաբար, դեռևս սոցիալիզմի կառուցման առաջին տարիներին աշխատավարձի և պարգևատրումների չափերը կախվածության մեջ են դրվել աշխատանքի արդյունքներից։ Տնտհաշվարկի կազմակերպման լենինյան այդ սկզբունքը ներկայումս ձեռք է բերում մեծ հրատապություն, քանի որ ուղղված է ամեն տեսակ համահարթումների դեմ։

Կուսակցության Կենտկոմի 1929 թ. դեկտեմբերի 5-ի «Արդյունաբերության կառավարման վերակազմման մասին» որոշման մեջ նշվում է, որ տնտհաշվարկը ձեռնարկության դեմքն է, այն խթանում է արտադրության ռացիոնալացումը... բյուրոկրատիզմի և քաշքշուկի տարրերի դեմ հակագործողությունը։ Անցումը տնտեսական հաշվարկի միաժամանակ նպաստում է ձեռնարկության արտադրական հաշվառման ռացիոնալացմանը և այդ գործունեության հետ զանգվածների ծանոթացմանը (տե՛ս

*ՍԱՖԱՐՅԱՆ ՌԱՖԻԿ ԳԱՌՆԻԿԻ— տնտեսագիտության թեկնածու, ԵրԺՏԻ ժողտնտպլանավորման ամբիոնի դոցենտ։*





digitised by A.R.A.R.@

Решение партии и правительства по хозяйственным вопросам, М., 1967, т. 2, с. 136):

Լրիվ տնտհաշվարկը ենթադրում է լրիվ ծախսերի համադրում լրիվ արդյունքների հետ: Ինքնաֆինանսավորման պայմաններում լրիվ ծախսերի թվին պետք է դասել ոչ միայն եկամուտներից փոխհատուցվող ընթացիկ շահագործական և ընդլայնված վերարտադրության ծախսերը, այլև հասարակական տեսակետից լրիվ ծախսերը, որոնք նախատեսում են ռեսուրսների բոլոր տեսակների վճարումներ արդյունավետության գիտականորեն հիմնավորված նորմատիվներով, ապահովում են աշխատանքային կոլեկտիվի կամ ձեռնարկության և երկրի ժողովրդատնտեսական շահերի զուգակցումը: Լրիվ տնտհաշվարկի հատկապես նման ըմբռնումը ենթադրում է ինքնածախսածածկման գաղափարը, երբ եկամուտներով հետ են գնվում արտադրանքի արտադրության և իրացման ծախսերը, և **ինքնաֆինանսավորում,** երբ ձեռնարկության արտադրական ու սոցիալական զարգացման բոլոր ծախսերը փոխհատուցվում են սեփական եկամուտների հաշվին: Ընդ որում, անհրաժեշտ է հաշվի առնել, որ առաջին փուլում ինքնաֆինանսավորումը ներառում է միայն տեխնիկական վերազինման և վերակառուցման միջոցները: Իսկ ինչ վերաբերում է նոր շինարարության հաշվին ընդլայնված վերարտադրությանը, ապա այդ նպատակների համար առայժմ օգտագործվում են պետական բյուջեի միջոցները՝ կենտրոնացված կապիտալ ներդրումների ձևով: Սակայն դա կարելի է բնորոշել որպես ժամանակավոր միջոցառում, քանի որ, ըստ էության, ինքնաֆինանսավորումը ենթադրում է ոչ միայն սեփական, այլև վերադարձման սկզբունքով բանկի միջոցների (այդ թվում երկարատև վարկի) օգտագործում, որը հնարավորություն է տալիս հետագայում իրականացնել նաև նոր շինարարություն: Ինքնաֆինանսավորումը միայն այն ժամանակ կարող է իրեն լրիվ դրսևորել, երբ իր հետևից չի թողնի անաշխատ եկամուտների առացման «ճեղքեր»: Հենց այդպիսի ինքնաֆինանսավորումն է, որ համապատասխանում է մարքսյան այն բանաձևին, ըստ որի կոլեկտիվիզմի սկզբունքների, արտադրության միջոցների ընդհանուր տիրապետման վրա հիմնված հասարակությունում... յուրաքանչյուր առանձին արտադրող հասարակությունից հետ է ստանում բոլոր հանումներից հետո ճիշտ այնքան, որքան ինքը տվել է նրան (տե՛ս Маркс К., Энгельс Ф., Соч., т. 19, с. 18).

Լրիվ տնտհաշվարկի համեմատությամբ ինքնաֆինանսավորման հարաբերական ինքնուրույնությունը արտահայտվում է նրանում, որ տնտհաշվարկի հասկացությունը ավելի ծավալուն և համապարփակ է, քանի որ բացի ինքնածախսածածկումից և ինքնաֆինանսավորումից այն ներառում է ձեռնարկության տնտեսաօպերատիվ ինքնուրույնությունը (ինքնապլանավորում, ինքնամատակարարում, աշխատավորների ընդգրկում տնտեսության կառավարման մեջ ընդհուպ մինչև ինքնակառավարման անցնելը), աշխատողների նյութական շահագրգռությունը և պատասխանատվությունը, ռուբլով ձեռնարկության և նրա արտադրական օղակների աշխատանքի հսկողությունը, տնտհաշվարկային գործունեության իրավական նախադրյալները, իրավական անձի իրավունքը, պայմանագրային պատասխանատվությունը և այլն:

Ինքնաֆինանսավորման պայմաններում ինքնածախսածածկմամբ աշխատող ձեռնարկությունները, ըստ էության, տնտեսապես վնասաբեր ձեռնարկությունների միայն արտաքնապես «բարենպաստ» ձևն են: Այդ պատճառով էլ, մաթեմատիկական լեզվով ձևակերպելով, ինքնածախսածածկումը կարելի է ներկայացնել որպես լրիվ տնտհաշվարկի անհրաժեշտ, բայց ոչ բավարար պայման: Ի տարբերություն ինքնածախսածածկման, ինքնաֆինանսավորման մեխանիզմը բացառում է ինչպես վնասաբեր, այնպես էլ ցածր շահութաբեր ձեռնարկությունների գոյությունը: Եթե ելնենք լրիվ տնտհաշվարկի շատ կարևոր հիմնարար այն սկզբունքից, որ պետությունը պատասխան չի տալիս ձեռնարկության հաշիվների համար, ապա նման ձեռնարկությունները, նոր տնտեսական մեխանիզմի տրամաբանությամբ, հետագայում ենթակա են վերակազմման կամ փակման՝ որպես անարդյունավետ: Նշենք, որ այսօր մեր երկրի յուրաքանչյուր տասներորդ ձեռնարկություն վնասաբեր է, այսինքն ոչ միայն չի հարստացնում պետական գանձարկղը, այլև, ընդհակառակն, այնտեղից վերցնում է զգալի միջոցներ:

Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 13 տոկոսը վնասաբեր է: Վնասաբեր ձեռնարկությունների թիվը հատկապես մեծ է հանրապետության պետագրոարդի վերամշակող արդյունաբերության ճյուղում, ուր նման ձեռնարկությունների տեսակարար կշիռը կազմում է շուրջ 30 տոկոս և վնասաբեր է 121 արտադրատեսակ: Բավական է նշել, որ միայն պահածոների արդյու-



նաբերության 12 ձեռնարկությունից 9-ը աշխատում է վնասով, ինչը զգալիորեն դժվարացնում է ճյուղի փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման:

Ճյուղի վնասաբերությունը, սուբյեկտիվ պայմանների հետ մեկտեղ, պայմանավորված է գործունեության օբյեկտիվ պատճառներով, մեծ մասամբ հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներին չհամապատասխանող, ցածր մեծածախ գներով, որոնք պահանջում են ծախսերը փոխհատուցել պետական դոտացիաների հաշվին, և ձեռնարկությունների արտադրատնտեսական գործունեությունից չկախված վնասներով: Այսպես, մսամթերքների արտադրության գնման մեծածախ գների տարբերության պատճառով 1 ռ. ապրանքային արտադրանքի հաշվով պետբյուջեի դոտացիաները կազմում են ավելի քան 70 կոպեկ: Պահածոների արդյունաբերության մեջ գոյություն ունեցող մանրածախ և մեծածախ գների տարբերության հետևանքով 1 ռ. ապրանքային արտադրանքի հաշվով պետբյուջեի վերադիրները կազմում են ավելի քան 25 կոպեկ: Մյուս ճյուղերից վերաբաշխմամբ զգալի դոտացիաներ և միջոցներ են ստանում «Հայգարեջուրարդ» արտադրամիավորման ձեռնարկությունները: Նման աղբյուրներից են ֆինանսավորվում նաև «Հայհանքջրեր» միավորման ձեռնարկությունները: Այս ճյուղում արդեն երկար ժամանակ օգտագործվում են ոչնչով չհիմնավորված մեծածախ գներ: Դա նշանակում է, որ արտադրանքի իրացման հետ կապված փոխադրման ծախսերը վճարում են հանքային ջրերի լցման ձեռնարկությունները: Փոխադրման մեծ ծախսերն էլ հենց վնասաբերության հիմնական պատճառ են և զգալիորեն խոչընդոտում են ճյուղում տնտհաշվարկային հարաբերությունների ամրապնդմանը:

Արտադրության վնասաբերության և վնասաբեր արտադրատեսակների վերացումը, իհարկե, կապված է գնագոյացման բարդ ու բազմակողմանի հարցերի հետ: Սակայն վնասաբերությունից շահութաբեր աշխատանքի անցնելու կարևոր գործոններ են նաև աշխատանքի և արտադրության կազմակերպման թերությունների վերացման տնտեսական, կազմակերպական և տեխնիկական համալիր միջոցառումների անցկացումը, եղած ռեզերվների բացահայտումն ու օգտագործումը, ներարտադրական տնտհաշվարկի կատարելագործումը, աշխատողներին ըստ աշխատանքային ավանդի վարձատրության և պարգևատրման ճիշտ կազմակերպումը:

Հարկ է նշել, որ 1988 թ. տնտեսավարման նոր պայմաններում աշխատել է 440 հազար մարդ (ժողովրդական տնտեսության արտադրական ճյուղերում զբաղվածների ընդհանուր թվի 53 տոկոսը): Այսօր արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 47 տոկոսը, որոնց բաժին է ընկնում թողարկվող արտադրանքի 58 տոկոսը և պայմանագրային մատակարարումների ծավալի մոտ 65 տոկոսը, աշխատում է լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում: Թվում է, թե արտադրական ձեռնարկությունների այսպիսի զանգվածային փոխադրումը նոր տնտեսական մեխանիզմի պետք է հանգեցներ դրական տեղաշարժերի և նպաստեր ավելի բարձր վերջնական արդյունքների ձեռքբերմանը: Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հատկապես տնտեսավարման նոր ձևերի կիրառումից հետո մեր հանրապետության տնտեսական կենսագործունեության շատ ոլորտներում, այդ թվում նաև արդյունաբերության մեջ, ավելի ցայտուն են դրսևորվում կազմալուծման և տնտեսական լճացման անող տարրերը, որոնք հասել են այնպիսի պատկառելի չափերի, որ, ըստ էության, խախտում են հասարակական ամբողջական արդյունքի ընդլայնված վերարտադրության ամբողջ պրոցեսը, և արգելակում առաջընթաց զարգացումը, մեր էկոնոմիկան, փաստորեն, դարձնում անկառավարելի, անվերահսկելի: Այսպես, ընթացիկ հնգամյակի երեք տարիների ընթացքում մեր հանրապետությունում ազգային եկամուտը ավելացել է ընդամենը 5 տոկոսով, արդյունաբերական արտադրության ծավալը՝ 10,9 տոկոսով: Մինչդեռ ըստ հնգամյակի առաջադրանքների դրանք պետք է կազմեին համապատասխանաբար 12,7 և 15,3 տոկոս: Շատ տնտեսագետներ հակված են նման երևույթը բացատրելու 1988 թվականի չկանխատեսված դեպքերով (երկրաշարժ և այլն): Դա հերքելու համար բավական է նշել, որ տասներկուերորդ հնգամյակի առաջին երկու տարում ազգային եկամտի աճի տարեկան միջին տեմպերը տասնմեկերորդ հնգամյակի համեմատությամբ դանդաղել են 2,4 անգամ: Էապես նվազել են նաև արդյունաբերական արտադրության աճի տեմպերը: Անցած տարվա տասնմեկ ամսում (մինչև երկրաշարժն ընկած ժամանակամիջոցում) ամբողջությամբ վերցրած երկրի արդյունաբերական արտադրության 4,0 տոկոս ընդհանուր աճի դեպքում մեր հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի թողարկումը ավելացել է ընդամենը 0,4 տոկոսով,



digitised by A.R.A.R.@

այսինքն հետ է մնում 10 անգամ: Այս բացասական միտումները ուղղակի հետևանք են բացարձակապես անբավարար արտադրական գործունեության, պետական ու աշխատանքային ցածր կարգապահության և, որ ամենակարևորն է, տնտեսական ռեֆորմի իրականացմանը խոչընդոտող պահպանողական և բյուրոկրատական ուժերի հակազդման: Հարկ է նշել, որ այդ տարիներին առանձնապես անբավարար են աշխատել տնտեսավարման նոր պայմանների անցած ձեռնարկությունները և միավորումները: Լրիվ տնտհաշվարկով և ինքնաֆինանսավորմամբ աշխատող ձեռնարկություններում արտադրության զարգացումն ընթացել է 0,8 կետ թերացմամբ, իսկ պայմանագրային պարտավորությունների կատարման մակարդակի գծով՝ 3,3 կետ: Նոր պայմաններում աշխատող յուրաքանչյուր երկրորդ ձեռնարկություն չի կատարել պայմանագրային պարտավորությունները: Թերամատակարարվել է ավելի քան 235 միլիոն ռուբլի ընդհանուր գումարի արտադրանք, ինչը կազմում է հանրապետության բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների կողմից սպառողներին չմատակարարված արտադրանքի 96 տոկոսը (արդյունաբերական արտադրանքի մատակարարումների պայմանագրային պարտավորությունները կատարվել են 96,8 տոկոսով՝ երկրի 98,9-ի դիմաց): Նշենք, որ այդ բացասական երևույթները դրսևորվում են այն դեպքում, երբ միայն Երևանում, ուր կենտրոնացված է հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների մոտ կեսը և արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի 42 տոկոսը, այսօր արդեն 98 ձեռնարկություն աշխատում է լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում: Սակայն մինչև օրս նրանց աշխատանքում շոշափելի տեղաշարժեր չկան: Ավելին, այդ ձեռնարկությունների մեծամասնությունը ներկայումս սնանկացման եզրին է, իսկ ձեռնարկությունների 20 տոկոսից ավելին 1988 թվականը փակել է վնասով: 1989 թ. փետրվարին Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի ընդլայնված նիստում վերլուծելով հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման 1988 թ. և տասներկուերորդ հնգամյակի երեք տարիների արդյունքները, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Գ. Հարությունյանը նշեց, որ «... այն հետևությունն է բխում, որ ձեռնարկությունների ու կազմակերպությունների փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման կատարվում է ձևականորեն, առանց անհրաժեշտ և խնամքով նախապատրաստված աշխատանքի, առանց ներարտադրական տնտհաշվարկի սկզբունքների ռեալ արմատավորման»:

Տնտեսական մեխանիզմի արդյունավետությունը լիովին չդրսևորվեց նաև այն պատճառով, որ տնտեսավարման նոր պայմանների փոխադրված ձեռնարկությունների 95 տոկոսն աշխատում է տնտհաշվարկի առաջին՝ նորմատիվային մոդելով, այն դեպքում, երբ Միության առաջավոր փորձը ցույց է տալիս, որ դրությունը համեմատաբար լավ է այն ձեռնարկություններում, որոնք նոր պայմանների փոխադրվելուց հետո աշխատում են տնտհաշվարկի երկրորդ՝ մնացորդային մոդելով: Այստեղ հարկ է նշել, որ տնտեսական մեխանիզմը հատկապես լրիվ ուժով գործում է տնտհաշվարկի երրորդ մոդելի՝ վարձակալական կապալի ներդրման դեպքում:

Վերադաս կազմակերպությունների թելադրանքով հրաժարվելով մնացորդային տնտհաշվարկից, շատ ձեռնարկություններ փաստորեն հակազդում են արտադրության վրա տնտեսական մեթոդների ներգործությանը՝ հօգուտ վարչական մեթոդների: Բանն այն է, որ տնտհաշվարկի նորմատիվային մոդելի դեպքում տնտեսավարման վարչական մեթոդների էությունը չի փոխվում: Նորմատիվային մոդելի կիրառման ժամանակ վաստակված բոլոր միջոցները վերադաս կազմակերպության կողմից բաշխվում են ըստ ֆոնդերի, վարչական մեթոդներից միայն այն տարբերությամբ, որ նորմատիվային մոդելի դեպքում բացարձակ գումարները փոխարինվում են հատկացումների նորմատիվներով, և որքան ու ինչ նպատակներով ծախսել այդ միջոցները, ըստ էության, որոշվում է «վերևում»: Մինչդեռ իսկական տնտեսավարը առաջին հերթին նա է, ով ինքնուրույն է տնօրինում իր աշխատանքի արդյունքները: Պրակտիկան մեկ անգամ ևս ապացուցում է, որ լիարժեք տնտեսավար կարելի է դառնալ միայն մնացորդային, առավել ևս՝ վարձակալական տնտհաշվարկի պայմաններում, որոնք ազատված են բյուրոկրատական արգելքներից: Անհրաժեշտ է, որ ոչ թե մինիստրությունները, այլև իրենք՝ ձեռնարկությունները, պատասխան տան իրենց աշխատանքի արդյունքների համար, ոչ թե մինիստրությունները տնօրինեն վաստակած միջոցները, այլ իրենք՝ ձեռնարկությունները: Միայն այս պայմաններում է լրիվ ինքնակառավարումը դառնում կենսական անհրաժեշտություն, իսկ աշխատանքային կոլեկտիվների խորհուրդը՝ ձեռնարկության գլխավոր մարմին, ձեռնարկության վարչությունն ու ղեկավարությունը՝ խորհրդին լրիվ հաշվետու: Ի տար-



digitised by

բերություն նորմատիվայինի, տնտհաշվարկի մնացորդային մոդելի էությունն այն է, որ աշխատանքի վերջնական արդյունքների համար պատասխանատվությունն ամբողջապես ընկնում է ձեռնարկության կոլեկտիվի վրա, նա դառնում է իր վաստակած միջոցների իսկական տերը: Իսկ դա օբյեկտիվորեն պայմանավորում է ձեռնարկությունների իրավունքների արմատական ընդլայնումը:

Մեր կարծիքով, ավելի հեռանկարային է տնտհաշվարկի երկրորդ մոդելը՝ վարձակալական կապալի զուգակցմամբ, երբ յուրաքանչյուրի անձնական ավանդն է որոշում աշխատավարձի և պարգևատրումների չափը, քանի որ վերջիններս ուղղակիորեն կախված են կոլեկտիվի տնտհաշվարկային եկամտից: Հենց այդ դրույթի հիման վրա պետք է ձևավորվի նաև ներգործարանային տնտեսական մեխանիզմը:

Հանրապետության պետագրոարդի վերամշակող ձեռնարկություններում կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ դրանցից շատերում ներգործարանային տնտհաշվարկի կազմակերպումը ծայրաստիճան ցածր մակարդակի վրա է, հաճախ ձևական բնույթ է կրում և հանգում է արտադրական ստորաբաժանումների համար մեկ, լավագույն դեպքում երկու ցուցանիշների հաստատման, որոնցից առաջինը արտադրության ծավալն է, իսկ երկրորդը՝ աշխատավարձի ֆոնդը: Շատ դեպքերում պարգևավճարումները ստացել են երաշխավորված վճարումների ձև և չեն կատարում արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրական ստորաբաժանումների ու աշխատողների կողմից բարձր վերջնական արդյունքների ձեռքբերման իրենց խթանիչ դերը: Այս գործում, որքան էլ տարօրինակ լինի, արգելակող ուժ է ձեռնարկության ղեկավարությունը, քանի որ տնտհաշվարկը բացահայտում է արտադրության թաքնված ռեզերվներ:

Մեր կարծիքով, տնտեսավարման նոր պայմաններում ներգործարանային տընտհաշվարկի զարգացումը և կատարելագործումը պետք է ուղեկցվեն արտադրական ստորաբաժանումների գործունեության տեխնիկատնտեսական պլանավորման մեջ շահույթի ու շահութաբերության ցուցանիշների դերի ուժեղացմամբ: Նշենք, որ ոչ բոլոր տնտեսագետներն են համակարծիք, որ շահույթի և շահութաբերության ցուցանիշները հասցվեն մինչև արտադրամասեր: Դրա հետ մեկտեղ, երբեմն շահույթը և արտադրանքի ինքնարժեքը ոչ իրավացիորեն հակադրվում են միմյանց: Շահույթը ֆունկցիա է ինքնարժեքից: Սակայն ոչ միայն նրանից: Չնսեմացնելով ինքնարժեքի նշանակությունը, պետք է ընդունել, որ շահույթը ու շահութաբերությունը լրիվ բնութագրում են արտադրական գործունեության արդյունքները: Արտադրական ստորաբաժանումների աշխատանքից է կախված ձեռնարկության հիմնական և շրջանառու ֆոնդերի օգտագործումը, որը, սակայն, անբավարար է արտահայտվում ինքնարժեքի ցուցանիշում: Արտադրական ստորաբաժանումներում շահույթի պլանավորումը ոչ միայն չի նվազեցնում ինքնարժեքի նշանակությունը, այլև ուժեղացնում է դրա դերը, քանի որ միայն արտադրության գործոնների, բոլոր արտադրական ռեսուրսների, ինչպես նաև ինքնարժեքի իջեցման բոլոր հնարավորությունների լրիվ օգտագործմանը նպատակամղված ակտիվ աշխատանքով կարող են ձեռք բերվել պլանավորվող շահույթը և շահութաբերության մակարդակը: Մեր լավագույն ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ նշված ցուցանիշների պլանավորման համար կարևոր դեր ունեն հաշվարկային գները: Դրա հետ կապված, շատ ձեռնարկությունների, հավանաբար, հարկ կլինի մշակել ներգործարանային գների և նորմատիվների համակարգ, որը հաշվի կառնի միայն արտադրական այս կամ այն ստորաբաժանման գործունեությամբ պայմանավորված գործոնները:

Նոր պայմաններում, ներարտադրական տնտհաշվարկի ներդրման համար կարևոր խնդիր է առանձին ստորաբաժանումների, տեղամասերի, բրիգադների արտադրական ծախսերի և գործունեության արդյունքների արժանահավատ հաշվառման կազմակերպումը: Հաշվառման իսկության համակարգը ներգործարանային տնտեսական մեխանիզմի ամենակարևոր տարրն է: Առանց դրա գործադրման տնտհաշվարկը և ինքնաֆինանսավորումը ձևական բնույթ կստանան: Հատկապես այժմ առանձնահատուկ խորությամբ պետք է ընկալվեն Վ. Ի. Լենինի «Սոցիալիզմը առաջին հերթին հաշվառում է» խոսքերը: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հաճախ նույնիսկ խոշոր տնտեսական ստորաբաժանումներում՝ արտադրամասերում, չկան տնտեսագետներ, նորմավորողներ, հաշվապահներ: Երբեմն նպատակահարմար է այդ մասնագիտությունների կադրերի որոշ մասին հանել գործարանի ղեկավարման ապարատից և ուղարկել ավելի ստորին արտադրական օղակներ: Արտադրամասերը, տեղամասերը տնտեսագիտական կադրերով ուժեղացնելով միայն կարելի է հասնել պատշաճ հաշվառման և հաշվետվության:



A.R.A.R.@

Լրիվ տնտհաշվարկը և ինքնաֆինանսավորումը տնտեսական մեխանիզմի և վերակառուցման, որպես ամբողջական, կոմպլեքսային համակարգի, կատարելագործման գործուն լծակներ են: Սակայն դա չի նշանակում, թե դրանք կարող են ինքնահոս ձևով պրակտիկայից դուրս մղել «ինքնուրույն» վարչակազմի բոլոր բացասական գծերը: Այդ են վկայում տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման նոր պայմաններում աշխատող ձեռնարկությունների գործունեության տվյալները: Այսպես, նոր պայմաններում աշխատող 74 ձեռնարկությունում արտադրանքի ծավալը զգալիորեն նվազել է, վատացել է դրությունը նաև ֆինանսական մի շարք ցուցանիշների՝ շահույթի, տնտեսական խթանման ֆոնդերի գծով, որոնք ավելի ցածր են, քան նախորդ տարիներին: Վիճակը վատ է հատկապես էլեկտրատեխնիկական, թեթև և տեղական արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկություններում: Նման դրությունը բացատրվում է նրանով, որ այդ ճյուղերում գործերի ընթացքն արգելակում են հակավերակառուցողական, պահպանողական ուժերը, որոնք արմատական ռեֆորմի մեջ իրավացիորեն տեսնում են իրենց չվաստակած դիրքի կործանումը: Եվ պատահական չէ, որ եթե նախորդ տնտեսական ռեֆորմների (1965 թ., 1979 թ.) ժամանակ այդ պահպանողական ուժերը ղեկավարվում էին «չհամաձայնվելու» սկզբունքով, ապա այժմ, փոխելով տակտիկան, անցել են հանգիստ, սպասողական դրության՝ «համաձայնվելու», որի հետևանքով դեռևս ոչ մի լուրջ փոփոխություն չի կատարվել:

Վերակառուցման հակառակորդների անցանկալի գործողությունների չեզոքացման համար անհրաժեշտ է ուժեղացնել արագ գործող վերնաշենքային «հակաթույները»՝ ուղղված կաշառակերության, անվանացանկային անձանց համախմբման, բյուրոկրատական ինքնիշխանության, հովանավորչության դեմ, որոնք «ստվերային» էկոնոմիկայի առաջացման պայմանն են և նյութական ու բարոյական խոշոր վնաս են հասցնում ժողովրդական տնտեսությանը, հող ստեղծում տնտեսական ռեֆորմի վարկաբեկման ու սոցիալական անարդարության համար: Նշենք, որ հենց լճացման ժամանակաշրջանի սոցիալական անարդարությունն է հանգեցրել նրան, որ աշխատավորները անտարբեր են իրենց տնտեսական վիճակի նկատմամբ և հասարակական սեփականությանը վերաբերվում են որպես «ոչ մեկինի»: Այդ պատճառով էլ շատերին հայտնի են արտադրությունում ստեղծված համահարթման կարգերը (ավելի ճիշտ՝ անկարգությունները), որոնք խլացնում են ամեն մի նախաձեռնություն, հասարակայնորեն անհրաժեշտ ամեն մի ձգտում, սակայն փոխարենը ապահովում են հանդուրժելի գոյությունը այն ամենի, ինչը յուրաքանչյուր աշխատողից չի պահանջում բարձր ինքնահատույց: Եվ զարմանալի չէ, որ աշխատավորական լայն զանգվածների մեջ տարածված իներտությունը, խնամառուական մոտեցումը, անհետաքրքրությունը և անտարբերությունը իրենց աշխատանքի նկատմամբ, լինելով տնտեսական համակարգի «անտնտեսվար թեքման» ուղղակի հետևանք, դարձել են արգելակման մեխանիզմի առավել հզոր ուժերը:

Տնտեսական ռեֆորմը կոչված է արագացնելու վերակառուցումը, ամրացնելու դրա նյութական հիմքը: Այն պետք է հետևողականորեն ընթանա կառավարման բոլոր օղակների դեմոկրատացման ուղիով, դրանով իսկ կանխելով նրանց մեկուսացվածությունը, ուժեղացնի յուրաքանչյուր օղակի և մարդու պատասխանատվությունը հասարակության հանդեպ, ակտիվացնի աշխատավորների տնտեսատիրոջ կացությունը և, մեր կարծիքով ամենագլխավորը, մշակի նոր մոտեցումներ սոցիալիստական սեփականության, աշխատանքի և վարձատրության՝ յուրաքանչյուրին ըստ քանակի և որակի սկզբունքի նկատմամբ:

---

# ՄԱՅՐԱՔԱՂԱՔ. ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏՆՏԵՍԱԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՍՊԵԿՏՆԵՐ

**Ա. ՎԱԼԵՍՅԱՆ**

ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԲՆՈՐՈՇ առանձնահատկություններից են ուրբանիզացման պրոցեսի գլոբալ մասշտաբները, հասարակության կյանքում դրա դերի բարձրացումը: Այդ պրոցեսի ծավալումը հատկապես բուռն է ընթանում սկսած XX դարի կեսերից՝ գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում արտադրողական ուժերի համակենտրոնացմանը զուգընթաց:

Ուրբանիզացման մակարդակի հիմնական ցուցանիշներից է քաղաքաբնակների տոկոսը բնակչության ընդհանուր թվում: Ներկայումս քաղաքներում է բնակվում աշխարհի բնակչության ավելի քան 40 տոկոսը, այդ թվում Աֆրիկայի և արտասահմանյան Ասիայի բնակչության ավելի քան 30 տոկոսը, Լատինական Ամերիկայի, Հյուսիսային Ամերիկայի, արտասահմանյան Եվրոպայի և Ավստրալիայի բնակչության մոտ 70 տոկոսը: ԽՍՀՄ քաղաքներում ապրում է ամբողջ բնակչության 65, Հայկական ԽՍՀ-ում՝ ավելի քան 68 տոկոսը (առ 01. 01. 1988):

Ուրբանիզացման պրոցեսի մասշտաբները և դինամիզմն այսօր հատկապես հրատապ են դարձնում դրա օրինաչափությունների ուսումնասիրումը: Պրոբլեմի բարդությունը թելադրում է բազմակողմանի մոտեցում նրա նկատմամբ: Եվ պատահական չէ, որ ներկայումս այն կարևոր տեղ է գրավում տնտեսագիտական, պատմագիտական, սոցիոլոգիական, ժողովրդագրական, քաղաքաշինական և, իհարկե, աշխարհագրական ուսումնասիրություններում:

Ուրբանիզացման դրսևորումներից է խոշոր քաղաքների արագ զարգացումը: Այսպես, ներկայումս դրանց (ավելի քան 100 հազ. բնակիչ) թիվը աշխարհում 2000-ից գերազանցում է, իսկ մեկ մլն-ից ավելի բնակիչ ունեն 200 քաղաքներ, որից ԽՍՀՄ-ում՝ 24-ը: Ընդ որում գնալով ավելի ու ավելի ակնհայտ է դառնում խոշոր քաղաքների զարգացման հակասական բնույթը:

Միանշանակ չէ գիտատեխնիկական առաջադիմության ազդեցությունը խոշոր քաղաքների վրա, որոնք ավելի ու ավելի մեծ ուշադրություն են գրավում որպես յուրահատուկ միջավայր և «բնություն-հասարակություն» համակարգի կարևոր տարր: Խոշոր քաղաքների հետ կապված պրոբլեմների և հասարակության զարգացման ասպեկտների թվարկումը կարելի է շարունակել: Եվ, հավանաբար, չափազանցություն չի լինի ասելը, որ խոշոր քաղաքներում, ինչպես կիզակետում, կենտրոնացված են հասարակության զարգացման արդի պրոբլեմների մեծամասնությունը, որոնք մանրամասն ուսումնասիրության կարիք են զգում:

Ուրբանիզացման արագ պրոցեսը, ինչպես մեր երկրում, այնպես էլ նրա սահմաններից դուրս գիտնականների առջև դրել է խոշոր քաղաքների աճի կարգավորման խնդիրը, որը առանձնահատուկ երանգներ է ստանում մայրաքաղաքների համար:

Գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում մայրաքաղաքները բնորոշվում են հատուկ դինամիզմով: Դրանք կարևորագույն քաղաքական, տնտեսական, գիտական և մշակութային կենտրոններ են: Մայրաքաղաքներն իրենց շուրջը ձևավորում են հատուկ՝ այսպես կոչված «մայրաքաղաքային ռեգիոններ», որոնք աչքի են ընկնում ակտիվ տնտեսաաշխարհագրական դիրքով, ձգողական ուժով,

---

*ՎԱԼԵՍՅԱՆ ԱՐՄԵՆ ԼԵՄՎԵԼԻ— ԽՍՀՄ ԳԱ աշխարհագրության ինստիտուտի ասպիրանտ։*



digitised by A.R.A.R.@

չափազանց մեծ գիտատեխնիկական և սոցիալ-ինֆորմացիոն պոտենցիալով, դառնում են յուրահատուկ «ապագայի մոդելներ», առաջադեմ գաղափարների գեներատորներ:

Պատմելով Փարիզի մասին, «Փարիզի աստվածամոր տաճարը» վեպում Վիկտոր Հյուգոն այսպես է բնորոշում մայրաքաղաքներին առանձնահատուկ հատկանիշները. «Դրանք ձագարներ են, ուր տանում են երկրի բոլոր աշխարհագրական, քաղաքական, բարոյական և մտավոր հյութերը, ուր ուղղված են մի ամբողջ ժողովրդի բնական հակումները, դրանք, այսպես ասած, քաղաքակրթության գանձերն են, բայց միաժամանակ և ջրանցքներ, ուր կաթիլ-կաթիլ դարեր շարունակ առանց դադարի հավաքվում են առևտուրը, բնակչությունը, այն ամենն, ինչ բեղուն է, կենսատու, ինչը որ կազմում է ազգի ոգին»:

Թվարկված հատկանիշները բնորոշ են նաև մեր մայրաքաղաքին: Հին Երևանը մի խուլ գավառական բնակավայր էր, որի բնակչությունը 1897 թ. մարդահամարից հետո գրեթե չէր ավելանում, կազմելով 30 հազար մարդ: Խորհրդային իշխանության տարիներին Երևանը դարձավ խոշոր ինդուստրիալ, գիտական և մշակութային կենտրոն, հանրապետությունում գիտատեխնիկական առաջընթացի հիմնական կրող: Քաղաքի բնակչությունը գերազանցեց մեկ միլիոնից: Այստեղ կենտրոնացվեցին կառավարական հիմնարկները, այլ հանրապետական մարմիններ և կազմակերպություններ: Քաղաքն իր վրա վերցրեց կազմակերպիչ կենտրոնի դերը, վարչականորեն և տնտեսապես միավորելով ամբողջ հանրապետության տարածքը:

Երևանը մշտապես գտնվել է Հայաստանում ծավալված սոցիալիստական շինարարության հանգուցակետում՝ այստեղ կառուցվեցին ավելի քան 200 արդյունաբերական ձեռնարկություններ, մնացածները, որոնք հիմնադրվել էին նախախորհրդային ժամանակաշրջանում, արմատապես վերակառուցվեցին: Երևանին բաժին է ընկնում խորհրդային իշխանության բոլոր տարիներին հանրապետությունում իրացրած կապիտալ ներդրումների ավելի քան մեկ երրորդը: Անցյալում հետամնաց ագրարային երկրի սոցիալական վերակառուցման համար անհրաժեշտ էր ստեղծել հզոր ինդուստրիալ կենտրոն, որը կարողանար իր հետևից տանել ամբողջ հանրապետությունը: Հենց այդ նպատակով իրականացվում էր մի տնտեսական քաղաքականություն, որն ուղղված էր Երևանի առաջանցիկ զարգացմանը:

Հատկապես բուռն վերելք ապրեց Երևանը հետպատերազմյան տարիներին: Արագ կերպով աճեցին գիտատեխնիկական առաջընթացը խթանող ճյուղերը՝ ճշգրիտ մեքենաշինությունը, սարքաշինությունը, էլեկտրատեխնիկան, ռադիոէլեկտրոնիկան: Մյուս կողմից, մայրաքաղաք լինելը պատճառ հանդիսացավ քաղաքի պրոբլեմների և հակասությունների սրմանը: Այսպես օրինակ, մայրաքաղաքի բազմապիսի առավելությունները դեպի իրենց էին ձգում նոր արտադրություններ, սակայն քաղաքի տարածական աճի սահմանափակ հնարավորությունները, ջրամատակարարման և բնության պահպանության պրոբլեմները նոր շինարարությունը դարձնում էին ոչ նպատակահարմար: Այս հակասության մասնակի լուծում հանդիսացավ Երևանի մերձքաղաքային տարածքների բուռն զարգացումը: Ստեղծվեցին և արագ աճեցին նոր քաղաքային բնակավայրեր (Աբովյան, Մասիս, Նոր Հաճն, Նոր Խարբերդ և այլն), իսկ գոյություն ունեցողների զարգացումը նոր թափ ստացավ (Էջմիածին, Հրազդան, Արտաշատ և այլն):

Մայրաքաղաքի ազդեցության գոտում ձևավորվեցին երևանյան ագլոմերացիան (միջին շառավիղը՝ 30—35 կմ, 60 րոպե տրանսպորտային մատչելիության սահմաններում) և երևանյան մայրաքաղաքային ռեգիոնը (համապատասխանաբար 70—80 կմ և 90 րոպե): Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ եթե ագլոմերացիայի բնակչության համար մայրաքաղաքը գտնվում է գործունեության օրական ցիկլի ոլորտում, ապա ռեգիոնի համար գերակշռողը շաբաթային ցիկլն է: Եթե ագլոմերացիայի և Երևանի սոցիալ-տնտեսական փոխգործողության մեջ առաջատար դիրք են գրավում աշխատանքային ու արտադրական, ապա ռեգիոնում՝ առողջարարական և կուլտուր-կենցաղային կապերը:

Քաղաքի անհամամասնական զարգացումը չէր կարող չմտահոգել կուսակցությանը և կառավարությանը: Երևանի առջև ծառացած պրոբլեմները բազմիցս քննարկման առարկա են դարձել, մշակվել են ծավալուն միջոցառումներ, որոնց իրականացումը հնարավորություն կտա որոշ չափով բարելավել հանրապետության արտադրողական ուժերի տեղաբաշխումը, նվազեցնել Երևանի մեխանիկական աճի



տեմպերը և զարկ տալ փոքր ու միջին քաղաքների արագ զարգացմանը: Սակայն ընդունված որոշումները միշտ չէ, որ հետևողականորեն իրականացվում են: Այդ մասին հատուկ նշեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը՝ ՀԿԿ Երևանի կազմակերպության 40-րդ կոնֆերանսում ունեցած ելույթում: Դա հատկապես վերաբերում է «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ԽՄԿԿ Կենտկոմի և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի հայտնի որոշմանը:

Մայրաքաղաքի պրոբլեմների գիտականորեն հիմնավորված լուծմանը կարող է նպաստել տնտեսաաշխարհագրագետների կողմից մշակված այսպես կոչված «մայրաքաղաքայնության» կոնցեպցիան, որը վերջին տարիներին լայն ճանաչում է ստացել ինչպես մեր երկրում, այնպես էլ նրա սահմաններից դուրս: Ըստ այդ սահմանման, «մայրաքաղաքայնություն» ասելով հասկանում ենք մի առանձնահատուկ երևույթ, որը դրսևորվում է մայրաքաղաքների և նրանց ռեգիոնների միջավայրի հատկանիշներում, ֆունկցիոնալ, ճյուղային և տարածական կառուցվածքում, և, վերջապես, կենտրոնական, գլխամասային օղակների և ծայրամասերի հարաբերություններում»:

Երևանն էլ, անշուշտ, բնորոշվում է «մայարաքաղաքայնության» ակնհայտ հատկանիշներով: Փորձենք վերլուծել դրանցից ամենաէականները: Բնակչության համակենտրոնացման աստիճանով Երևանն առաջինն է հանրապետական մայրաքաղաքների շարքում՝ 37 տոկոս (առ 12 հունվարի 1989 թ.): Մեծ է նաև Երևանի տեսակարար կշիռը հանրապետության քաղաքային բնակչության թվում՝ 54,7 տոկոս:

Այսօր Երևանին բաժին է ընկնում հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի շուրջ 40 տոկոսը: Արդյունաբերության մեջ ընդունված է մայրաքաղաքային համարել այն ճյուղերը, որոնք բնորոշվում են հետևյալ հատկանիշներով՝ ապահովում են գիտատեխնիկական առաջընթացը հանրապետության և քաղաքի ժողովրդական տնտեսությունում, օգտագործում են բարձր որակավորման և բարձր արտադրողական աշխատանք, անվտանգ են սանիտարական և էկոլոգիական առումով, չեն ծախսում մեծ քանակությամբ ջուր, վառելիք, էլեկտրաէներգիա, մետաղ և հումքի այլ տեսակներ, ունեն նյութատեխնիկական անհրաժեշտ հիմք և արգելք չեն հանդիսանում քաղաքի վերակառուցմանը: Այդպիսի ճյուղերից են առաջին հերթին մեքենաշինությունը, պոլիգրաֆիան, թեթև (հատկապես կարի) և բժշկական արդյունաբերությունը: Այդ ճյուղերի գումարային տեսակարար կշիռը մայրաքաղաքի արդյունաբերության մեջ վերջին տարիներին աճում է, կազմելով շուրջ 60 տոկոս: Այս միտումը Երևանի համար կարելի է համարել դրական, քանի որ շեշտը դրվում է առաջին հերթին մայրաքաղաքի պրոֆիլին համապատասխանող ճյուղերի զարգացման վրա:

Եթե ճյուղային կառուցվածքի տեսանկյունից «մայրաքաղաքայնության» դրսևորումը համապատասխան ճյուղերի հարաճուն զարգացումն է, ապա տարածական առումով դրա դրսևորումն է մերձքաղաքային գոտում Երևանի արդյունաբերական միավորումների ու ձեռնարկությունների մասնաճյուղերի ստեղծումը: Այս պրոցեսի մասին հատուկ նշվեց ԽՄԿԿ XXVII համագումարում. «Խոշոր քաղաքներում սահմանափակել նոր արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծումը, բացի բնակչության սպասարկման հետ կապված օբյեկտներից: Ավելի լրիվ օգտագործել փոքր և միջին քաղաքների ու բանվորական ավանների տնտեսական զարգացման հնարավորությունները, այստեղ տեղաբաշխել ոչ մեծ մասնագիտացված ձեռնարկություններ, առկա գործարանների ու ֆաբրիկաների մասնաճյուղեր ու առանձին արտադրամասեր...»:

Այսօր արդեն երևանյան ագլոմերացիայի և ռեգիոնի բազմաթիվ բնակավայրերում ստեղծվել են Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր: Մայրաքաղաքի արդյունաբերական պոտենցիալի հետագա զարգացման հետ մեկտեղ, տեղի կունենա հիմնական ֆոնդերի որոշ վերաբաշխում՝ հօգուտ ավելի փոքր կենտրոնների: Այսպես, նախատեսվում է Երևանից Արարատի շրջան դուրս բերել պահածոների գործարանը, մայրաքաղաքի հրուշակեղենի-մակարոնի կոմբինատի մակարոնի արտադրամասը մտցնել Էջմիածնի մակարոնի ֆաբրիկայի կազմի մեջ և այլն:

Մայրաքաղաքայնության ազդեցության հետևանքներից մեկը կարելի է համարել Երևանի շուրջը ձևավորվող մերձքաղաքային ագրոարդյունաբերական համալիրը,



digitised by A.R.A.R.@

որը միավորում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, պահեստավորումը, մշակումը, մասնակի վերամշակումը, փոխադրումը և վաճառահանումը: Երևանի մերձքաղաքային ԱԱՀ-ն ընդգրկում է գյուղատնտեսական այնպիսի ձեռնարկություններ, որոնց մասնագիտացումը հիմնականում ուղղված է փոխադրահարմար սննդամթերքների նկատմամբ բնակչության պահանջարկի բավարարմանը: Մերձքաղաքային տնտեսությունների մասնագիտացման հիմնական ճյուղերն են բանջարաբուծությունը, պտղաբուծությունը, խաղողագործությունը, ձվի, կաթի արտադրությունը: Մսատու անասնապահության մեջ առավելություն է տրվում խոզաբուծությանը և թռչնաբուծությանը:

Մերձքաղաքային ԱԱՀ-ի կազմի մեջ մտնող տնտեսությունների համար հատկանշական է, որ շատ ցուցանիշներով նրանք գերազանցում են հանրապետության այլ տնտեսություններին: Այդ ցուցանիշներից են գյուղատնտեսական հանդակների միավոր տարածքից ստացվող համախառն արտադրանքը, մեկ աշխատողի արտադրանքի քանակը, հիմնական ֆոնդերով ապահովվածության մակարդակը և այլն:

Երևանը հանրապետության տրանսպորտային ուղիների հանգուցակետն է: Այստեղով են անցնում այն երկաթուղային և ավտոմոբիլային ճանապարհները, որոնցով Հայաստանը հաղորդակցվում է անդրկովկասյան հանրապետությունների և Մերձավոր արևելքի երկրների հետ: Օդային ուղիներով մայրաքաղաքը կապված է Միության ավելի քան 40 քաղաքների, ինչպես նաև Լիբանանի, Սիրիայի, Բուլղարիայի և ԳԴՀ-ի հետ: «Զվարթնոց» և «Էրեբունի» օդանավակայանները սպասարկում են հանրապետության ավիաուղիների ճնշող մեծամասնությանը:

Մեր մայրաքաղաքը դարձել է գիտահետազոտական, առողջապահական հիմնարկների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունների, արվեստի, գրականության ու մշակույթի զարգացման գլխավոր օջախ:

Հանրապետության գիտական պոտենցիալի հիմնական մասը կենտրոնացված է Երևանում: Այստեղ գործում է գիտության և գիտական սպասարկման 161 հիմնարկ, որից 32-ը՝ գիտությունների ակադեմիայի համակարգում,. 78-ը՝ ճյուղային ինստիտուտներ, 40-ը՝ ճյուղային գիտական կայաններ և պրոբլեմային լաբորատորիաներ: Գիտաշխատողների ընդհանուր թվում գիտական աստիճան ունեցողները կազմում են մոտ 40 տոկոս: Երևանում է կենտրոնացված հանրապետության գիտաշխատողների 71 տոկոսը, ավելի բարձր ցուցանիշներով է բնորոշվում բարձր որակավորման գիտական կադրերի տեսակարար կշիռը:

Հայկական ԽՍՀ 13 բարձրագույն և 65 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններից համապատասխանաբար 11-ը և 24-ը գտնվում են Երևանում: Մայրաքաղաքի բուհերում սովորում են ստանում հանրապետության ուսանողների 85 տոկոսը:

Վերջին տարիներին զարկ է տրվում այնպիսի կադրերի պատրաստմանը, որոնց մասնագիտության ճյուղային խումբը համապատասխանում է հանրապետության արդյունաբերության մասնագիտացմանը (մեքենաշինություն և սարքաշինություն, ռադիոտեխնիկա և կապ, էներգետիկա, էլեկտրոնային տեխնիկա, էլեկտրասարքաշինություն և ավտոմատիկա, ռոբոտային տեխնիկա):

Դժվար է գերագնահատել Երևանի դերը հանրապետության մշակույթի զարգացման մեջ: Այստեղ են գործում 120-ից ավելի գրադարան, 20 թանգարան, բազմաթիվ կինոթատրոններ, ակումբային հաստատություններ, մի շարք թատրոններ, մշակույթի պալատներ, ժողովրդական և ինքնագործ գեղարվեստական կոլեկտիվներ և այլն:

Երևանի հետագա զարգացման առավել նպատակահարմար համադրույթ կարելի է համարել համապատասխան ճյուղերի արագընթաց զարգացումը, մայրաքաղաքի թեթևացումը նրա պրոֆիլին չհամապատասխանող ձեռնարկություններից և կազմակերպություններից, ռեգիոնի նպատակային ձևավորումը, որը որոշ ֆունկցիաներ կարողանա կիսել Երևանի հետ: Արդյունաբերության մասնակի ապակենտրոնացման «լծակի» դեր խաղալու մեծ հնարավորություններ ունի մեքենաշինությունը: Այդ ճյուղի զարգացման պայմանների մասին խոսելիս պետք է հիշել հանրապետության բնակչության տարաբնակեցման հետևյալ առանձնահատկության մասին՝ ազատ աշխատանքային ռեսուրսները հիմնականում կենտրոնացված են փոքր և միջին մեծության քաղաքներում: Այդպիսի տեղաբաշխում ունեցող աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար հարմար է զարգացնել մե-



քենաշինությունը, որի տեխնոլոգիան հնարավորություն է տալիս տարբեր տեղերում ունենալ ոչ մեծ մասնագիտացված ձեռնարկություններ կամ առանձին արտադրամասեր և մասնաճյուղեր: Նշենք նաև այն հանգամանքը, որ վերջին տասնամյակներում հանրապետությունում ստեղծվել է մեքենաշինական գիտահետազոտական և նախագծակոնստրուկտորական հիմնարկների լայն ցանց, առկա են մեքենաշինության տարբեր ճյուղերի գծով բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետների պատրաստման լայն հնարավորություններ:

Մասնակի ապակենտրոնացման կարիք են զգում նաև մայրաքաղաքի գիտական հիմնարկները և բուհերը: Այսօր արդեն այդ պրոցեսն ընթանում է գիտաարտադրական ցիկլի ինչպես սկզբնական փուլերի (ֆունդամենտալ և կիրառական գիտություն), այնպես էլ հաջորդող փուլերի համար (փորձնական արտադրություններ, փորձարարական բազաներ): Կարելի է նշել մայրաքաղաքային գիտության և կադրերի պատրաստման ֆունկցիայի ապակենտրոնացման 3 հիմնական ուղղություններ.

1. արևմտյան, որտեղ Էջմիածնի և Հոկտեմբերյանի վարչական շրջաններում տեղաբաշխվել են հիմնականում գյուղատնտեսական մասնագիտացման գիտաարտադրական կենտրոնները՝ հողագիտության, բույսերի պաշտպանության, երկրագործության ինստիտուտները, խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության ինստիտուտը, «Եթերյուղ» գիտաարտադրական միավորման Հայկական փորձարարական կայանը և այլն: Սա պատահական չէ, քանի որ մայրաքաղաքից արևմուտք տարածվում է Արարատյան դաշտի առավել բերքառատ մասը՝ ինտենսիվ գյուղատնտեսության գոտին: Հետագայում այս ուղղությամբ կարելի է դուրս բերել գյուղատնտեսության համար կադրեր պատրաստող որոշ հիմնարկներ.

2. հյուսիս-արևմտյան, որտեղ դեռ հետպատերազմյան տարիներին հիմնադրվեց Բյուրականի աստղաֆիզիկական աստղադիտարանը, իսկ վերջին տարիներին Աշտարակի մոտակայքում մի շարք գիտական կենտրոններ՝ ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի, ֆիզիկական հետազոտությունների գիտահետազոտական ինստիտուտները, օպտիկամեխանիկական և ֆիզիկատեխնիկական լաբորատորիաներ: Դրա հետ մեկտեղ, հետազոտությունները ցույց են տալիս, որ Աշտարակի գիտական համալիրի աշխատակիցների ճնշող մեծամասնությունը (60 տոկոս) Երևանի բնակիչներ են, ընդ որում որքան բարձր է գիտաշխատողների որակավորումը, այնքան մեծ է մայրաքաղաքի միգրանտների տեսակարար կշիռը: Բացի դրանից, գիտական համալիրի աշխատակիցները սերտորեն համագործակցում են Երևանի ինֆորմացիոն կենտրոնների և այլ գիտական հիմնարկների հետ.

3. հյուսիս-արևելյան, որը ձևավորվում է արդյունաբերության գիտատար ճյուղերի հիման վրա և շատ հեռանկարային է: Այստեղ առայժմ ստեղծվել է Աբովյանի շրջանի կենսատեխնոլոգիական համալիրը, որը միավորում է մանրէակենսաբանության գիտահետազոտական ինստիտուտը և «Հայկենսատեխնոլոգիա» արտադրական միավորման մի ձեռնարկություն: Հարկ է նշել նաև անասնապահության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտը և «Ծխախոտ» գիտաարտադրական միավորման Հայկական փորձնական կայանը Աբովյանի շրջանում և պրոֆհիվանդությունների գիտահետազոտական ինստիտուտը Հրազդանում:

Վերը նշված հիմնական ուղղություններից բացի, մի շարք գիտական հիմնարկներ տեղադրված են այլ բնակավայրերում (օրինակ՝ գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացմամբ մասնագիտացող խոշոր գիտաարտադրական կենտրոնը Եղվարդում և այլն):

Հատկանշական է նաև Երևանի պրոֆտեխուսումնարաններում սովորողների տեսակարար կշռի օրինաչափ նվազումը հանրապետության ՊՏՈՒ-ներում սովորողների ընդհանուր թվում, որը կատարվում է այլ շրջաններում ՊՏՈՒ-ների քանակի և ուսանողների թվի աճի շնորհիվ:

Հետագայում մայրաքաղաքային ռեգիոնում կարելի է ստեղծել նոր գիտական և բուհական կենտրոններ, մասնագիտացված գիտաուսումնական բնակավայրեր (գիտափորձարարական կազմակերպությունների, ձեռնարկությունների և նույն ճյուղի մասնագիտացված ուսումնական հաստատությունների զուգորդում): Այսպիսի կենտրոնների ձևավորման համար հիմք կծառայեն մայրաքաղաքից դուրս բերվող գիտական կազմակերպությունները և ուսումնական ինստիտուտները, ինչպես նաև մայրաքաղաքի գիտական և գիտության սպասարկման կազմակերպությունների մասնաճյուղերը:



digitised by A.R.A.R.@

Երևանի մայրաքաղաքային ռեգիոն կարելի է համարել Արարատյան տնտեսական շրջանի կազմի մեջ մտնող, ինչպես նաև Սևանի և Հրազդանի վարչական շրջանները, որոնք բազմաբովանդակ և ինտենսիվ կապերով կապված են Երևանի հետ: Նշված սահմաններում Երևանի մայրաքաղաքային ռեգիոնի տարածքը կազմում է 6890 քառ. կմ, իսկ բնակչությունը 2076,6 հազար մարդ: Զբաղեցնելով Հայաստանի տարածքի ընդամենը 23,1 տոկոսը, ռեգիոնն իր սահմաններում է համակենտրոնացրել հանրապետության ամբողջ բնակչության 58,4, իսկ քաղաքային բնակչության 67,5 տոկոսը:

Ուրվագծվում են Երևանի մայրաքաղաքային ռեգիոնի հետագա զարգացման հիմնական սկզբունքները.

1. Երևանի՝ որպես տնտեսական, գիտատեխնիկական և սոցիալական առաջընթացի խոշորագույն կենտրոնի առաջատար դերի հետագա աճ.

2. անցում արտադրության զարգացման ինտենսիվ ուղու, Երևանի և ագլոմերացիայի բնակչության աճի տեմպերի դանդաղեցում՝ կապված տարածական և ջրային ռեսուրսների սահմանափակության և ռեգիոնում ստեղծված բարդ սոցիալ-էկոլոգիական իրավիճակի հետ.

3. Երևանի աճի կարգավորումը մայրաքաղաքային ռեգիոնի ներկա տարաբնակեցման պլանաչափ վերակառուցման միջոցով:

Նպատակահարմար է Երևանի ապակենտրոնացման պրոբլեմի լուծմանը նպաստող գիտական և նախագծակոնստրուկտորական մշակումները կատարել տարբեր մակարդակներում:

Ըստ հանրապետության արտադրողական ուժերի զարգացման և տեղաբաշխման հեռանկարային սխեմայի, հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման հնգամյա պլանների, շրջանային հատակագծումների (ընդ որում Երևանի մայրաքաղաքային ռեգիոնը կարող է դիտվել որպես պլանավորման առանձին միավոր): Այստեղ կարելի է ներառել նաև քաղաքի զարգացման կոմպլեքսային պլանը և գլխավոր հատակագիծը:

Երևանը դիտելով որպես մայրաքաղաքային ռեգիոնի բաղկացուցիչ մաս, կարելի է առավել հաջողությամբ լուծել այն բարդ պրոբլեմները, որոնք կանգնած են այսօր մեր մայրաքաղաքի առջև: Չէ որ համակարգի կազմի մեջ մտնելը քաղաքն ազատում է ունիվերսալ լինելու պարտականությունից: Նա լայն հնարավորություններ է ստանում ստեղծել և ամրապնդել իր ժողովրդատնտեսական համալիրի օղակները քաղաքային սահմաններից դուրս, դիմելով ռեգիոնի օգնությանը, փոխադարձ ներգործության սկզբունքի հիման վրա:

---



# ՈՐՊԵՍԶԻ ՄԵՂՄԱՆԱ ՀՈԳՈՒ ՑԱՎԸ

Հ. ՄԱՅԻԼՅԱՆ

ԱՍՈՒՄ ԵՆ ԱՐՀԱՎԻՐՔՆԵՐԸ փորձում են մարդկանց տոկունությունը: Բայց մենք դրա «կարիքն» էլ չունեինք: Բնությունը մեկ անգամ ևս անարդար գտնվեց մեր հանդեպ: Ասես քիչ էին վաղնջական ժամանակներից մեր գլխին իջած պատուհասները՝ քսաներորդ դարն էլ իր սև «գործն» արեց: Ո՛չ դարասկիզբն էր մեզ համար խոստումնալից, ո՛չ դարավերջը: Մեծ եղեռնից ու 1926-ի լենինականյան երկրաշարժից հետո էլ չվհատվեցինք ու ապավինեցինք մեր անկոտրում կամքին ու մեր հզոր պետության ժողովուրդների մեծ բարեկամությանը:

Եվ ահա նոր դժբախտությունը: Այն վրա հասավ անսպասելիորեն, օրը ցերեկով: Հաշված վայրկյանների ընթացքում հողին հավասարվեցին մեր փոքրիկ հանրապետության հյուսիսային գոտու ծաղկուն քաղաքներն ու գյուղերը: Հետևանքը՝ տասնյակ հազար մարդկային զոհեր, միլիարդավոր ռուբլիների հասնող նյութական վնաս: Շատերը զրկվեցին իրենց տուն ու տեղից, հաշմվեցին ֆիզիկապես ու հոգեպես: Կրկին որբերով լցվեց մեր լեռնաշխարհը:

Բայց մենք, որ վաղուց ենք հաշտվել մեր դաժան ճակատագրի հետ, այս անգամ էլ չվհատվեցինք: Ահավոր ցնցումները մեզ ստիպեցին ավելի զգաստանալ, բարձրանալ ինքներս մեզնից, մեր անձից ու անձնականից և, ի հեճուկս մեր չարակամների, նորից հավատով լցվել վաղվա օրվա նկատմամբ: Ու մինչ ողջ Միությունն ու համայն աշխարհը մի աներևակայելի միասնությամբ կարձագանքեին մեր վիշտ ու ցավին և գթասրտության հրաշքներ կգործեին, ինքներս մեր վճռականությունն ու կամքը դրսևորեցինք տարերային աղետի օրերին...

Մայրաքաղաքի արդյունաբերական Լենինյան շրջանի աշխատավորական շատ կոլեկտիվներ, առաջիններից էին, որ դեկտեմբերի 7-ին, կործանարար երկրաշարժից անմիջապես հետո, եղան աղետի վայրում և օգնության ձեռք մեկնեցին հայրենակիցներին: Չարաբաստիկ բոթն ստանալուն պես գործի անցավ կուսակցության շրջանային կոմիտեն և կոչով դիմեց բանվոր-ծառայողներին: Հարյուրավոր կամավորներ բահ ու քլունգով զինված անմիջապես հավաքվեցին կուսշրջկոմի շենքի մոտ՝ պատրաստ կատարելու ամեն մի առաջադրանք: Կարճ ժամկետում շուրջ 2000 մարդուց կազմված ավտոշարասյունն ուղևորվեց Լենինական: Իրիկնամուտը նրանք դիմավորեցին աղետի վայրում: Սարսափազդու, ահավոր տեսարան էր. նախկին շեն ու կյանքով լի քաղաքից ոչինչ չէր մնացել: Շուրջբոլորը փլատակներ էին, օգնության կանչեր էին լսվում այս ու այն կողմից: Քաղաքն ընկղմված էր ծխի ու փոշու թանձր խավարում: Անթափանց մութը է՛լ ավելի էր բարդացնում իրավիճակն ու շփոթմունքի տեղիք տալիս: Բայց մարդիկ մաքառում էին հանուն կյանքի ու ընդդեմ մահի:

— Լավ է, որ մեզ հետ մի քանի շարժական էլեկտրակայաններ և եռակցման ապարատներ էինք տարել ու անհապաղ անցանք գործի,— ասում է շրջկոմի երկրորդ քարտուղար Օգսեն Գրիգորյանն ու, այդ դժոխային պատկերները վերհիշելով, կրկին հուզվում:— Սկսեցինք դպրոցական շենքերի փլատակներից:

Միայն դեկտեմբերի 7-ի լույս 8-ի գիշերը լենինյանցիները փրկեցին 181 մարդու կյանք, մեծ մասը՝ երեխաներ: Փրկարարական աշխատանքներին մեծ ակտիվությամբ մասնակցեցին հատկապես «Հայէլեկտրամեքենա», «Հայքիմմեքենա» արտադրամիավորումների, ավտոդողերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ռե-

ՄԱՅԻԼՅԱՆ ՀՐԱՉՅԱ ՎԱՂԻՆԱԿԻ— «Երեկոյան Երևան» թերթի ավագ գրական աշխատող:



digitised by A.R.A.R.@

տինատեխնիկական իրերի գործարանների և շրջանի մյուս հիմնարկ-ձեռնարկությունների ներկայացուցիչները: Անսովոր պայմաններում գործելու հմտության և տոկունության վառ օրինակներ ցույց տվեցին «Նաիրիտ» գիտաարտադրամիավորման աշխատակիցներ Մ. Հայրապետյանը, Բ. Կարապետյանը, Ս. Հարությունյանը և ուրիշներ: Տքնելով գիշերվա խավարում՝ նրանք ապրելու հույս ու հավատ էին ներշնչում աղետյալներին: Գերցենի փողոցի մի բազմահարկ շենքի փլատակներից նրանք կարողացան դժվարությամբ հանել փոքրիկ Քրիստինեին և Ծուշիկին, ապա և նրանց մորը՝ Մարինե Նաղոյանին: Աղետից 38 ժամ հետո փրկվածների լուսանկարները զետեղվեցին կենտրոնական ու հանրապետական մի շարք թերթերում: Մ. Հայրապետյանի խմբի ջանքերով փրկվում են նաև Մարինե Նաղոյանի հարևանուհի Ռուզաննան ու նրա որդին, ինչպես նաև Նադյա և Ծովիկ անուններով ևս երկու կին: Ընդհանուր առմամբ նրանք փրկում են 40 մարդու կյանք:

Աղետյալներին ցույց տրվող օգնությունը կոորդինացնելու նպատակով կուսշրջկոմում ստեղծվեց հատուկ շտաբ, որի աշխատանքներն անմիջապես ղեկավարում է կուսշրջկոմի առաջին քարտուղար Լեոնիդ Գուստինը: Այդ օրերին դժվար էր կուսշրջկոմի հրահանգիչներին ու շրջխորհրդի գործկոմի ղեկավարներին հանդիպել իրենց աշխատասենյակներում: Բոլոր ուժերը մոբիլիզացվել էին՝ տեղերում կոնկրետ հանձնարարություններ կատարելու համար:

Խիստ լարված էին աշխատում շրջանի առողջապահական օբյեկտները՝ այդ թվում № 1 բուժսանմասը և № 3 մանկական հիվանդանոցը, ուր տեղավորվել էին երկրաշարժից տուժած 500 երեխաներ և 300 մեծահասակներ: Ստեղծված դեպուտատական կետերը ուշադրությամբ հետևում էին հիվանդներին սննդով ու հագուստով ապահովելու գործին:

Փրկարարական աշխատանքների կազմակերպման բոլոր օրերին լենինյանցիներին կարելի էր տեսնել աղետյալ գոտու տարբեր հատվածներում: Բանվորական խմբերը փոխարինելու էին գալիս մեկը մյուսին՝ իրենց հետ տանելով տրանսֆորմատորային ենթակայաններ, տրանսպորտային և նյութատեխնիկական տարբեր միջոցներ: Աղետին հաջորդող միայն մի քանի շաբաթվա ընթացքում շրջանի կոլեկտիվները երկրաշարժից տուժած քաղաքներն էին ուղարկել շուրջ 500 հազար ռուբլու սննդամթերք, ավելի քան 100 հազար ռուբլու հագուստ, 200 խմ վառելափայտ, 500 տոննա քարածուխ, հինգ տոննա լվացքի փոշի: Նրանք հանգանակել ու շուրջ մեկ միլիոն ռուբլի են փոխանցել 700412 հաշվին:

ԼԵՆԻՆՅԱՆ ՇՐՋԱՆԻ ՄԻ ՇԱՐՔ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ իրենց մասնաճյուղերն ունեն աղետյալ գոտում: Այդ հանգամանքն ինքնին ավելի էր պարտավորեցնում լենինյանցիներին և ստիպում նրանց՝ ընդլայնելու իրենց գործունեության շրջանակները: Նախ պետք էր պարզել, թե որ մասնաճյուղը որքանով է տուժել, ինչպիսի օգնության կարիք է զգում և հեռանկարի առումով ինչ պետք է անել նրա գործունեությունը նորմալ հունի մեջ դնելու համար: Այդ պարտականությունները հիմնականում դրվում են գլխադաս ձեռնարկությունների կոլեկտիվների վրա: Ակտիվ գործունեություն են ծավալում հատկապես «Հայգորգ» միավորման և «Հայառմնտած» կոմբինատի կուսկազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները: Այդ ձեռնարկությունների կուսկազմակերպությունների քարտուղարներին եմ դիմում երեք հարցով.

1. Քանի՞ մասնաճյուղ ունեք աղետյալ գոտում, դրանցից որը որքանո՞վ է տուժել և ի՞նչ վիճակում է այժմ:

2. Ի՞նչպես սատարեցիք աղետյալներին, ի՞նչ օգնություն եք ցույց տվել մինչև օրս:

3. Զարգացման ի՞նչ հեռանկարներ ունեն ձեր տուժած օբյեկտները և որո՞նք են առաջիկա անելիքները:

Հարցերին առաջինը պատասխանում է «Հայգորգ» արտադրամիավորման կուսբյուրոյի քարտուղար Սիրուշ Նիազյանը.

1. Հավանաբար հիշում եք վերջերս կապույտ էկրաններով տրված «Հեռուստանուրդ» հաղորդումը: Աուկցիոնի այդ ձևից անգամ շատերը համոզվեցին, թե աշխարհի տարբեր հորիզոնականներում ինչպիսի մեծ պահանջարկ են վայելում հայկական գորգերը: Եվ դա նորություն չէ: Այդպես էլ եղել է դարեր ի վեր: Մեր կանանց ու աղջիկների արարման ձիրքն ու մատների շնորհքը վաղուց են հիացմունք պատճառել շատերին: Պատմության քառուղիներում երկար ճանապարհ են անցել նրանց ձեռա-



digitised by A.R.A.R.@

գործ, հրաշալիքները, որոնք, ավաղ, միշտ էլ գրեթե կիսել են իրենց ստեղծողների ճակատագիրը: Բացառություն չեղավ նաև այս անգամ: Ավերիչ երկրաշարժը չխնայեց ոչինչ: Բայց չշեղվենք: Խոսենք աղետի ենթարկված մեր մասնաճյուղերի մասին: Դրանցից մեկը Լենինականում է, իսկ մյուսը՝ Արթիկում: Միավորման կազմի մեջ մտնող այս երկու փաբրիկաները էլ բարեբախտաբար շատ չեն տուժել: Նորոգումից հետո շուտով կգործեն լրիվ կարողությամբ: Ի դեպ, Արթիկի մասնաճյուղն արդեն սկսել է արտադրանք տալ:

Վիճակն անհամեմատ ծանր է Լենինականում: Այստեղ մեր կոլեկտիվի «տնայնագործ» անդամներից երկուսը զոհվել են, իսկ մի քանիսն էլ ստացել մարմնական լուրջ վնասվածքներ և դեռ բուժվում են: Բարոյահոգեբանական առումով էլ նրանց վիճակն աննախանձելի է, քանի որ շատերի հարազատ-բարեկամները զոհ են դարձել աղետին: Մի խոսքով, վիշտ ու ցավի տակ դեռ կքած են մարդիկ և դեռ վաղ է նրանց նորմալ կենսագործունեության մասին խոսելը:

2. Ինչ արած, չես կարող փախչել ճակատագրից: Պետք է տոկալ ու ապրել: Պետք է թև ու թիկունք դառնալ միմյանց և վերընձյուղվել: Հենց այս գիտակցումով էլ միավորման մարդիկ ոտքի կանգնեցին և օգնության ձեռք մեկնեցին աղետյալներին: Ամբողջ երկու շաբաթ գորգագործներն առանձին խմբերով, ձեռնարկության դիրեկտոր Ալեքսանդր Հարությունյանի գլխավորությամբ, մասնակցեցին փրկարարական աշխատանքներին: Առանձնակի եռանդով ու ջանադրաբար էին գործում հատկապես զոդող բանվոր Իոսիֆ Իվանովը, վարորդ Միշա Ղազարյանը, գլխավոր ինժեներ Ռոբերտ Ավանեսյանը, արտադրամասի պետ Ղարիբ Խաչատրյանը և ուրիշներ: Այդ նրանց և ձեռնարկության մյուս ակտիվիստների նախաձեռնությամբ էր, որ ընդհանուր ժողովներ գումարվեցին միավորման արտադրամասերում, և կոլեկտիվի անդամները միաձայն որոշեցին իրենց երեք օրվա աշխատավարձը փոխանցել աղետյալների ֆոնդին: Լուրջ ներդրում կատարեցին նաև միավորման դիրեկցիան և արհմիութենական կազմակերպությունը: Ձեռնարկության ֆոնդից 700412 հաշվին փոխանցվեց 20 հազար, իսկ արհկոմի ֆոնդից՝ 150 հազար ռուբլի: Աղետյալ գոտու մեր հայրենակիցներից շատերը ապրում են վրաններում ու վագոն-տնակներում: Նրանց տվել ենք տաքացնող պարագաներ: Վրանների տակ փռելու համար տուժածներին հատկացվել է 1000 կարպետ, որից 300-ը՝ Լենինականի կոշիկի ֆաբրիկային, 150-ը՝ գորգի մեր մասնաճյուղին, իսկ 50-ը՝ արթիկցիներին: Մնացած 500-ը՝ առաքվել է Լենինականի գուլպայի և № 2 կարի ֆաբրիկաների հացեներով: Միավորումն իր մասնաճյուղերն ունի նաև հանրապետության մյուս շրջաններում՝ Կամոյում, Մարտունիում, Գորիսում, Կալինինոյում և այլուր: Նրանց կոլեկտիվները ևս զգալի միջոցներ են հանգանակել և ուղարկել աղետյալներին:

3. Վերականգնման աշխատանքներն ավարտելուց հետո մեր տուժած օբյեկտները կգործեն ողջ կարողությամբ: Բայց պետք է ասել, որ որոշակի դժվարություններ են առաջացել հատկապես բանվորական կադրերի համալրման գործում: Եթե առաջներում մեր «տնայնագործների» թիվը չէր անցնում մի քանի տասնյակից, ապա այսուհետև անհամեմատ կավելանա: Բանն այն է, որ այն մարդիկ, ովքեր հաշմվել, ստացել են մարմնական վնասվածքներ, հավանաբար կգերադասեն աշխատել ոչ թե հենց ֆաբրիկայում, այլ «տնայնագործական» հիմունքներով: Իսկ դա վերաբերում է ոչ միայն մեր աշխատողներին, այլև բոլոր նրանց, ովքեր մինչ այդ գործում էին բոլորովին այլ հիմնարկ-ձեռնարկություններում: Կարող է այսպիսի հարց առաջանալ. իսկ չէ որ նրանք չունեն գորգագործի համապատասխան մասնագիտություն: Մտածել ենք նաև այդ մասին: Անհրաժեշտության դեպքում կբացենք համապատասխան դասընթացներ: Ասենք նաև, որ այդ գործում մենք արդեն որոշակի փորձ ենք ձեռք բերել վերջերս: Դեռ անցած տարի «Մասիսի» մեր մասնաճյուղում բացել ենք մի արհեստանոց, որտեղ գորգագործություն են սովորում Բաքվից տեղափոխված 15 երիտասարդ հայ աղջիկներ: Այդ խմբի աշխատանքները ղեկավարում է միավորման լավագույն մասնագետ, կոմունիստ Ելենա Գինոսյանը:

Բայց ունենք նաև մեկ այլ՝ «կնճռոտ» հարց, որի լուծումը պայմանավորված է ոչ այնքան մեզնով: Աղետյալ գոտու մեր մասնաճյուղում ունեինք նաև ադրբեջանցի առանձին «տնայնագործներ», որոնք թողել գնացել են և իրենց հետ տարել ոչ միայն մեր գորգագործական դազգահներն ու գործիքները, այլև զգալի քանակությամբ պատրաստի գորգեր: Նյութական այդ արժեքները վերադարձնելու նպատակով թեև մենք դիմել ենք Ներքին գործերի մինիստրությանը և համապատասխան

գործ հարուցել, սակայն որոշակի արդյունքի դեռ չենք հասել: Փախստականները հմտորեն «քողարկել» են իրենց հասցեները:

Առաջադրված նույն հարցերին պատասխանում է նաև «Հայաումնտած» կոմբինատի կուսբյուրոյի քարտուղար Արմեն Չիլինգարյանը:

1. Նախ կուզենայի մի երկու խոսք ասել մեր ձեռնարկության հիմնական կոչման և նրա գործունեության բնորոշ առանձնահատկությունների մասին: Կոմբինատը մտնում է «Հայաստեխնիկա» արտադրամիավորման կազմի մեջ: Նրա առաջնահերթ խնդիրն է պետական առևտրի, հասարակական սննդի ցանցում, արդյունաբերական, շինարարական, տրանսպորտային կազմակերպություններում, ինչպես նաև ուսումնական և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներում մոնտաժել առևտրատեխնոլոգիական սարքավորումները և ապահովել դրանց անխափան աշխատանքը: Կարճ ասած՝ զբաղվում ենք սպասարկման ոլորտի օբյեկտների տեխնիկական սպասարկման հարցերով և գործ ունենք հանրապետության տարբեր քաղաքների ու շրջանների հետ: Սակայն հիմնականում կխոսեմ աղետյալ գոտու մեր այն չորս մասնաճյուղերի մասին, որոնցից երկուսը գտնվում էին Լենինականում և մեկականը՝ Կիրովականում ու Դիլիջանում:

Լենինականյան այն տեղամասը, որը տեղավորված էր քաղաքի կենտրոնում, ավերվել է ամբողջովին: Այստեղ զոհվել է երկու մարդ: Իսկ երկրորդը փաստորեն տուժել է մասնակիորեն: Ստիպված այդ երկու օբյեկտների աշխատողներին միավորել ենք մի արտադրամասում և անհրաժեշտ պայմաններ ստեղծել նրանց աշխատանքի համար: Կիրովականի տեղամասը անհամեմատ փոքր է ոչ միայն իր տարածքով, այլև կոլեկտիվի անդամների թվով: Ճիշտ է, թեև շենքը հիմնականում չի տուժել, սակայն կոլեկտիվը մեկ մարդու կորուստ է ունեցել: Որքան էլ տարօրինակ է, Դիլիջան քաղաքն էլ անմասն չմնաց մեծ աղետի ավերիչ հարվածներից, թեև բավականին հեռու էր էպիկենտրոնից: Մեր սպասարկման փոքրիկ տեղամասն էլ այստեղ լուրջ վթարի ենթարկվեց և միաժամանակ մատնվեց անգործության: Հետագայում մեր մարդկանց տեղավորեցինք մի այլ ապահով տեղ, և այժմ նրանք ձեռնամուխ են եղել իրենց պարտականությունների կատարմանը:

Ցավալին այն է, որ աղետյալ գոտու մեր բանվոր-ծառայողներից շատերի հարազատ-բարեկամները նույնպես հսկայական կորուստներ ունեցան: Նրանց մերձավոր բարեկամներից շուրջ 20 հոգի մնացին փլատակների տակ, իսկ փրկվածներից շատերն էլ զրկվեցին տուն-տեղից: Այդ ամենը մեծ հոգսեր պատճառեցին մեր աշխատողներին:

2. Սա մի այնպիսի ահավոր ցավ է, որ դեռ երկար կմխա մեր սրտերում, բայց ճակատագրի անողոք հարվածներին մենք նոր չենք ընտելանում: Շատ անգամ ենք կարողացել «վերջը» դարձնել սկիզբ ու հավաստել մեր լինելիության ու գոյության խորին խորհուրդը: Այս անգամ էլ ուժ կգտնենք ու կշարունակենք մեր հարատև ուղին: Իսկ դրա համար, անշուշտ, դեռ շատ ջանքեր կպահանջվեն, համատեղ գործելու վճռականություն: Այդ վճռականությունն, ի դեպ, դրսևորվեց տարերային աղետի առաջին իսկ օրից, երբ աշխարհի մարդիկ, բոլորը մի սիրտ ու հոգի դարձած, օգնության ձեռք մեկնեցին մեր ժողովրդին: Այս համազգային վիշտը մեղմելու և աղետյալներին սատարելու գործում անմասն չմնաց նաև մեր կոլեկտիվը: Նյութական ու ֆինանսական օգնությունը դեռ իր հերթին: Նախ և առաջ անհրաժեշտ էր մտածել աղետյալներին և դրսից եկած հյուրերին սպասարկելու մասին: Իսկ ինչպե՞ս անել, երբ առևտրի և հասարակական սննդի օբյեկտների ճնշող մասն այլևս չէին գործում: Մեր առաջնահերթ խնդիրն էր մոնտաժել և կարգավորել դրանք, բացել մի շարք ժամանակավոր օբյեկտներ: Կարճ ժամանակում մեր աշխատողների ջանքերով Արթիկում պատրաստվեց մի մեծ ճաշարան, որտեղից թերմոսներով տաք կերակուր էին առաքում աղետյալներին: Դեկտեմբերի 12-ից մինչև 15-ը համանման սննդի մի օբյեկտ էլ մոնտաժվեց նաև Լենինականի «Ջդրավնիցա» մանկական առողջարանի անվթար մնացած շենքի առաջին հարկում: Դրանից հետո աղետյալ գոտում մոնտաժվեցին պետական առևտրի, հասարակական սննդի, արդյունաբերական, տրանսպորտային և շինարարական կազմակերպությունների շուրջ 200 օբյեկտներ, որոնց դերն ու նշանակությունը դժվար է գերագնահատել: Կոմբինատը 30 հազար ռուբլի է փոխանցել աղետյալների ֆոնդին, որից 10 հազարը բանվոր-ծառայողները հավաքել են իրենց իսկ աշխատավարձից: Բացի այդ, մեր այն աշխատողները, որոնք զրկվել էին իրենց աշխատատեղերից, աշխատավարձ են ստացել ձեռնարկության խնայողությունների ֆոնդի հաշվին:



digitised by A.R.A.R.@

3. Հետզհետե ընդլայնվում են երկրաշարժի հետևանքների վերացման աշխատանքների մասշտաբները: Մեր անծայրածիր հայրենիքի և աշխարհի տարբեր հորիզոնականներից մեզ օգնության հասած մարդկանց ջանքերով մաքրվում են փլատակները, վերականգնվում ավերված քաղաքներն ու գյուղերը: Իսկ շինարարների այդ բազմահազարանոց ջոկատի արդյունավետ գործունեությունն ապահովելու նպատակով հարկավոր է նրանց համար ստեղծել աշխատանքի և կենցաղի նորմալ պայմաններ: Այդ գործում իրենց որոշակի ավանդը կներդնեն նաև մեր կոլեկտիվի անդամները, որոնց բարձրորակ աշխատանքով նույնպես շատ բան է պայմանավորված: Օրերս մեր կոմբինատի դիրեկտոր Արտաշես Հարությունյանը կրկին եղավ Լենինականում: Քաղաքի և հասարակական սննդի օբյեկտների ղեկավարների հետ մշակվեցին համատեղ միջոցառումներ, ճշգրտվեցին դրանց իրականացման տեղերն ու ժամկետները: Խնդիր դրվեց առաջիկա մի քանի ամսում զգալի չափերի հասնող առևտրատեխնոլոգիական սարքավորումներ տեղադրել ու մոնտաժել կարևոր օբյեկտներում: Ծավալուն աշխատանքներ կկատարվեն հատկապես Լենինականի «Երևան» ունիվերսամում: Այժմ «Հայվաճելիքառի» Լենինականի բազայի համար մեր կոմբինատը պատրաստում է շուրջ 700 դարակաշարեր, որոնք շուտով կառաքվեն իրենց հասցեատերերին:

ՀԿԿ ԵՐՔԱՂԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՅԻ ՈՐՈՇՄԱՄԲ մայրաքաղաքի արդյունաբերական շրջանի վրա է դրվել Ղուկասյանի շրջանին ցույց տրվող օգնության կազմակերպման գործը: Լենինյանցիները պատասխանատվությամբ են ձեռնամուխ եղել իրենց առաջնահերթ խնդիրների լուծմանը: Այդ որոշումից անմիջապես հետո 12 բեռնատար մեքենաներով Ղուկասյանի շրջան են ուղարկվել զգալի քանակությամբ սննդամթերք, քարածուխ և վառելափայտ, ինչպես նաև 350 վառարան, 30 տոննա տնտեսական և ձեռքի օճառ, երեք տոննա ձեթ և այլ մթերքներ:

Վերջերս ՀԿԿ Լենինյան շրջկոմի, շրջխորհրդի գործկոմի ղեկավարներն ու խոշոր ձեռնարկությունների մի շարք ներկայացուցիչներ եղան Ղուկասյանում և մշակեցին համատեղ միջոցառումների ընդարձակ պլան: Ըստ այդ պլանի շրջանի ավելի քան 30 ձեռնարկությունների ու կազմակերպությունների տրվել են կոնկրետ հանձնարարություններ, որոնք համապատասխան օգնություն են ցույց տալու Ղուկասյանի շրջանի գյուղերին ու տնտեսություններին: Մշակվել են շեֆական աշխատանքների ձևերն ու մեթոդները, նշվել դրանց կատարման ժամկետները: Հիմնական շեշտը դրվել է տեղերում երկրաշարժի հետևանքների վերացման, երեխաների ուսման և դաստիարակության կազմակերպման, սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման վրա:

Նոր դերի մեջ են մտել նաև կոմերիտական մարմինները: ՀԼԿԵՄ Լենինյան և Ղուկասյանի շրջկոմները համատեղ որոշել են համախմբել կոմերիտականների և երիտասարդների ուժերը և շինջոկատներով օգնել տնտեսությունների օբյեկտների վերականգնմանը: Աշխատավորների դեպուտատների Լենինյան շրջխորհրդի գործկոմին հանձնարարվել է Ղուկասյանի շրջանի հանրակրթական դպրոցներին և նախադպրոցական հիմնարկներին ապահովել համազգեստներով, գրենական պիտույքներով ու մեթոդական նյութերով:

Լենինյան և Ղուկասյանի կուսշրջկոմների գաղափարախոսական բաժինները նախատեսել են 1989 թ. ընթացքում անցկացնել համատեղ գիտագործնական կոնֆերանսներ, սեմինար խորհրդակցություններ՝ նվիրված գաղափարախոսական մանկավարժական-դաստիարակչական աշխատանքների նոր ձևերի ու մեթոդների ներդրման հարցերին: Շրջանի մեքենաշինական և սննդի արդյունաբերության տեխնիկումներում կկազմակերպվի սպառողական կոոպերացիայի աշխատողների վերապատրաստումը, իսկ առհասարակ բոլոր տեխնիկումներում առաջին երկու տարիներին՝ ընդունելություններին դիմորդների նախապատրաստական ուսուցումը: Խնդիր է դրվել ընթացիկ տարում արևելյան արտադրատեսակների ֆաբրիկայի և ագրոշինի № 10 տրեստի ուժերով կառուցել սննդի կոմբինատ Ղուկասյանի շրջանի Մեծ Սեպասար գյուղում, իսկ 1989—90 թթ. Լենինյան շրջխորհրդի գործկոմի և «Շիածան» կոմբինատի միջոցով՝ կենցաղսպասարկման կոմբինատ Ղուկասյանի շրջկենտրոնում: Երկու շրջանների շրջխորհուրդների գործկոմները որոշել են այս տարվա երրորդ եռամսյակում Լենինյան շրջանում բացել ֆիրմային խանութ և այնտեղ կազմակերպել Ղուկասյանի շրջանի անասնապահական մթերքների վաճառք:

Սերտ կապեր են հաստատվել Լենինյան շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների և Ղուկասյանի շրջանի գյուղերի ու տնտեսությունների միջև: Մայրաքաղաքի կոլեկտիվները ձգտում են առավել գործնական դարձնել շեֆական աշխատանքները: Այս առումով լավ օրինակ են ծառայում հատկապես «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման քիմիագործները, որոնք ստանձնել են Ղուկասյանի շրջկենտրոնի խորտնտեսության շեֆությունը: Վերջերս ձեռնարկության պատվիրակները այցելեցին ենթաշեֆ կոլտնտեսություն և տեղի ղեկավարների հետ ճշգրտեցին իրենց առաջիկա խնդիրներն ու անելիքները: Նրանք իրենց հետ տարան աղետյալների համար ստացված և միավորման պահեստում պահվող ավելի քան 600 ծանրոցներ և հանձնեցին ղուկասյանցիներին: Գյուղի կարիքները հոգալու նպատակով նրանց կտրամադրվեն 100 տոննա կիր, մի քանի տասնյակ տոննա պարարտացման նյութեր: Գյուղի բնակչությանը կհատկացվի նաև յոթ տոննա սպիտակեցնող հեղուկ: Այդ ամենն, անշուշտ, անվարձահատույց:

Անհրաժեշտության դեպքում միավորումը ղուկասյանցիներին կօգնի գյուղի սոցիալական առանձին պրոբլեմների լուծման գործում: Հնարավորություն կընձեռվի նրանց օգտվելու ձեռնարկության հանգստյան և առողջարարական օբյեկտների ծառայություններից: Ամռանը, յուրաքանչյուր հերթում, գյուղական շուրջ երեք տասնյակ երեխաներ կհյուրընկալվեն ու կհանգստանան միավորման Հանքավանի պիոներական ճամբարում: Ղուկասյանի աշխատավորության առջև պարբերաբար հանդես կգան ձեռնարկության մշակույթի պալատի գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվները՝ պարի և ժողգործիքների անսամբլները, հայկական և ռուսական ժողովրդական թատրոնները: Համանման ծրագրերով լայն պարտավորություններ են ստանձնել նաև «Հայէլեկտրամեքենա», կոշիկի «Մասիս» արտադրամիավորումները, ավտոդողերի գործարանը, նուրբ-բրդյա գործվածքների կոմբինատը և մյուս խոշոր ձեռնարկությունները:

Անասելի ծանր կացության մեջ հայտնված հայրենակիցներին սատարելու, նրանց հույսն ու հավատը վերականգնելու գործում լուրջ խնդիրներ ունի յուրաքանչյուր կոլեկտիվ ու անհատ: Այդ գիտակցումով են առաջնորդվում նաև Լենինյան շրջանի աշխատավորները և հնարավոր ամեն ինչ անում, որպեսզի ապաքինվի մեր ժողովրդի խորունկ վերքն ու մեղմանա հոգու ցավը:

---



# «ԻՆՉ ՏՎԵԼ ԵՄ՝ ՔՈՆՆ Է»

## (ԱՆՆԱ ԱԽՄԱՏՈՎԱՅԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ՄԵՐ ՕՐԵՐՈՒՄ, երբ 1985-ի կենսաբեր ապրիլի գաղափարները շարունակում են թափանցել հասարակական կյանքի բոլոր ոլորտները, մենք մեծ երկյուղածությամբ ենք դիմում ստեղծագործական այն ժառանգությանը, որը երկար տարիներ անիրավացիորեն լռության էր մատնված:

Աննա Ախմատովայի երջանիկ ու հրաշագործ բանաստեղծական ձիրքը քննություն բռնեց դարաշրջանի ճակատագրական պահերին, երկրային աղետների ու մարդկային դժբախտությունների ամենածանր ժամանակներում: Սարսափազդու լուրերի ողբերգական տարիներին լույս տեսած և հետագայում վերահրատարակված նրա «Երեկո» (1912), «Համրիչ» (1914), «Սպիտակ երամ» (1917) գրքերի առաջին վաղ հաջողություններից, «Ջղախոտ»-ի (1921) և « Anno Domini»-ի (1922) ճանաչում գտնելուց և ժամանակակից բանաստեղծների ու ընթերցողների լայն շրջանում Աննա Ախմատովայի խոսքի ուժի ու անկեղծության ըմբռնումից հետո տիրում է այն ծանր լռությունը, որը խիստ աղավաղեց հետագա սերունդների կողմից նրա բանաստեղծությունների իսկական հնչեղությունն ու խորությունը ընկալելը:

Վ. Վիլենկինի հետ զրուցելիս Ախմատովան ասել է. «Ամեն մի բանաստեղծ իր ողբերգությունն ունի: Այլապես նա բանաստեղծ չէ: Ինձ չգիտեն»: Աննա Ախմատովային նվիրված իր «Հարյուրմեկերորդ հայելում» գրքում Վ. Վիլենկինը վկայում է. «Ես համոզված եմ, որ երբ նա այդպես վրդովված ասաց, որ իրեն «չգիտեն», նկատի ուներ ոչ միայն 30-ական թվականների երկրորդ կեսի իր անտիպ բանաստեղծությունները և ոչ միայն «Պոեմ առանց հերոս»-ի լրիվ տեքստը, այլև շատ ու շատ ուրիշ՝ և՛ ավելի վաղ, և՛ ավելի ուշ, և՛ տպագրված, և՛ դեռևս չհրատարակված գործերը: Նա նկատի ուներ իր ստեղծագործությունն ամբողջությամբ վերցրած, միաձույլ համատեքստում ու շարժման մեջ...»:

Ա. Ախմատովայի բանաստեղծական ճակատագրի ամբողջականությունը՝ վեհաքանչ ու նախաստեղծ յուրաքանչյուր խոսքում, ակնհայտ է նրա և՛ առաջին, և՛ վերջին քնարական, օրագրային տողերում: Ախմատովայի վաղ քնարերգության մասին, որը բարձր է գնահատել Բլոկը, գրել են նաև Վ. Ժիրմունսկին, Յու. Տինյանովը, Բ. Էյխենբաումը, Վ. Վինոգրադովը: Բայց Ա. Ախմատովայի կարծիքով լավագույնը եղել է Ն. Վ. Նեդոբրովոյի հոդվածը, նվիրված «Համրիչին՝ փաստորեն մարգարեական մի հոդված նրա բանաստեղծական ձիրքի, նրա թրթռուն, զգայուն բառերի ամրության մասին: Բանաստեղծական աշխարհի առարկայականությունը, ընկալման թարմությունն ու սրությունը, նրա սրամտությունն ու պայծառա-



digitised by A.R.A.R.@

ցած մտքի իմաստուն ցավը, հիշողության մաքուր ուժը՝ այս ամենը մտել է լինելու երջանկությունը պարգևող բառի, կերպարի, հնչեղության կազմի մեջ, մարմնավորվել բանաստեղծի խոսքում.

*Բայց աստղերն են կապտում ու ցողն է փափուկ*
*Ու ամեն հանդիպում՝ հիասքանչ,*
*Սուրբ գրքում կարմիր տերևը թղկենու*
*Երգ-երգոցի էջում է դրված*:*

Ախմատովայի ստեղծագործությունը սկզբնավորվել է XIX—XX դարերի սահմանագծում: Դա բլոկյան «Հատուցման» ժամանակն էր, որն ուներ իր նախապատմությունը: Այն կապված է իննսունական թվականների Պետերբուրգի, Դոստոևսկու Պետերբուրգի հետ, դեռատի գիմնազիստուհու առաջին՝ ոչ միայն «հեթանոս մանկության» (Սև ծով, Խերսոնես) հետ: Դրանք Ցարսկոյե սելոյի հետ կապված հիշողություններ են: Ցարսկոյե սելոն Ախմատովայի համար ստեղծագործության լուսավոր աղբյուր ու կենդանի ժառանգություն է:

Ախմատովայի անավարտ ինքնակենսագրության, կյանքի վերջին տարիների գրառումների մեջ կա մի դառը խոստովանություն. «Իմ սերնդի մարդկանց չի սպառնում տխուր վերադարձ. մենք վերադարձի տեղ չունենք... Երբեմն ինձ թվում է, թե պավլովյան կայարանի բացման օրերին (երբ զբոսայգիներում այնքան ամայի ու քուրավետ է) կարելի է ավտոմեքենայով մեկնել այն վայրերը, որտեղ անսփոփ ստվերն ինձ է որոնում, բայց հետո սկսում եմ հասկանալ, որ դա հնարավոր չէ, որ չպետք է ներխուժել (այն էլ բենզինե թիթեղատուփով) հիշողության ապարանքները, որ ես ոչինչ չեմ տեսնի և դրանով միայն կջնջեմ այն, ինչ այնքան պայծառ տեսնում եմ հիմա»:

Բանաստեղծի հիշողությունը, որը ըստ նրա «ուժեղների տառապանք» է, հաղթահարում է այդ սրընթաց, ամենակործան սարսափը, որ Հորացիոսն անվանել է «ժամանակի վազք»...

«Ժամանակի վազքը» (1965). այսպես է անվանել Աննա Ախմատովան իր բանաստեղծությունների վերջին գիրքը, որը լույս է տեսել նրա կենդանության օրոք: «Մակագրություն գրքի վրա» (1959) բանաստեղծության մեջ նա սպառիչ պատմում է իր ճակատագրի մասին, որն անբաժան է «ժողովրդական ցավից»:

*Ինչպիսի ավեր— փլատակների*
*Տակից եմ խոսում ես ու ձայն տալիս.*

*Ես նորից կտամ ինչ ունեմ-չունեմ*
*Ու դա էլ, գիտեմ, քիչ կթվա ինձ:*

*Ձմռանը, ասես, մեռյալ էի մի*
*Ու փակել էի դռներն իմ տան,*
*Բայց միևնույն է՝ ձայնս կլսեն,*
*Բայց միևնույն է՝ ինձ կհավատան:*

«Մակագրության» համար Ախմատովան բնաբան է ընտրել Շոթա Ռուսթավելու «Վագրենավորը» պոեմի հետևյալ տողերը. «Ինչ տվել ես՝ քոնն է»: Սա, գահը դստերը ժառանգող թագավորի պատգամն է... Ի դեպ, այս խոսքերին վրացական սկզբնաղբյուրներից նույն փոխադրությամբ կարելի է հանդիպել Հովհաննես Թումանյանի «Վրաստանի բանաստեղծներին» բանաստեղծության ռուսերեն թարգմանության մեջ: Իսկ թարգմանիչը Անատոլի Նայմանն է, որը Աննա Ախմատովայի մտերիմ բարեկամն էր նրա կյանքի վերջին շրջանում: Այդ տարիներին նրա օրագրային էջերը՝ «Թերթեր օրագրից», ինքնակենսագրական արձակի գրառումները վկայում են, որ Ախմատովայի հոգին անհաղորդ չի եղել ժամանակի ողբերգական խոտորումներին: Բանաստեղծուհու ձիրքի այդ դիմակայումը կորուստներին, բառի այդ խոր պարզությունը, նրա հիշողությունը վեր են ածում «կենդանի աղմաստի», սերունդների գանձարանի, ոգու հայտնության:

Ախմատովայի ուշ մտահղացումը՝ «Ծաղկեպսակ մեռածներին» բանաստեղծությունների շարքը նվիրված է նրա մտերիմ, անմոռանալի գրողներին, ժամանակակիցներին...

* Հոդվածում Ա. Ախմատովայից մեջբերված բանաստեղծությունները թարգմանել է Լ. Տիգրանյանը:



*Սերունդ իմ, սերունդ, երկու պատերազմ,*
*Լուսավորեց քո ուղին ահալի,—*

կասի նա իր սերնդի ճակատագրի մասին...

*Բոլոր անթաղներին թաղեցի ես,*
*Ողբացի բոլորին, ինձ վրա ո՞վ է ողբալու տեսնես:*

Այս երկտողը (1958) իր բանալին ունի Հորացիոսի տողերում. «Շատ հսկաներ կային մինչ Ագամեմնոնը, բայց նրանք մոռացվեցին, չողբացված, քանի որ նրանց համար ողբասացներ չգտնվեցին...»: Ողբերգության մեջ կնոջ խոշորագույն դերը՝ ողբասացի դերը (իսկ «Պոեմ առանց հերոսի»-ում, որ ստեղծվել է ավելի քան քսան տարում (1940—1962)՝ «Ճակատագրական երգչախմբի դերը») Ախմատովայի ստեղծագործության մեջ զուգակցվել է նրա կողմից գիտակցված բանաստեղծի բարձր առաքելության, բարձր էության հետ:

Ախմատովայի սերնդի ճակատագիրը ողբերգական էր և անքակտելիորեն կապված էր ժամանակի ողբերգության բոլոր գործողությունների հետ: Ժամանակն իր համեկնաբանություններն է ունեցել բանաստեղծությունների նկատմամբ, նրանց հաղորդելով ողբերգական քայլք: 1921 թվականին գնդակահարում են Գումիլյովին, 1938 թվականին հեռավորարևելյան ճամբարում վախճանվում է Օսիպ Մանդելշտամը: Երկու բանաստեղծ, երկու ընկեր, երկու մարդ, որոնց ճակատագրերը չի կարելի անջատել Ա. Ախմատովայի ճակատագրից: Երկու անուն, որոնք չի կարելի զատել նրա անունից: Բանաստեղծ Գումիլյովի «տառապյալ ստվերը», «անսփոփ ստվերը», «Ռեքվիեմ»-ից կտրված անունն ու «այրված» («մահապատժի ենթարկված») բանաստեղծությունների երամի մոխիրը՝ այս ամենը պահանջում էր մի մուսա, որը վտարանդի բանաստեղծին թելադրեր դժոխքի գիրքը, պուշկինյան «ամպիոպը՝ ազատության խորհրդանիշը», եղերամորը, երաժշտության անվախ սփոփանքը,— և այդ ամենը սպասում են «ուշացած գնահատականի»...

«Ուշացած գնահատական» ոչ միայն նրա համար, որ Ա. Ախմատովան մնաց հայրենիքում, երբ ուրիշները լքեցին այն հեղափոխության առաջին տարիներին, ոչ միայն այն բանաստեղծությունների համար, որոնք գրվեցին ռեպրեսիաների չարաբաստիկ տասնամյակներում և լայն ընթերցողներին հայտնի են դառնում լոկ այսօր (ինչպիսիք են, օրինակ, միայն 1987 թվականին կենտրոնական ամսագրերում տպագրված «Ռեքվիեմի» «Այրված էջերի» ճակատագիրը, բանաստեղծությունների այն շարքի ճակատագիրը, որ ծնվեց Գումիլյովի և Ախմատովայի որդու՝ Լև Գումիլյովի ձերբակալման կապակցությամբ, որին են վերաբերում նաև «Խեցիները»: Իսկ ժամանակի ողբերգական հողմում բանաստեղծի և ընկերներից մի քանիսի հիշողության մեջ պահպանված այդ «այրված» էջերը առնչվում են մեկ այլ՝ «Նմանակում հայկականին» բանաստեղծությանը, դարձյալ որդու մասին, Օ. Մանդելշտամին նվիրված «Մի փոքր աշխարհագրություն» բանաստեղծությանը: Իրենց «ուշացած գնահատականին» են սպասում նաև Ախմատովայի երկու գրքերը՝ «Եղեգն»-ը (վեցերորդ գիրքը, որ սկզբում կոչվել է «Ուռենի») և «Կենտ»-ը (յոթերորդ գիրքը, որում ըստ նախնական մտահղացման ամփոփված են եղել 1936—1946 թվականների բանաստեղծությունները): Գ. Մակոգոնենկոն, որը պահել է «Կենտ»-ի ձեռագիրը, յոթերորդ գիրքն անվանել է «կործանված հրատարակություն»: Գիրքը լույս չտեսավ. «Ախմատովայի վրա փլուզվեց 1946 թվականի ժդանովյան որոշումը: Յոթերորդ գրքի սկզբնական մտահղացումը ըստ բանաստեղծությունների բաժինների ու շարքերի հարկ եղավ ցրել այլ հրատարակություններում, որոնք հեղինակի կամքը հաղորդեցին աղավաղված:

Աննա Ախմատովայի ինքնակենսագրական գրառումներում խոսվում է դեռևս 1924 թվականից նրա բանաստեղծությունների վրա արգելք դնելու մասին. «Ինձ այլևս չէին տպում: Եվ դա շարունակվեց մինչև 1939 թվականը...

Արդեն պատրաստի երկհատորյակը Գեսենի հրատարակչությունում («Պետրոգրադ») ոչնչացվեց, երբեմն թափվող լուտանքը դարձավ պլանավորված ու կանխամտածված (Լելևիչը «Նա սրսուու», Պերցովը՝ «Ժիզն իսկուստվա» ամսագրում և այլն), տեղ-տեղ հասնելով 12 բալի, այսինքն մահացու փոթորկի: Թարգմանություններ, բացի Ռուբենսի նամակներից (30 թվական), ինձ չէին տալիս: Սակայն իմ առաջին պուշկինյան աշխատանքը («Պուշկինի վերջին պատմվածքը») «Զվեզդա»-ում տպագրվեց: Արգելքը վերաբերում էր միայն բանաստեղծություններին»:



digitised by A.R.A.R.@

Բանաստեղծությունների արգելումից հետո, բանաստեղծություններ, որոնք ճանաչվեցին որպես ռուս իսկական խոշոր քնարերգուի ստեղծագործություններ (առանց որոնց անհնար է դարասկզբի ռուսական պոեզիան), սկսվում է Ախմատովայի պոեզիան լռության մատնելու և «բանտելու» սարսափելի շրջանը: Ինչպես գրում է Ախմատովան, «... 1936-ին սկսում եմ գրել, բայց ձեռագիրս փոխվել է, ձայնս արդեն այլ կերպ է հնչում: Իսկ կյանքն առաջարկում է սանձել այնպիսի Պեգասի, որն ինչ-որ բանով հիշեցնում է Հայտնության Սպիտակ ձիուն կամ այն ժամանակ դեռևս չծնված բանաստեղծությունների Սև ձիուն... Հին ձևերին վերադառնալ այլևս հնարավոր չէր...»:

1936 թվականի առաջին ստեղծագործությունն է «Բանաստեղծը» («Բորիս Պաստեռնակ»): Այդ թվականի գարնանը «շնորհազրկված բանաստեղծ» Օ. Մանդելշտամին է նվիրված «Վորոնեժ» բանաստեղծությունը: «Հատընտիրը», որի մեջ, ըստ նրա խոսքերի, «զետեղվեցին ոչ միայն իմ բոլոր գրքերից վերցված ավելի վաղ հրատարակված բանաստեղծություններ, այլև 1930—1935 թվականների բանաստեղծություններ»՝ լույս չի տեսել: Միայն հետագայում, 1940 թվականին, լույս կտեսնի վեց գրքերն ամփոփող ժողովածուն, որի վեցերորդ բաժինը կլինի «Ուռենին»: Մանդելշտամի անվան հետ է կապված «Ռեքվիեմի» առաջին բանաստեղծություններից մեկը, գրված 1935 թվականի աշնանը («Քեզ տարան լուսաբացին...»):

Հայկական թեման Ախմատովայի ստեղծագործության մեջ թափանցում է նույն 30-ական թվականներին: «Նմանակում հայկականին» բանաստեղծությունը նույնպես գրվել է 30-ական թվականներին. հավանորեն այն շրջանում, երբ ստեղծվել է «Ռեքվիեմը».

*Սև մաքու տեսքով, ոտքերով չորսուկ,*
*Կգամ երազիդ, կմոտենամ քեզ,*
*Կըմկկամ թույլ, կըռռնամ խորունկ.*
*— Համո՞վ էր արդյոք ճաշդ փադիշահ.*
*Աշխարհը ձեռքումդ՝ ասես հուլունք,*
*Եվ ալլահն է քեզ հովանավոր...*
*Համո՞վ էր ասա, որդիս քեզ համար,*
*Եվ երեխեքիդ համար համո՞վ էր։*

Մայրական խելահեղ վշտի թեման հնչում է մեկ այլ՝ «Ռուսական Տրիանոն» (1925—1935) պոեմում, որը Ախմատովան նշել է որպես «Հիշողություն 1914—1917 թթ. պատերազմի մասին».

*Եվ կործանվեց ամրոցն էրզրումի*
*Դարդանելի կոկորդը լցվեց արյունով...*

«Նմանակում հայկականին» բանաստեղծության սկզբնաղբյուրը հայ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի քառյակն է. «Երազումս մի մաքի, մոտս եկավ հարցմունքի...», որը Ախմատովան կարող էր ռուսերեն կարդացած լինել Օ. Ռումերի կամ Ս. Գորոդեցկու թարգմանությամբ, կարող էր լսած լինել Օսիպ Մանդելշտամի վերապատմածը: Բանաստեղծությունը թվագրված է 1917 թվականի դեկտեմբերի 24-ին, երբ դեռ հոսում էր արյունը առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ, դեռ չէին մեղմացել Հայաստանի 1915 թվականի ապրիլի վերքերը: «Նմանակում հայկականին»-ը հնչեղությամբ խորապես ժողովրդական է, ինչպես և իր ակունքը... Սև մաքին, ինչպես գազանները հեքիաթներում, ձեռք է բերում խոսելու ընդունակություն և հայտնվում բռնակալին կանխագուշակ-երազում: Նա ոչ թե բռնակալին սոսկ հարցնում է իր զոհ-երեխաների մասին, ոչ միայն ոռնում ու ողբում է իր գառնուկ որդու համար, այլև կանխագուշակում է վրիժառությունը: «Նմանակման» ժանրը մի տեսակ տուրք է պուշկինյան նմանակման ավանդույթին: «Ինչպես էր որդյակիս համը և՛ քեզ համար, և՛ քո երեխաների» առոգանության մեջ կա Պուշկինի «Պղնձե հեծյալը» պոեմի «Դեռ սպասիր»-ի առոգանությունը: Այս կերպարը ծնվել է ժողովրդի ցավից, իսկ մայրական ձայնը դառնում է ժողովրդի խղճի ձայնը, նրա դատավորն ու անեծքը և չի հավատում բռնակալի բարեսրտությանը: Հնարավոր է, որ «Նմանակում հայկականին»-ը ունի ավելի հին սկզբնաղբյուր՝ Վարդան Այգեկցու «Իշխանն ու այրին» առակը: Կարո՞ղ էր Ախմատովան իմանալ այս առակը Մանդելշտամի վերապատմումով՝ հայտնի չէ, բայց և բացառված չէ...

Մանդելշտամի կինը պատմում է. «Մենք վերադարձանք Հայաստանից և ամենից առաջ փոխեցինք մեր ընկերուհու անունը: Բոլոր նախկին անունները՝ Անուշկա, Անյուտա, Աննա Անդրեևնա մեզ անհետաքրքիր թվացին: Վերջինը, իհարկե, մնաց ընդմիշտ... բայց նոր անունը մեկից կպավ նրան. մինչև վերջին օրը ես նրան կոչում էի այդ նոր անունով, այդպես էր նա ստորագրում նամակներում՝ ԱՆՈՒՇ: Անուշ անունը մեզ հիշեցնում էր Հայաստանը, որի մասին Մանդելշտամը, ինչպես ամեն տեղ գրում է, չէր դադարում երազել...»:

1930 թվականի մայիսին Մանդելշտամը կնոջ հետ եկավ Հայաստան, որտեղ բանաստեղծը ստեղծագործական նոր վերելք ապրեց: Նա ունեցավ ստեղծագործելու ծարավ ու փրկության հույս: «Շաբաթների երկրում» անցկացրած «երկուհարյուր օրը» մեզ նվիրեց «Հայաստան» բանաստեղծությունների շարքը, ժանրային իմաստով Պուշկինի «Ճանապարհորդություն դեպի Էրզրումից» սկիզբ առնող «Ճանապարհորդություն Հայաստանում» արձակը, որոնք Ախմատովայի բնութագրմամբ համարվել են անմահ ստեղծագործություններ: Պարզվում է, սակայն, որ բանաստեղծի Հայաստանում մնալու երազանքը շատ է անիրագործելի, և հոկտեմբեր ամսին նա ընդմիշտ թողնում է այն: Բանաստեղծը մեկնում է Թիֆլիս, որտեղ ապրում է երկու-երեք շաբաթ և գրեթե ամեն օր հանդիպում Եղիշե Չարենցին, որն այն ժամանակ տագնապալի օրեր էր ապրում: Թիֆլիս տանող ճանապարհն անցնում էր Գյանջայի, Շուշու, Ստեփանակերտի միջով...

*Ես Ղարաբաղն եմ հիշում լեռնային՝*
*Գազանաբարո Շուշի քաղաք,*
*Ուր ճաշակել եմ սարսափներ մահի*
*Հոգուս խռովքին համանվագ։*

(Թարգմ.՝ Հ. Բեյլերյան)

Այս տողերը Մանդելշտամի «Ֆայտոնչին» բանաստեղծությունից են (1931): Հեղինակը պատմում է Մոսկվա վերադառնալու ճանապարհին կրած սարսափների մասին: Բանաստեղծությունն իր բնույթով մոտ է «Հայաստան» շարքին:

Հայաստանում Մանդելշտամը ծանոթացավ Չարենցի հետ, որը սիրում ու գնահատում էր նրա բանաստեղծությունները (Չարենցի գրադարանում հիմա էլ պահվում է Մանդելշտամի բանաստեղծությունների գրքի 1928 թվականի հրատարակությունը), իսկ բանաստեղծուհի Մարո Մարգարյանի վկայությամբ, նաև՝ Աննա Ախմատովայի պոեզիան: 1936 թվականին Չարենցը ուսանողուհի Մարո Մարգարյանին Ախմատովայի մասին ասել է. «Ռուս գրականության մեջ նա ամենանուրբ ու խորը, բացառիկ երևույթ է և այս խառնակ օրերում այնքան մաքուր ու կատարյալ...»: Աննա Ախմատովայի ստեղծագործությունների նկատմամբ հայ բանաստեղծի սիրո այս կենդանի վկայությունը անգնահատելի է: Պահպանվել է նաև Եղիշե Չարենցի 1935 թվականին գրած բացիկը ուղղված իր բանաստեղծությունների ռուսերեն առաջին ժողովածուի խմբագիր Իգոր Պոստուպալսկուն: Ժողովածուն պետք է հրատարակվեր 1936—37 թթ., և Չարենցը խորապես շահագրգռված էր, որ այն թարգմանեին գեղարվեստական խոսքի այնպիսի վարպետներ, ինչպիսին Պաստեռնակն ու Ախմատովան էին:

*«Հարգելի Իգոր*

*Ես շատ շնորհակալ եմ քեզանից, որ դու իմ ստեղծագործությունների թարգմանության մեջ ներգրավել ես Աննա Ախմատովային։ Այդ մեծ, ինձ վաղուց հայտնի ռուս բանաստեղծուհու թարգմանությունները ինձ շատ են ուրախացնում, առավել ևս, որ նրանք կարծես թե հավատարի՞մ են բնագրին։ Խնդրում եմ, առիթի դեպքում հայտնիր նրան իմ շնորհակալությունը։ Ես ինքս կգրեի նրան, բայց առայժմ մի տեսակ հարմար չէ։*

*Շնորհակալություն.*

*Եղիշե Չ.»*

(Ժողովածուն 30-ական թվականներին լույս չտեսավ):

1936 թվականին Մոսկվայում հանդիպելով Պոստուպալսկուն, Աննա Ախմատովան ասել է, որ բացիկի համար ուրախ է: Իսկ նույն թվականի սեպտեմբերի 29-ին լենինգրադյան թերթում լույս է տեսել Ե. Չարենցի «Մորս համար գազել»-ը Ախմատովայի թարգմանությամբ՝ նրա այսպիսի խնդրանքով. «Այս բանաստեղծության հոնորարը խնդրում եմ փոխանցել իրենց երկրի ազատության ու անկախության համար ֆաշիստների դեմ արիաբար մարտնչող իսպանական հերոս ժողովրդի կա-



digitised by A.R.A.R.@

նանց ու երեխաների օգնության ֆոնդին»։ Իր հարցազրույցում Ախմատովան կասի. «Ես շատ ժամանակ եմ տրամադրել թարգմանություններին։ Վերջերս «Զվեզդա»-ում տպագրվեց Դանիել Վարուժանի «Առաջին մեղքը» բանաստեղծության իմ թարգմանությունը։ Այժմ ես ավարտել եմ ժամանակակից հայ բանաստեղծ Չարենցի երկու բանաստեղծությունների թարգմանությունը»։

Հնարավոր է, որ, հենց այդ ժամանակ էլ Ախմատովան թարգմանել է Չարենցի «Ձմեռային պալատի ներքնահարկում»-ը, որը թեմատիկ առումով մոտ է նույն շրջանի նրա «պուշկինյան ուսումնասիրություններին»։ Ախմատովայի թարգմանության մեջ բնորոշ գծերը հայտնվում են վայրկենապես՝ դեկաբրիստներին նա անվանում է «բարեպաշտներ», իսկ թագավորին՝ «առլեկին», ինչպես Չարենցի մոտ՝ «թագակիր ծաղրածու»։

Ավելի ուշ գրած «Պուշկինը և Նևայի ծովափը» ակնարկում, ականատես արդեն այլ իրադարձությունների, նա կասի. «Դեկաբրիստների ճակատագրի և նրանց վախճանի մասին միտքը մշտապես հետապնդել է Պուշկինին». «Պուշկինը կարիք չուներ նրանց հիշելու. նա պարզապես նրանց չէր մոռանում՝ ո՛չ կենդանի, ո՛չ մեռած»։ Ինչպիսին է արձագանքը Մանդելշտամի խոսքերին, որ նա ասել էր 1937 թվականին բանաստեղծ ընկերների (առաջին հերթին Նիկոլայ Գումիլյովի մասին). «Ես չեմ հրաժարվում ո՛չ ողջերից, ո՛չ մեռածներից»։

Ինոկենտի Աննենսկին, մի բանաստեղծ, որին Ախմատովան համարել է իր ուսուցիչը և հավասարել Գումիլյովի, Մանդելշտամի ու Պաստեռնակի ստեղծագործական կյանքում նրա կատարած դերը, «Պուշկինն ու Ցարսկոյե սելոն» Ախմատովային ոչ անհայտ զեկուցման մեջ ասել է. «Այստեղ չե՞ն արդյոք Պուշկինին հուզել պատմական ճշմարտության ու հատուցման առաջին գաղափարները»։

Պուշկինյան հավատարմությունը դեկաբրիստների հիշատակին, «այն, որ բանաստեղծը անտիկ աշխարհի բարձր հավատալիքներին հետևելով բարեպաշտի գերեզմանը դիտում էր որպես հայրենիքի սրբություն», դառնում է կենդանի, ժառանգած թեմա Ախմատովայի ուշ շրջանի պոեզիայի համար։ Այս թեման դրսևորվել է նաև հայ բանաստեղծների ստեղծագործությունների ընտրության հարցում։ Եվ, անտարակույս, հայ պոեզիայից կատարած Ախմատովայի թարգմանությունները նույնպես ունեն իրենց «նախապատմությունը»։ Ե՛վ Չարենցը, և՛ Տերյանը, և՛ Իսահակյանը, և՛ Վարուժանը, թեև տարբեր սերունդների պատկանող, բայց XX դարի բանաստեղծներ են, իրենց բանաստեղծական ճակատագրով, տարբեր ձայներով, բայց այդ «ձայների փոխկանչում», «օդային ուղիներով» «ճանապարհորդելիս» մի ինչ-որ կարևոր ու կենսատու պահի ձուլվել են Աննա Ախմատովայի ձայնին, նրա կենդանի հիշողությանը, որը մոռացության գետի՝ Լետայի միջով հասցնում է մարդկային հիշողությանը։

*Ասես հրաշեկ լավայի նման*
*Հիշողությունն է հոսում մտքիս մեջ։*
*Ասես արցունքներն իմ սեփական*
*Խմել եմ ուրիշ մեկի աչքերից։*

Լև Օզերովը հիշում է Աննա Ախմատովայի խոսքերը, որոնցում արտահայտված է թարգմանչի նրա հավատամքը. «Ես պետք է մնամ ստվերում, որպեսզի ամբողջ լույսն ընկնի բնագրի վրա, այնպես ես կգրեի իմ բանաստեղծությունները»։ Սահմանագիծ անցկացնելով իր «պարզապես թելադրած տողերի» և նրա ընդունած բնագրի դիկտատի միջև, մոտիվների ողջ հնչեղությամբ ու թեմաների հարազատությամբ հանդերձ Ախմատովան թարգմանության մեջ խուսափել է իր և «ուրիշի» բառերի ծայրահեղ նմանությունից ու ավելորդ կրկնություններից։ Եվ թերևս, իրեն «ուրիշի» մեջ չկրկնելու շնորհիվ, Ախմատովայի թարգմանությունները մեզ պարգևում են գոյի ևս մի եզակի կողմը՝ բառը։

Հիշողության ընտրությունը նրա թարգմանություններում դրսևորվում է այնքան անսպասելի լույսի տակ, որ ակնհայտ է դառնում ուրիշ ձայնի, ուրիշ անվան արձագանքը։ Այսպես, Գումիլյովի անունը հայտնվում է Ախմատովայի կողմից Ավ. Իսահակյանի «Ալագյազի մանիներից» ընտրած մոտիվների ասպեկտում։ Գումիլյովի «Երազ» բանաստեղծությունը («Հառաչեցի ես վատ երազից...») թեմայով զարմանալիորեն մոտ է Ախմատովայի թարգմանած «Ծող շափաղին եկա, կանգնա...», «Կանգնել եմ մոլոր քողտիկիդ առջև, շվաքիդ մատաղ, դուռդ բաց արա...», «Երազիս մեջ յինը տեսա...» բանաստեղծություններին։



Լացող ուռենին խորապես ժողովրդական կերպար է, զոհված սիրահարի վրա ողբացող ուռենին, մերժված սիրուց լացող ուռենին, Հ. Թումանյանի Անուշի երգում աղջիկը վշտից ուռենի է դարձել, երբ սիրելին իրեն մոռացել է. կերպար, որը թերևս եկել է Մանդելշտամի Հայաստանի ցոլքի հետ և Ախմատովայի «Ռեքվիեմի», «որտեղ ստվերն անփոփ ինձ է որոնում» տողերը նույնպես արձագանքում են Իսահակյանից կատարված թարգմանությունը.

*Ա՜խ, ինձ ափին մեռած տեսա*
*Ուռին վրաս լուռ կուլար...*

Ախմատովայի ուշ խոստովանության մեջ, թե ինքը «միշտ Հայաստանի բարեկամն է եղել», խոսքն, անշուշտ, սոսկ նրա թարգմանություններին չի վերաբերում։ Ամենավաղ թարգմանությունները, որ նա կատարել է 1936 թվականին, բացահայտում են այդ մոտիկությունը հայկական թեմային՝ մայրական անձնազոհ սիրուն, որը կարմիր թելի նման ձգվում է հետպատերազմյան հայկական պոեզիայից արված թարգմանությունների մեջ։ Հիշողության ընտրությունը կանգ կառնի Ավ. Իսահակյանի «Ինձ ասացին...», «Ուրիշի վշտից», «Հրեական առասպել» բանաստեղծությունների, Եղիշե Չարենցից, Մարո Մարգարյանից կատարած թարգմանությունների վրա։ Եվ Դանթեն, որ հետ չնայեց իրեն վտարող Ֆլորենցիային և բանաստեղծի «կարոտի իրիկնամուտը» (Չարենցի «Հայրենիքում» բանաստեղծությունից) և ծեր թթենու տակ որդուն սպասող մոր «տխրությունը անծիր» («Մորս համար գազել») և Սոմայի «հրե աչքերը»՝ այս ամենը բանաստեղծի մի մեծ թեմայի տարբեր կողմեր են. անձնազոհ սեր հայրենի հողի, մոր նկատմամբ...

Կովկասյան թեման Ախմատովայի պոեզիայի մեջ մտնում է Պուշկինի ու Լերմոնտովի անուններով («Եղեգն»).

*Պուշկինի աքսորն այստեղ սկսվեց,*
*Լերմոնտովինը ավարտվեց այստեղ...*

Այդ նույն, 1927 թվականին, դարձյալ Կիսլովոդսկում Ախմատովան գրում է «Կովկասյան» քառյակը։

*Ամբողջ տասը տարի քո սիրելին*
*Չի լսել՝ ամպրոպն ինչպես է երգում,*
*Ամբողջ տասը տարի սուրբ հարավին*
*Կարոտել են աչքերն իր մեղավոր։*

Այս քառյակը տանում է դեպի հեռավոր «տասնվեց թվականը», երբ Ախմատովան վերջին անգամ եղավ Ղրիմում։ «Եթե ճողփում է լուսնային ահը...» (1928) և «Կարապին իմ հետևից չե՞ս ուղարկել...» (1936) բանաստեղծությունները «Տասնվեց թվական» շարքից նույնպես առնչվում են Կովկասին։ Արդյո՞ք Գումիլյով անունը չի թաքնված դրանցում, Գումիլյովի, որը Վրաստանում անցկացրած պատանեկան տարիների մասին է պատմում։

*Հավատում էր նա հարավ-հողմերին՝*
*Ամեն ձայնի մեջ քնարի հառաչ,*
*Ասում էր՝ կյանքն իմ ընկերուհին է,*
*Ոտքիս տակ գորգը՝ մի ամբողջ աշխարհ։*

Երբ հիսունական թվականների վերջերին Ախմատովան թարգմանեց Վահան Տերյանի հինգ բանաստեղծությունները, նրա գիրքը կազմող Կ. Գրիգորյանի հետ զրուցելիս հիշեց իր միակ հանդիպումը Վ. Տերյանի հետ, որը տեղի էր ունեցել 1915 թվականին Պետրոգրադում. «Աղոտ, բայց հիշում եմ փոքր-ինչ թխադեմ, նիհարավուն, շատ ամաչկոտ մի երիտասարդի, որը խոստացավ գալ ինձ մոտ, բայց չեկավ»։ Նվարդ Թումանյանին ուղղած երեք նամակներում Վահան Տերյանը հիշատակում է Ախմատովայի բանաստեղծությունների գրքի մասին։ Խոսքը վերաբերում է «Համրիչ»-ին, որը Տերյանը որոշել էր նվիրել Նվարդին։ Սակայն այդ նվիրաբերումը Տերյանին չի հաջողվել, քանի որ գիրքը չի կարողացել ձեռք բերել։ Բայց նա երկար ժամանակ չի մոռացել իր այդ չիրականացված խոստումը։ Ահա նրա 1916



digitised by A.R.A.R.@

թվականի հունիսին Պետրոգրադից գրած նամակը, որով հաղորդում է, որ Նվարդի եղբոր՝ Մուշեղի հետ Նվարդին նվեր է ուղարկում Աննա Ախմատովայի գիրքը, սակայն նամակի վերջում ավելացնում է. «Սիրելի Նվարդ, այսօր ժամանակ չունեցա վերցնելու Աննայի բանաստեղծությունները, վաղը կուղարկեմ»:

Նամակում բարձր գնահատական է տրված Աննա Ախմատովայի վաղ շրջանի բանաստեղծություններին և հիշատակվում է այն միակ հանդիպման մասին, որը, հավանաբար, տեղի էր ունեցել 1915 թվականի փետրվարի 11-ին «Թափառական շուն» սրճարանում: Հայտնի է, որ և Ախմատովան, և Տերյանը ներկա են եղել Վլ. Մայակովսկու ելույթին, որը կարդացել է «Զե՛զ» բանաստեղծությունը: Դա եղել է բանաստեղծների այդ սրճարանի գոյության վերջին օրերին:

Ահա մի հատված այդ նամակից. «Սրանք Աննա Ախմատովայի բանաստեղծություններն են, որ վաղուց էի ուզում ուղարկել քեզ: Ես սիրում եմ այդ բանաստեղծուհուն, սիրիր նրան և դու, նա արժանի է մեր և արվեստասերների սիրուն: Մի անգամ նրա հետ ծանոթացա և նա կանչեց մոտը՝ խնդրելով, որ հետս իմ գիրքը տանեմ: Բայց ես «անկյալ»-աքար մինչև այժմ չեմ գնացել: Հիմա, կարծեմ, նա Ղրիմում է և խիստ հիվանդ է՝ խեղճը թոքախտ ունի: Նա հայտնի բանաստեղծ Գումիլյովի կինն է, բայց իր ամուսնուց անհամեմատ ավելի տաղանդավոր ու ավելի հայտնի է...»:

1950 թվականին Ախմատովան թարգմանում է Մարո Մարգարյանի բանաստեղծությունները: Մեկ-երկու տարի անց, ինչպես պատմում է հայ բանաստեղծուհին, Մարիա Պետրովիխը Ախմատովային է հանձնում նրա նոր սիրային բանաստեղծությունները: «Երբ մենք հանդիպեցինք Աննա Ախմատովայի հետ,— գրում է Մարո Մարգարյանը,— նա ասաց. «Բանաստեղծությունները լավն են, ես դրանք հաճույքով թարգմանեցի, բայց ու՞ր են ձեր պատկերավոր բանաստեղծությունները, որոնցում շնչում է ձեր Հայաստանը, հողը, բնությունը: Պետք չէ, որ դուք ընտրեք, բերեք ինձ, ես ինքս կընտրեմ: Բերեք, քանի ես կամ, քանի ես աշխատում եմ»:

Բանտային հերթերից, տաշքենդյան էվակուացիայից, Ֆոնտանի Դոմ կոչվող իր տան մենակությունից ու աղքատությունից հետո Ախմատովան ճաշակեց և փառքը: Ի դեպ այդ տան մասին էր Ախմատովան գրել.

*Ես աղքատ եկա այստեղ,*
*Աղքատ էլ գնում եմ այստեղից:*

Ախմատովային սկսեցին հրատարակել 50-ական թվականների վերջերից, դեռ ոչ լրիվ, այլ բանաստեղծությունների «վատ ընտրված» ժողովածուներով, որոնցից կենդանության օրոք ամենալիակատարը վերջին՝ «Ժամանակի վազքը» հատորյակն էր միայն, կազմաշապկին Մոդիլյանիի կատարած նկարը: Սակայն հայրենիքում դեռևս տպագրված չէին «Ռեքվիեմն» ու «Գաղտնի տետրը»: Ու թեև «Կեսգիշերային բանաստեղծությունները» ու «Մասրենին է ծաղկում»-ը ներկայանում էին իրենց ամբողջ հիանալի խորհրդանիշերով, հրաշալի և խորհրդավոր լուսավորումով, իսկ Ախմատովայի Մուսային 60-ական թվականներին մեծարում էին Իտալիայում ու Անգլիայում և նրա ձայնը ճանաչում էր գտել, բայց դեռ որքան հեռու էր այն օրը, երբ ամբողջ ժողովուրդը կլսեր «Ռեքվիեմը»:

*Ես աղոթում եմ ոչ լոկ ինձ համար,*
*Այլ բոլոր նրանց, ովքեր որ ինձ հետ,*
*Ցրտին, թե շոգին, ձմեռ թե ամառ*
*Կանգնել են այն կույր, կարմիր պատի տակ:*

1965 թվականի հոկտեմբերի 19-ին, երբ նշվում էր Դանթեի ծննդյան 700-ամյակը, Ախմատովան հանդես եկավ «Խոսք Դանթեի մասին» ելույթով, որը, ցավոք, եղավ նրա վերջին ելույթը: Դանթեի մասին նա մասնավորապես ասաց. «Իմ ընկերների ու ժամանակակիցների համար մեծագույն, անհասանելի ուսուցիչը միշտ եղել է Դանթեն»:

Աննա Ախմատովան մահացավ 1966 թվականի մարտի 5-ին: Նա թաղված է Լենինգրադի մերձակայքում, Կոմարովոյի գերեզմանատանը: Այն տունը (Ֆոնտանի Դոմ), ուր նա ապրել է երկար տարիներ, ականատես լինելով մեկը մյուսին հաջորդող դժբախտություններին, այժմ վեր է ածվել բանաստեղծի տուն-թանգարանի, որը կբացվի Աննա Ախմատովայի ծննդյան հարյուրամյա հոբելյանի օրը: Իր բանաստեղծությունը նա անվանել է «Անհնազանդ», իսկ պատերազմի տարիներին Տաշքենդում գրած «Արիություն» բանաստեղծության մեջ բառն անվանել է «ազատ ու մաքուր»: Եվ թարգմանելով զոհված բանաստեղծ Չարենցի «Մեր լեզուն», նա ստեղծել է «վայրի», ազատ, անհնազանդ լեզվի կերպարը՝ աղբյուրից էլ ջինջ, որը դիմացել է լռության ու հառաչանքի, գերության ու հուսահատության, ներբողային շինծու ճառերի տարիներին:

Պատահական չէ, որ «Ռեքվիեմ»-ի «Դատավճիռ»-ը Ախմատովան գրել է «Իմ ինչին է պետք ներբողային շքախումբը...» («Արհեստի գաղտնիքները» շարքից) բանաստեղծության հակառակ էջում:

Թարգմանելով Չարենցի «Մեր լեզուն» Ախմատովան ստեղծել է Բառ-լուսատուի մաքրամաքուր կերպարը.

*Պայծառ է նա, որպես մշտաբորբոք փարոս*
*Վառված հրով անշեղ դարերում հին:*

Ախմատովայի «Այդ անցաթուղթն է քո անմահության» տողը ունի «հայկական թեմայի» իր սկզբնաղբյուրը՝ Մանդելշտամի արձակը Հայաստանի մասին, որտեղ կա ախմատովյան տողի արձագանքը. «Ինձ «Անհուշ» բերդի անցաթուղթ տու՛ր»: «Անհուշ» բերդը բանտ է, որտեղ տառապել են պարսից Շապուհ արքայի կալանավորները և նրանց հետ՝ հայոց Արշակ թագավորը: Նրանց անունները պետք է ջնջվեին հիշողությունից, մոռացվեին, ոչնչացվեին: «Անհուշ» բերդը մոռացության բերդ է: «Պոեմ առանց հերոսի» ստեղծագործության մեջ Նևան մոռացության գետ Լետան է, որի մի կում ջուրն էլ բավական է, որ մարդ ամեն ինչ մոռանա, իսկ «անցաթուղթն է քո անմահության» տողը Օրփեոսի՝ խավարի թագավորությունից լույս աշխարհ վերադարձած երգչի թեման է: Չմոռանալ, անգամ ամենադառը, ամենածանր տառապանքի ժամանակ, չմոռանալ ժողովրդի ցավը, դառնալ հիշողություն և հայտնություն, լիառատ ճշմարտություն, որպեսզի «նորից սովորել ապրել», զգալ վերջին վարդի թարմությունը, չմոռանալ անգամ Լետայից հետո, պահել քարի կենդանի կրակը, մարդկային հիշողության կրակը...

**ԳԱՅԱՆԵ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ**



digitised by A.R.A.R.@

# ԱՐԴԻ ԳՐԱԿԱՆ ՀԱՅԵՐԵՆԸ

## (ԱՌԿԱ ՎԻՃԱԿԸ, ՀՈԳՍԵՐԸ, ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ)

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՄԵՐ ՆԱԽՆԻՆԵՐԸ մեզ թողել են հոգևոր ու նյութական մշակույթի մեծ ժառանգություն: Դա մեզ և՛ ուրախացնում է, և՛ պարտավորեցնում... Բայց սոսկ ուրախանալով ու հպարտանալով առաջ չենք գնա: Զգալով մեր պատասխանատվությունը՝ այնպես պիտի աշխատենք ու արարենք, որ ժառանգածը հարստացնենք, մերն ավելացնենք, որպեսզի գալիք սերունդը կարողանա մեզնից սովորել:

Հայ մարդու ամենամեծ ժառանգությունը հայոց լեզուն է, որ վեհորեն հնչում է մեր գյուղերում ու քաղաքներում, աշխարհի տարբեր անկյուններում: Մենք այսօր հպարտանում ենք հայերենով, որն անհիմն չէ, քանզի ունենք ճոխ, զարգացած, արտահայտիչ, մշակված գրական հայերեն, որն ի վիճակի է բավարարելու մեր բոլոր պահանջները՝ սկսած առօրյա զրույցից մինչև փիլիսոփայական ընդհանրացումներ, գիտատեխնիկական նվաճումներ ու պետական կառավարում: Հայերենով մենք ազատ կարող ենք գրել գեղարվեստական բարձրարժեք երկեր, հաղորդել մարդկային հոգու ամենանուրբ զգացմունքներ և մտքի ամենաբարդ ըստեղծագործություններ: Այդ հարստությունը, արտահայտչական անսպառ հնարավորությունները մեկ տասնամյակում, մեկ դարում չեն ստեղծվել: Դրանք կուտակվել են դարերի ընթացքում, գալիս են նույնիսկ նախագրային հայերենից:

Հայերենը նաև համաշխարհային հետաքրքրության առարկա է. հայագիտական ու հայերենագիտական կենտրոններ ու ամբիոններ կան աշխարհի բազմաթիվ երկրներում: Դա հնարավորություն է տալիս կազմակերպելու միջազգային հայերենագիտական գիտաժողովներ: Բայց համաշխարհային ուշադրության առարկա լինելը ոչ թե թեթևացնում է մեր պատասխանատվությունը հայոց լեզվի այսօրվա վիճակի ու ապագայի նկատմամբ, այլ, ընդհակառակն, պահանջում է ավելի լրջորեն զբաղվել նրա հարցերով, հոգսերով: Իսկ դրանք քիչ չեն: Նկատի պիտի ունենանք, որ ինչքան զարգանում է հասարակությունը, այնքան մեծանում է հաղորդակցման պահանջը, անում լեզվի դերը: Դժբախտաբար, տասնամյակներ շարունակ, ստալինյան բռնապետության և լճացման տարիներին բնորոշ հանդիսամոլության պայմաններում, ազգային լեզուների հոգսերի, զարգացման մասին խոսելը համարվում էր առնվազն ազգայնամոլություն: Գնալով կրճատվում, սեղմվում էին նրանց գործածության ոլորտները և, ինչպես նշված է «Известия» թերթում, «Ինտերնացիոնալացման անվան տակ ռուսաց լեզուն աստիճանաբար դարձել էր միակը գործավարությունում, տարբեր մարմինների, հիմնարկների և ձեռնարկությունների փոխհարաբերություններում» (1989, № 8):

Ժամանակները փոխվել են, վերակառուցման թարմ շունչն է զգացվում կյանքի բոլոր բնագավառներում: Նոր քաղաքականություն է տարվում նաև լեզվի հարցում, ստեղծելով բարենպաստ բարոյահոգեբանական մթնոլորտ՝ ազատորեն խոսելու ազգային լեզուների զարգացման, գործածության ոլորտների ընդարձակման, ոտնահարված իրավունքների վերականգնման և տարիներ շարունակ «փակ» այլ թեմաների շուրջ:

Տասնամյակների փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր շեղվել ենք սոցիալիզմի կառուցման լենինյան սկզբունքներից, լենինյան տեսության պահանջներից, թույլ ենք տվել լուրջ սխալներ, դժվարացել է առաջընթացը, կուտակվել են բազում պրոբլեմներ, որոնք անհապաղ լուծում են պահանջում: Խոսքը վերաբերում է նաև լեզվական քաղաքականությանը: «Հարկավո՞ր է արդյոք պարտադիր պետական լեզու» հոդվածում Վ. Ի. Լենինը զայրույթով է խոսում այն կուսակցությունների քաղաքականության մասին, որոնք բազմազգ Ռուսաստանում պահանջում էին պարտադիր պետական լեզու, որը նշանակում էր ստիպողականություն, ազգային լեզվի նսեմացում և իր հետ բերում էր անցանկալի հետևանքներ. «... հարկադրանքը (սպառնալիքը) միայն մի բանի կհանգեցնի՝ այն կդժվարացնի մեծ ու հզոր ռուսաց լեզվի մուտքը ուրիշ ազգային խմբերի մեջ, իսկ գլխավորը՝ կսրի թշնամությունը, կստեղծի միլիոնավոր նոր բախումներ, կուժեղացնի գրգռումը, փոխադարձ անըմբռնողությունը և այլն» (ԵԼԺ, հ. 24, էջ 359—360): Ինչպես ասացինք, կամա թե ակամա, տարիներ շարունակ ինտերնացիոնալիզմի քողի տակ նեղացվել են ազգային լեզուների գործածության շրջանակները հօգուտ ռուսերենի: Ահա ինչու ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1988 թ.) պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանի զեկուցման մեջ ամենայն սրությամբ դրվեց հայոց լեզվի հարցը. «Լեզուն ժողովրդի հոգին է, նրա անգին հոգևոր հարստությունը, նրա մըշակույթը: Ուստի մայրենի լեզվի նկատմամբ հոգատար վերաբերմունքը, կյանքի բոլոր ոլորտներում դրա լայն գործածությունը մեր կարևորագույն խնդիրն է: Միանգամայն անթույլատրելի է, երբ որոշ ղեկավարներ իրենց անխոհեմ որոշումներով ու գործելակերպով երբեմն արհեստականորեն նեղացնում են հայոց լեզվի գործածության ոլորտը, որ օրենսդրականորեն վավերացված է որպես Հայկական ԽՍՀ պետական լեզու: Մենք պարտավոր ենք ամրապնդել հայոց լեզվի վարկը, բոլոր պայմանները ստեղծել նրա զարգացման ու հարստացման համար... Մենք պետք է հասնենք այն բանին, որ դպրոցի յուրաքանչյուր շրջանավարտ կատարելապես տիրապետի մայրենի լեզվին: Սա քաղաքական նշանակության հարց է»:

Արդ, տեսնենք, թե ինչ ենք ժառանգել, ինչ վիճակում է այսօր հայոց լեզուն, ինչ հոգսեր ունի, որոնք են զարգացման հեռանկարները:

Հայոց լեզու և գրական լեզու հասկացությունները չեն նույնանում: Հայոց ընդհանուր լեզուն միատարր չէ, այն ունի իր տարբերակները, դրսևորումները, գործառական ոճերը, որոնք, անշուշտ, պիտի հաշվի առնել: Գրական հայերենն ունի երկու տարբերակ՝ արևելահայերեն և արևմտահայերեն: Այս իրողությունը մեր ժողովրդի դառը պատմության արդյունք է: XIX դարում, երբ կազմավորվում էր աշխարհաբարը, Հայաստանը բաժանված էր երկու մասի՝ Արևելյան Հայաստան և Արևմտյան Հայաստան, որոնք տարբեր պետությունների գերիշխանության տակ էին: Նրանք առանձին-առանձին սեփական մշակութային - տնտեսական - քաղաքական կենտրոնի խոսակցական լեզվի (բարբառի) հիման վրա ձևավորեցին իրենց գրական լեզուն՝ արևելահայերեն և արևմըտահայերեն: Արևելահայերենը այսօր Խորհրդային Հայաստանի պետական գրական լեզուն է, արևմտահայերենը՝ սփյուռքահայության: Իրականում սրանք ոչ թե տարբեր լեզուներ են, ինչպես սխալմամբ ասում են ոմանք, այլ նույն՝ հայոց լեզվի գրական երկու տարբերակներ, որ ունեն հնչյունաբանական, բառապաշարային ու բառակազմական, քերականական համակարգի, ազգային լեզվամտածողության բազմաթիվ ընդհանրություններ, փոխադարձորեն լրիվ հասկանալի են: Սակայն ունեն նաև որոշ տարբերություններ, որոնք ինչ-որ չափով խանգարում են մեր ժողովրդի երկու հատվածի լեզվական փոխհարաբերությանը:

Հայոց ընդհանուր գրական լեզուն ունի իր դրսևորումները՝ գրական, խոսակցական (ժողովրդախոսակցական) և բարբառ: Նրանք ունեն իրենց գործածության որոշակի ոլորտները, հաղորդակցական նպատակները, դրանցով պայմանավորված՝ իրենց արտահայտչամիջոցները, առանձնահատկությունները:

Գրական լեզուն ժողովրդի պաշտոնական, ավելի հաճախ՝ գրավոր հաղորդակցման միջոցն է՝ մշակված, կանոնարկված, գրքի ու գրականության լեզուն, որ ուսուցանվում է դպրոցում և սպասարկում է կյանքի բոլոր բնագավառները: Այն աչքի է ընկնում ավանդապահությամբ, կայուն է ընդհանուր, ընդունված կանոնից շեղումների նկատմամբ:

Ժողովրդախոսակցական լեզուն նույնպես համաժողովրդական է, սովորաբար՝ բանավոր, անմիջական, կենդանի, ոչ պաշտոնական հաղորդակցման միջոց: Ամեն-

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՀԵՆՐԻԿ ԱՐՏԱՎԱԶԴԻ — բանասիրական գիտությունների դոկտոր, Երևանի պետական համալսարանի հայոց լեզվի ամբիոնի պրոֆեսորի պաշտոնակատար:





digitised by A.R.A.R.@

րանք բոլորին էլ հայտնի են: Այստեղ տեղին է հիշեցնել, թե ինչպես էր Վ. Ի. Լենինը ժամանակին պայքարում օտար բառերի անհարկի գործածության դեմ. «Ռուսաց լեզուն մենք աղավաղում ենք: Օտար բառերը գործածում ենք առանց անհրաժեշտության: Գործածում ենք սխալ: Ինչո՞ւ ասել «դեֆեկտներ», երբ կարելի է ասել թերություններ կամ պակասություններ, կամ բացեր... Արդյոք ժամանակը չէ՞, որ մենք պատերազմ հայտարարենք օտար բառերի առանց անհրաժեշտության գործածությանը» (ԵԼԺ, հ. 40, էջ 59): Այո՛, ո՛չ ավել, ո՛չ պակաս՝ պատերազմ հայտարարել: Լենինի այս պահանջն այսօր էլ հրատապ է: Ուրեմն՝ մեր այսօրվա հոգսերից մեկը օտար բառերի փոխարեն հայերեն բառերի գործածությունն է, որը կնպաստի լեզվի անաղարտության պահպանմանը:

Բավականին բարդ է գրական և խոսակցական լեզուների փոխհարաբերության հարցը: Իսկ որպեսզի հարցի մեջ հստակություն մտցնենք, պիտի իմանանք գրական և խոսակցական հայերենների և՛ առավելությունները, և՛ թերությունները:

Գրական լեզուն կանոնարկված է, ավանդապահ, ձգտում է միօրինակության պահպանման, ինչը, առավելություն լինելով, բերում է նաև բացասական հետևանքներ: Խոսքն ամենից առաջ չորուցամաքության, անկենդանության, կաղապարայնության մասին է: Գրական լեզվի չորուցամաքությունը ժամանակին նշել են Թումանյանը, Տերյանը, մեր օրերում՝ Պ. Սևակը: Վկայակոչենք Պ. Սևակին, որն այնքան լավ էր զգում լեզուն: «Տերյանը պահանջում է...» հոդվածում կարդում ենք. «... Զգո՞ւմ ենք մեր լրագրերի, մեր թարգմանական գրականության և մեր իսկ գրքերի լեզուն աղճատող օտարաբանությունները, նկատո՞ւմ ենք աղաղակող սխալները, տեսնո՞ւմ ենք այն չորուցամաքությունն ու աղքատությունը, որ քիչ է մնում օրինակելիության ուժ ստանա»: Այնուհետև, իբրև ասածի շարունակություն, գրում է. «Տերյանի փոքր-ինչ այլափոխված խոսքով՝ համարձակություն էլ համարենք, պիտի ասեմ, որ մեր գրքերում գրական լեզուն գնալով «գրաբարայնանում է»: «Գրաբարացում» ասելով, ուզում եմ նշել այն գրքայնացումը, լեզվի այն հյութազրկությունը, որ կատարվում է մեր որոշ գրողների ձեռքով և քննադատներից ոմանց պահանջով» և «բավական է մի կենդանի խոսք, ժողովրդական մի դարձվածք, որ մեջտեղ գա «բարբառային» բառը՝ «գռեհիկի» ուղեկցությամբ և «նատուրալիզմի» թիկնապահությամբ»: Մեր լեզվի իրական վիճակի ճշգրիտ բնութագրում է սա, որը թեև գեղարվեստական գրականության մասին է, բայց գուցե ավելի շատ վերաբերում է ընդհանրապես գրական լեզվին:

Պատահական չէ, որ նույնիսկ բանասիրական կրթությամբ մարդիկ հեռուստատեսությամբ, ռադիոյով, ժողովում հանպատրաստից, բանավոր գրական հայերենով դժվարությամբ են խոսում: Ինչու՞: Հիմնական պատճառներից մեկը գրական ու խոսակցական լեզուների մեծ կտրվածությունն է. մարդը մտածում է խոսակցական լեզվով, խոսելու ընթացքում ստիպված է երկու բարդ գործողություն կատարել՝ մտածածը վերածել գրականի և խոսել, որն էլ ծնում է սխալներ: Իհարկե, գրական ու խոսակցական լեզուների միջև տարբերություն պիտի լինի, չի կարող չլինել, բայց ոչ այնքան, ինչքան հայերենինն է: Ո՞րն է ելքը, ի՞նչ ենք առաջարկում, միաժամանակ պահանջում: Հնարավորին չափ մոտեցնել հայերենի գրական ու խոսակցական տարբերակները, վերջինից վերցնելով այն, ինչ պակասում է գրական լեզվին՝ կենդանությունը, անմիջականությունը, ոճեր, արտահայտություններ, բազմաթիվ բառեր: Հնարավոր է, որ ոմանք մեր այս պահանջը համարեն գրական լեզվի դռները խոսակցական լեզվի առջև բացելու միտում: Թեկուզ և այդպես, ի՞նչ կա որ: Հիշենք, որ խոսակցական լեզուն նույնպես համաժողովրդական է, հայերեն: Եվ եթե որևէ քերականական ձև գործածվում է խոսակցական լեզվում, գրեթե բոլորի կողմից, ապա այն արդեն իրավունք է նվաճել համարվելու գրական և պիտի դառնա հանձնարարելի, պիտի գրավի արդեն անկենդան, միայն գրքային, բայց ավանդական բառաձևի տեղը: Բերենք միայն մեկ օրինակ. ավանդաբար «ե» խոնարհման պարզ բայերի հոգնակի հրամայականը կազմվել է անցյալի հիմքով և -եք վերջավորությունից՝ **նստեցեք, կանգնեցեք, ապացուցեցեք, կառուցեցեք, զրուցեցեք** և այլն: Սակայն կենդանի, խոսակցական լեզվում այդ ձևերը գործածական չեն, նրանց փոխարեն օգտագործվում են ներկայի հիմքով կազմված ձևերը՝ **նստեք, կանգնեք, ապացուցեք, կառուցեք, զրուցեք**: Այս ձևերը կիրառելի են նաև գեղարվեստական խոսքում: Բայց որոշ լեզվաբաններ վախվորած են մոտենում այս ձևերին՝ կպցնելով ոչ գրականի, նույնիսկ բարբառայինի պիտակ: Օրինական հարց է ծագում. ո՞վ է իրավունք տվել այսպիսի



քամահրանք ցուցաբերել ժողովրդական լեզվի, նրա հիմքի նկատմամբ և խորացնել գրական ու խոսակցական լեզուների տարբերությունները:

Հիշենք, որ լեզվի մեջ անմիջականորեն արտացոլվում են հասարակական-քաղաքական-տնտեսական-մշակութային կյանքում կատարվող փոփոխությունները: Վերակառուցվում է մեր մտածողությունը, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության աշխատանքը, բայց զարմանալիորեն պահպանողական ենք լեզվի, լեզվամտածողության, լեզվական քաղաքականության վերակառուցման հարցում: Լեզուն մշակույթի ստեղծման ձև է, միջոց: Մեր թերթերում, ռադիոյի և հեռուստատեսային հաղորդումներում շարունակվում են գործածվել անհատի պաշտամունքի և լճացման տարիների կաղապարային արտահայտություններ, նախադասություններ, որոնք լսել ենք ու կարդացել հարյուրավոր անգամ. կազմ ու պատրաստ դիմավորել գարնանացանը, աշխատելով «պահանջարկը պետք է որոշի առաջարկը» նշանաբանով. կոշիկի ֆաբրիկայի մարդիկ տարեցտարի բարելավում են թողարկվող արտադրանքի որակը և այլն: Եթե հավատանք այս հաղորդմանը, որ կարդում ենք նաև այլ առիթներով, ապա այսօր անորակ արտադրանք չպիտի տայինք, այնինչ ոչ միայն շատ է անորակ արտադրանքը, այլև անորակ ենք դարձնում նաև լեզուն:

Լուրջ մտահոգության խնդիր են հայերենում տարածված օտարաբանությունները: Մենք այստեղ նկատի չունենք բառային օտարաբանությունները, քանի որ այդ մասին շատ է ասվել: Խոսքն ավելի շատ վերաբերում է օտարաբան ոճերին, սխալ կառուցված նախադասություններին, որոնցով այսօր լեցուն են մամուլի, թարգմանական գրականության, նույնիսկ դպրոցական դասագրքերի էջերը: Եթե մինչև վերջ անկեղծ լինենք, պիտի ասենք, որ օտար բառերի անհարկի գործածությունը այնքան չի հարվածում լեզվի ազգային նկարագրին, ինչքան օտարաբան ոճերը, նախադասությունները, կապակցությունները: Սրանք ամենից առաջ քանդում են ազգային լեզվամտածողության հիմքը: Ինչքան ենք կարդում ու լսում ոչ հայերեն նախադասություններ, որոնք խորթ են ազգային մտածողությանը, հաճախ բառացի թարգմանություններ են. գործարանը հանդիսանում է ծանր արդյունաբերության առաջնեկը, հարցի էությունը կայանում է նրանում, կիսել (կամ բաժանել) վիշտն ու ուրախությունը, նվագել դաշնամուրի վրա, իմ ասելիքը, դա վերաբերում է մեր անելիքներին, բարձր հիմքերի վրա դնել ուսուցումը, որակի բարձրացումը իրենից ներկայացնում է առաջնահերթ խնդիր, մթնոլորտը գտնվում է վատ վիճակում և այլն, և այլն:

Այս հարցում հատուկ պատասխանատվություն պիտի զգան լրագրողները, խմբագիրներն ու թարգմանիչները: Բազմիցս ռադիոյով, հեռուստատեսությամբ, մամուլում լեզվաբանները, մասնագետները խոսել են, գրել սխալ ձևերի, ոճերի մասին, բայց, զարմանալիորեն, ասվածը չեն լսում հենց մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության որոշ աշխատողներ: Բերենք միայն մեկ օրինակ: Ինչքան է ասվել, որ սխալ են պատճառական բայերի **հասկացրեցի, մոտեցրեցի, կորցրեցի** ձևերը, ճիշտ են **հասկացրի, մոտեցրի, կորցրի** ձևերը, բայց դժվար է գտնել ցանկացած թերթի մի համար, որտեղ այդ սխալ ձևերը գործածված չլինեն: Այսպես անպատասխանատու չի կարելի լինել լեզվի նկատմամբ: Լեզուն պահանջում է հոգատարություն, և բոլորս պարտավոր ենք հոգատար, ուշադիր, զգույշ լինել ամեն մի բառի գործածության նկատմամբ, միշտ հիշելով իմաստուն Թումանյանի ասածը. բառը մի աշխարհ է:

Կարծում ենք, ասվածով ամենևին չեն սպառվում հայերենի հոգսերը, զարգացման հեռանկարների մասին դատողությունները: Սա լուրջ խոսակցության նյութ է, որի նկատմամբ անտարբեր չպիտի լինեն առաջին հերթին լեզվաբանները, գրողները, լրագրողները: Բանավեճերի ու գիտական նստաշրջանների նյութ է սա...

digitised by A.R.A.R.@

## Գրախոսություն և քննադատություն

# ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ

«Տնտեսել ամեն ինչում և ամենուրեք. արտադրությունում և կենցաղում, անտարբեր չանցնել անտնտեսվարության ու վատնողության կողքով» կուսակցության պահանջն այսօր ավելի է կարևորվել, դարձել մեր էկոնոմիկայի հետագա զարգացման գրավականներից մեկը։ Եվ պատահական չէ, որ ինչպես ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտներում, այնպես էլ գիտական շրջաններում ու մամուլում համակողմանիորեն քննարկվում են խնայողության պրոբլեմները։ Այս առումով ուշադրության արժանի է տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր Մ. Գրիգորյանի «Խնայողություն»* գիրքը, որը նվիրված է այդ հրատապ խնդրի վերլուծմանը։

Ներածական մասում հեղինակը հիմնավորում է խնայողության տեսական ու գործնական նշանակությունը երկրի սոցիալ-տնտեսական զարգացման համար, ցույց տալիս, որ այն լայն հասկացություն է և ներառում է մարդկանց գործունեության բոլոր կողմերը։ Խնայողությունն ունի ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական, բարոյահոգեբանական և քաղաքական նշանակություն։ «Խնայողականությունը,— նշված է ԽՄԿԿ ծրագրում,— ժողովրդական միջոցների խելացի ծախսումը, յուրաքանչյուր ռուբլու ռացիոնալ օգտագործումը, անտնտեսվարության վերացումը, տարբեր անարտադրողական ծախսերի ու կորուստների բացառումը համակուսակցական, համաժողովրդական գործ են, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատողի գործը» (ԽՄԿԿ XXVII համագումարի նյութերը, «Հայաստան» հրատ., 1986, էջ 210)։

Աշխատության առաջին գլխում բացահայտված են խնայողության սոցիալ-տնտեսական էությունը, առանձնահատկությունները տարբեր արտադրահարաբերությունների պայմաններում։ Հենվելով խնայողության լենինյան ցուցումների վրա՝ հեղինակը նշում է, որ սոցիալիստական արտադրության խնայողաբար վարումը բխում է ամբողջ հասարակության շահերից և ծառայում դրանց։ Վ. Ի. Լենինը խնայողության մեջ տեսնում էր հաշվենկատություն, հոգատարություն, շահագրգռվածություն սոցիալիստական սեփականության պահպանման, օգտագործման և բազմապատկման նկատմամբ։ Խնայողության ռեժիմը՝ նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքների ստացումը, նա համարում էր սոցիալիստական տնտեսավարման սկզբունք, միաժամանակ խնդիր էր դնում համառ ու հետևողական պայքար ծավալել առավել տնտեսավար աշխատելու, այն ամենը ավելի խնայողաբար ու ռացիոնալ օգտագործելու համար, ինչը ծառայում է հասարակությանը։ Այստեղ կոնկրետ փաստերով ցույց են տրված խնայողության ռեժիմի կիրառման ձևերն ու մեթոդները սոցիալիստական շինարարության տարբեր փուլերում, նշված են ձեռք բերված նվաճումները, այդ բնագավառում առկա վիճակը։ Վերլուծելով խնայողության արդի խնդիրները, հեղինակն իրավացիորեն նշում է, թե մեր երկիրն այժմ ավելի հարուստ է, հետևաբար խնայողության դերն այժմ ավելի մեծ է, քան երբևէ։ Խնայողություն և տնտեսել սովորելու լենինյան պատվիրանները մեր օրերում ավելի հրատապ են, քանզի էկոնոմիկան փոխադրվում է զարգացման ինտենսիվ ուղու վրա։

Մենագրության երկրորդ գլուխը նվիրված է հումքի, նյութերի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության և ռացիոնալ օգտագործման հարցերին։ Խորհրդային Միությունը միակն է աշխարհում, որի էկոնոմիկան ամբողջապես հիմնված է սեփական նյութահումքային ռեսուրսների վրա։ Ամեն տարի հսկայական նյութական ռեսուրսներ են ընդգրկվում հասարակական վերարտադրության մեջ։ Միայն մեկ օրվա ընթացքում ծախսվում են ավելի քան 2 մլրդ ռուբլու հումք, նյութեր, վառելիք և էներգիա։ Հետագայում էլ կմեծանա դրանց պահանջը, որոնց արտադրությունը գնալով ավելի ու ավելի է թանկանում և մեծ չափերի կապիտալ ներդրումներ պահանջում։ Բացի դրանից, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ նյութահումքային ռեսուրսները, օգտակար հանածոները անսպառ և, ամենակարևորը, վերարտադրելի չեն։ Այս պայմաններում նյութական ռեսուրսների բոլոր տեսակների խնայողությունը և ռացիոնալ օգտագործումը բացառիկ նշանակություն են ձեռք բերում։ Հեղինակը ճիշտ է նկատում, որ որքան մեծանում են օգտագործվող նյութական ռեսուրսների չափերը, այնքան ծանրակշիռ են դառնում դրանց խնայողաբար օգտագործումից ստացվող օգուտները, նույնքան էլ վնասը՝ ամենափոքր շռայլումների, կորուստների դեպքում։ Երկրի, այդ թվում նաև մեր հանրապետության ժողովրդական տնտեսության բնագավառներից բերված կոնկրետ տվյալներով, հեղինակը ցույց է տալիս նյութական ռեսուրսների օգտագործման դեռևս անբավարար վիճակը։ Տեղին է նշվում, որ սոցիալիստական հասարակարգը ռեսուրսների խնայողության համար ստեղծել է բոլոր պայմանները։ Սակայն կարևորն այն է, որ ամեն մի աշխատատեղում ձևավորվի և հաստատվի շահագրգռվածություն, տիրոջ վերաբերմունք հասարակական բարիքի նկատմամբ։

Աշխատության հաջորդ գլխում հեղինակը խնայողության հարցերը քննարկում է ագրոարդյունաբերական համալիրի շրջանակներում։ Այստեղ ցույց է տրվում, որ գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման համար կան մեծ ռեզերվներ, որոնց ռացիոնալ օգտագործումը զգալի չափով կնպաստի պարենային ծրագրի կենսագործմանը։ Այնուհետև բացահայտվում են այն կորուստները, որոնք գոյություն ունեն գյուղատնտեսական արտադրանքի մթերումների, պահպանման, փոխադրման, վերամշակման և իրացման բնագավառներում։ Հանգամանորեն խոսվում է այն կորուստների մասին, որ տեղի են ունենում սպառման ոլորտում։

Չորրորդ գլուխը նվիրված է որակի բարձրացման և ռեսուրսախնայողության անմիջական կապին։ Տրվում են որակի հասկացության էությունը, դրա դերն ու նշանակությունը արտադրության արդյունավետության բարձրացման գործում, անմիջական կապը խնայողության հետ։ Որակը միաժամանակ քանակ է, քանի որ արտադրանքի որակի բարձրացումը հավասարազոր է դրա քանակի ավելացման, անհամեմատ քիչ ծախսումներով։ Ավելի լավ որակ նշանակում է նաև շատ։ Հայտնի է, որ խոտան և ցածրորակ արտադրանքը կենդանի ու առարկայացած աշխատանքի կորուստ է։ Նշվում են արտադրության տարբեր ոլորտներում որակի բարձրացման ուղիները։

Գրքում քննարկվում են բնապահպանության խնդիրները՝ կապված բնական ռեսուրսների խնայողության և ռացիոնալ օգտագործման հետ։ Տեղին է նշվում, որ, վերջին հաշվով, բոլոր տեսակի խնայողությունները մարդկանց համար են, նրանց կյանքի պայմանների բարելավման համար։ Մարդը լինելով բնության մի մասնիկը՝ իր էությամբ ու գործունեությամբ ոչ միայն ամբողջապես կապված է նրա հետ, այլև կախված է նրանից։ Այս առումով էլ բնության, շրջակա միջավայրի, մթնոլորտի, կենսոլորտի պահպանումն այսօր դարձել է համամարդկային առաջնահերթ խնդիր և հավասարապես վերաբերում է աշխարհի բոլոր ժողովուրդներին, ինչպես ներկա, այնպես էլ գալիք սերունդներին։ Հեղինակն այն միտքն է արտահայտում, որ մարդու կողմից բնական ռեսուրսների իմացության շրջանակները, օգտագործման հնարավորությունները մեծացել են և բազմապատկվել։ Բնության վրա նաև իշխանությունը, ակտիվ ազդեցությունը հասել է այն աստիճանի, որ բնական ռեսուրսների սպառումը կատարվում է շատ ինտենսիվ, աննախընթաց տեմպերով։ Սպառման պրոցեսը գերազանցում է վերականգնմանը, առաջ է գալիս անհամապատասխանություն, իսկ առանձին դեպքերում՝ խախտվում են բնության դինամիկ հավասարակշռությունը, մարդու և բնության ներդաշնակ փոխհարաբերությունները։ Էկոլոգիական ճգնաժամը լուրջ վտանգ ու մտահոգություն է պատճառում ողջ մարդկությանը։ Այս հարցերը հանգամանորեն վերլուծվում են աշխատությունում։

Հետաքրքրական է գրքի վերջին՝ «Խնայողության կառավարումը» խորագիրը կրող գլուխը։ Այստեղ հեղինակը հստակորեն բացահայտում է այս մարզում կառավարման գործող մեխանիզմի էությունը՝ նշելով, որ բոլոր տեսակի խնայողությունների գիտակցական կառավարման հիմքը կատարելագործված կառավարումն է։ Տնտեսական մեխանիզմի կատարելագործմանն ուղղված կոմպլեքսային միջոցառումները վճռական նշանակություն են ստանում կառավարման համակարգի արմատական բարելավման գործում։ Վերջին հաշվով, ոչ միայն խնայողության, այլև արտադրության, տնտեսական գործունեության, արդյունավետության բարձրացման բոլոր հարցերը պայմանավորված են հմուտ ու կատարյալ կառավարման հետ։ Բերվում են կոնկրետ փաստեր և օրինակներ, որոնք արտահայտում են այդ բնագավառում եղած բացերն ու թերությունները, մեր առաջընթացի դժվարություններն ու արգելքները։ Իրավացի է հեղինակը, նշելով, որ «Խնայողության կառավարումը վերաբերում է ոչ միայն արտադրական և սպառման ոլորտներին, այլև կառավարման կառավարմանը»։ Խոսքը վերաբերում է կառավարման ուռճացած ապարատի կրճատմանն ու էժանացմանը։

Գրքի վերջաբանում հատկապես շեշտվում է, որ դեռևս զգալի են ռեսուրսների շռայլությունը, անտնտեսվարությունը, նշվում են դրանց սուբյեկտիվ պատճառները։ Վերակառուցման պայմաններում հարկ է կտրուկ արմատախիլ անել ռեսուրսների նկատմամբ վատնողական վերաբերմունքը, ցանկացած գնով արտադրական պլանները կատարելու արատավոր սկզբունքը։

Աշխատությունը զերծ չէ նաև առանձին թերություններից։ Կան կրկնություններ, որոշ տեղերում շարադրանքը մակերեսային է, դեկլարատիվ։ Գիրքն, ընդհանուր առմամբ, կշահեր, եթե առանձին լուսաբանվեին նոր տեխնիկայի, հիմնական արտադրական ֆոնդերի և կապիտալ ներդրումների արդյունավետ օգտագործման հարցերը։

Այդուհանդերձ, Մ. Գրիգորյանի մենագրությունը նրա տևական աշխատանքի արդյունքն է։ Այն կարող է օգտակար լինել ոչ միայն տնտեսագետների, տնտեսական ղեկավարների, տնտեսագիտության կրթության համակարգում ընդգրկվածների, այլև ընթերցող լայն շրջանների համար։

Թ. ՉԱԼՅԱՆ
Տնտեսագիտության թեկնածու

* Մ. Ա. Գրիգորյան, Խնայողություն, «Հայաստան» հրատ. 1988, 243 էջ։



digitised by A.R.A.R.@

## В. А. ТУРЬЯН. Семья и воспитание. Ереван, «Айастан», 1988, 187 с.

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ շինարարության բոլոր փուլերում կուսակցությունն ու կառավարությունը առանձնահատուկ ուշադրություն և անդուլ հոգատարություն են ցուցաբերել աճող սերնդի թե՛ դաստիարակության, թե՛ կրթության հարցերին։ Դրանք, մասնավորապես, նորովի են դիտվում այսօր՝ վերակառուցման ժամանակաշրջանում, երբ ստրատեգիական բոլոր խնդիրների իրականացման գործում առաջին պլան է մղվել մարդկային գործոնի դերն իր բազմապիսի դրսևորումներով։ Ելնելով դրանից խորհրդային հասարակության կյանքում էլ ավելի է կարևորվել մարդու դաստիարակության այնպիսի օղակի նշանակությունը, ինչպիսին ընտանիքն է։ Հիրավի, ինչպես նշված է ԽՄԿԿ ծրագրում, «Այստեղ են ձևավորվում մարդու խառնվածքի հիմքերը, աշխատանքի, բարոյական, գաղափարական ու մշակութային արժեքների նկատմամբ նրա վերաբերմունքը։ Հասարակությունը կենսականորեն շահագրգռված է ամուր, հոգեպես ու բարոյապես առողջ ընտանիքով»։*

*Այս առումով տեսական ու գործնական արժեք է ներկայացնում փիլիսոփայական գիտությունների թեկնածու Վ. Տուրյանի «Ընտանիքը և դաստիարակությունը» գիրքը։ Հեղինակի կոնցեպցիայի հիմքն են կոմունիստական դաստիարակության հիմնարար սկզբունքները, դրա անանց դերը մեր հասարակության զարգացման գործում։ Հենց այդ տեսանկյունից էլ նա օգտագործում է ընտանեկան կյանքի ու դաստիարակության սոցիալ-հոգեբանական գործոնները, վերլուծում ընտանիքի կենսագործունեության պրոբլեմները։ Մեծ ուշադրություն է նվիրվում ամուսնության կայունության, ընտանիքի վերարտադրության ֆունկցիայի, ներընտանեկան փոխհարաբերությունների վերլուծությանը։ Մեր կարծիքով, արժեքավոր `է այն հանգամանքը, որ ընտանեկան դաստիարակության հրատապ հարցերի ուսումնասիրմանն ու վերլուծմանը հեղինակը մոտենում է հատկապես սոցիալական հոգեբանության դիրքերից։*

*Ընտանեկան կյանքի տեսության ու պրակտիկայի իմացությունը մենագրության հեղինակին հնարավորություն է տալիս առաջադրելու այն դրույթը, որ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման պայմաններում ուժեղանում է ընտանիքի սոցիալական կոչման, նրա բարեհաջողության բարելավման պահանջը։ Հայտնի է, որ ընտանիքի, հատկապես նոր ընտանիքի կազմավորման դժվարությունները առաջին հերթին բերում են ժողովրդագրական ու դաստիարակչական վնասներ։ Եվ միանգամայն օրինաչափ է պետության և ամբողջ հասարակության հարաճուն մասնակցությունը ընտանիքի,, նրա սոցիալական դերի ամրապնդմանը։*

*Հեղինակը տեսական-մեթոդաբանական և էմպիրիկ վերլուծության հիման վրա բացահայտել է ընտանիքի էությունը, միաժամանակ քննության է առել վերջինիս՝ որպես դաստիարակության սուբյեկտի վրա գաղափարախոսական և սոցիալ-հոգեբանական ներգործության փոխադարձ կապի ուղղություններն ու ձևերը։ Ընթերցողը գրքից օգտակար շատ ինֆորմացիա կքաղի ընտանեկան պրոբլեմատիկայի վերաբերյալ կենտրոնական մամուլի հրապարակումների վերլուծությունից։*

*Աշխատությունում բացահայտված են նաև ընտանեկան դաստիարակության բնույթի վրա բացասաբար ազդող մի շարք գործոններ։ Դրանցից հեղինակը նշում է հարբեցողությունը, կոպտությունը, ընչաքաղցությունը, քաղքենիությունը և այլ արատներ։ Նկատենք նաև, որ ծնողների մի մասը պարզապես պատրաստ չէ երեխաների դաստիարակությանը։ Այստեղ տեղին է շեշտվում, որ այդ թերությունների վերացման ուղիները պետք է որոնել ընտանիքի դաստիարակչական պոտենցիալն առավել լրիվ ու նպատակամղված օգտագործելու, նրա կենսագործունեության գաղափարաբարոյական հիմքերն ամրապնդելու նպատակով կուսակցական, խորհրդային, կոմերիտական մարմինների և հասարակական այլ կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ուշադրությունն էլ ավելի ուժեղացնելու մեջ։*

*Գրախոսվող ուսումնասիրությունը բովանդակում է նաև ընդհանրացնող աղյուսակներ, հավելվածներ, ինչպես նաև գործածված տերմինների համառոտ բառարան։ Այն նախատեսված է մասնագետների, մանկավարժների, ծնողական հասարակայնության, բոլոր նրանց համար, ովքեր հետաքրքրվում են ընտանեկան կյանքի ու դաստիարակության պրոբլեմներով։*

Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ

*Հանձնված է շարելու 18.05.89 թ.։ Ստորագրված է տպագրելու 22.06.89 թ.։ ՎՖ 06113։ Ֆորմատ՝ $70\times108^{1}/_{16}$։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 12.662։ Պատվեր № 717։ Գինը՝ 25 կոպ.։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։*
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.

digitised by